# Ազգագրական հանդէս
# *Azgagrakan Hande's [Ethnographic Review]*

## Համշէնցի հայեր
## The Armenians of Hamshen

Y. Muradiants' study of Christian Armenian emigrants from the Hamshen area of eastern Asia Minor, serialized in *Azgagrakan Hande's [Ethnographic Review]* during 1898-1900. Descriptions of customs about birth, marriage, folk medicine, death and burial, beliefs, nature worship, saints, superstitions, witchcraft, and festivals, in 141 pdf pages. Compiled and indexed by Robert Bedrosian, September, 2015.


4 (1898), pp. 117-143
5 (1899), pp. 361-406
6 (1900), pp. 109-158


---

### IV գիրք (1898)



---

### V գիրք (1899)



---

### VI գիրք (1900)

# ՀԱՄՇԷՆՑԻ ՀԱՅԵՐ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ

**Ե. ՄՈՒՐԱԴԵԱՆՑԻ.**

---

## ՀԱՄՇԷՆՑԻ ՀԱՅԵՐԻ ԿԵԱՆՔԻՑ ՈՒ ԱՇԽԱՐՀԻՑ։

Ամբողջ Սև ծովի Կովկասեան ափերին, սկսած Սուխումի մօտերքից՝ Ծէբէլդայից ու Կոդօրից՝ մինչև Անապա և նրանից էլ դէնը մինչև Կուբանի վիճակի Մայկոպի ու Եկատերինոդարի շրջանները և մինչև Խրիմի ափերը—կորած ու ցիրուցան ապրում են մօտ տասնևհինգ հազար Թիւրքահայ գաղթականներ, որոնք իրանց մայր երկրով, անցեալով, բարբառով, աւանդութիւններով ու սովորութիւններով կապուած են Սև ծովի Անատոլիական ափերին ապրող Թիւրքահայերի հետ։ Նրանց ամենամեծ բազմութիւնն այսօր կենդրոնացած է Սուխումի շրջանում, ուր Թիւրքահայ գաղթականները մեծ անուն են հանել Թութունի արդիւնաբերութիւնով, արտադրելով Թիւրքական տեսակի ընտիր Թութուն՝ տասնեակ հազարաւոր փթերով։ Իսկ առհասարակ ամբողջ Կովկասեան ափերում՝ այդ Թիւրքահայերը իրանց բարքով ու վարքով, հայրենաւանդ սովորութիւններով, աշխատասիրութիւնով և կուլտուրական յատկութիւններով մի շատ պատուաւոր տեղ են բռնում ափերի բազմատեսակ ու բազմալեզու գաղթական ազգերի մէջ, հանդիսանալով երկրի կօլօնիզացիայի մէջ իբրև ամենաընդունակ և կուլտուրական տարրերից մէկը։

Կարելի է ասել, Թէ Կովկասեան ափերի ծաղկելն ու առաջ գնալը սկսւում է հայ գաղթականների գալու օրերից։ Այդ հաստատապէս նկատւում է այսօր Սուխումի շրջանում, որ ութսունական Թւերի սկզբներին, երբ դեռ նոր էին սկսել հայերը գաղթել այդ կողմերը, մի աննշան, յետ ընկած, ամայի ու աւերակ տեղ էր, այն ինչ այսօր Կովկասեան ափերի ամենածաղկած տեղերիցն է, իսկ Թութունի արդիւնաբերութիւնով՝ առաջինն է ամբողջ Ռուսիայում։ Դրա պատճառը հայ գաղթականներն են։ Միևնոյնն է նկատւում և Սօչիի կող-

մերում, որ մինչև Թիւրքահայերի գալը՝ անյայտութեան էր դատապարտուած, մինչդեռ վերջին տարիներս նա էլ է սկսել տնտեսական զգալի քայլեր անել, դարձեալ հայերի Թութունի մշակութիւնով։

Հայերի գալուց յետոյ՝ ամեն տեղ Կովկասեան ափերում—շարժում, կենդանութիւն է ընկնում։ Հետզհետէ առաջուան դարևոր ճահիճներն ու անտառները մաքրուելով, նոր նոր սիրուն արտեր ու պլանտացիաներ են բացւում. հարիւրաւոր դեսեատիններով նոր վարելահողեր են աւելանում այդ վայրի ու խիտ անտառներով ծածկուած երկրի մէջ։ Եւ ամենամեծ մասով այդ բոլոր արտերը Թիւրքահայերի ձեռքովն են փորուել ու բացուել, որոնց համար քանի-քանի հազարներով փող ու հսկայական աշխատանք է Թափուել։ Մի խօսքով Թիւրքահայ տարրը Կովկասեան ափերում ամեն տեղ կուլտուրական յեղափոխութիւն է գցել և Թերևս ամենքից աւելի նպաստել նրա խաղաղ, տնտեսական զարգացման։

Երկրի մշակութեան մէջ ցոյց տուած գործնէութիւնից անկախ, այդ Թիւրքահայերը արժանի են մեր համակրութեան իրանց անցեալով ու հայրենական յիշատակներով։ Նրանք բոլորն էլ եկել, գաղԹել են Սև Ծովի անատոլիական ափերից. համարեա բոլորն էլ փախել եկել են մեր կողմերը իրանց հայրենական երկրի խեղճութիւնից, հալածանքից ու սարսափներից։ Նրանց գաղԹելը դէպի Կովկասեան ափերը սկսւում է վաԹսունական Թւերից, Կովկասեան լեռնականների վերջնական նուաճումից յետոյ, երբ հարիւր հազարաւոր վայրենի ու լեռնցի չերքէզներ ու աբխազներ լցւում, հեղեղում են անատոլիական ափերը։ Իսկ առանձնապէս գաղԹականութիւնը սաստկանում է վերջին պատերազմից և մանաւանդ իննական Թւերի կոտորածներից յետոյ։

Թէ այնտեղ, հայրենի և Թէ այստեղ, Կովկասեան ափերում ապրող Թիւրքահայերը բոլորն էլ մի ժողովուրդ են. խօսում են մի բարբառով և կապուած են իրար հետ մի անցեալով ու հայրենաւանդ սովորութիւններով։ Նրանք աւելի յայտնի են համշէնցի, կամ ինչպէս իրանք, գաղԹականներն են ասում, հօմշէնցի, անունով։ Նայելով իմ կարդացած ու լսած գրաւոր ու անգիր աւանդութիւններին, համշէնցի անունը մնացել է նրանից, որ մի ժամանակ նրանք ապրելիս են եղել Սպերի և Րիզէի մէջտեղը, Համշէնի վիճակում, ուր նոյն աւանդութիւններին նայելով, եկած պիտի լինին նրանք Անիից, նրա վերջնական աւերումից յետոյ։ Բայց այդտեղ էլ նրան հանգիստ չեն Թողնում։ Մօտաւորապէս 17-դ դարու վերջերին՝ Տրապիզօնում տեղի են ունենում կրօնական հալածանքներ և համշէնցիներից հազարաւորներ մորԹւում, նահատակւում են հաւատի անունով. շատերը ուրանում

են, իսկ շատերն էլ սարեր-ձորերն են փախչում, անանց անտառներն ընկնում, օրերով քաղցած, սարսափած, գաղտագողի ճանապարհ կտրում հետզհետէ դէպի Կարադէրէ, Սիւրմէնէ, Տրապիզոնի մօտերքը և Ճանիկի կողմերը (Սամսոն), իսկ մի փոքր մասն էլ անցնում է Բաբերդ. Հետզհետէ, տարիների ընթացքում՝ մահմէդական հալածանքներից նեղուելով, Կարադէրէ, Սիւրմէնէ և Րիզէ փախած հայերը քիչ-քիչ խմբւում են գլխաւորապէս Տրապիզոնի մօտականերում և Ճանիկի կողմերում (Սամսոնի սանջակ)։ Իսկ այս վերջին վիճակից էլ մի փոքր հատուած գնում հաստատւում է Սինոպի վիճակում։

Այնուհետև երկար տարիներ մնում են նրանք այդ տեղերում, մինչև որ վերջապէս իրանց սոսկալի կացութիւնից վերջին ծայր յուսահատուած, դիմում են օտարափերը։ Վերջին պատերազմից յետոյ՝ Կովկասեան ափերը գաղթելու հետ միաժամանակ մի քանի տասնեակ տուն նրանցից, Տրապիզոնի և Օրդուի կողմերից, գնում նստում են Բրուսայի կողմերը, հեռաւոր Նիկոմիդիայի գաւառը, ուր մնում են նրանք մինչև այսօր։

Այսպիսով մեր Կովկասեան ափերի և նրանց մօտիկ տեղերում ապրող Թիւրքահայերը համշէնցիներ են, համարեա բացառապէս Տրապիզոնի վիլայէթից, Տրապիզոնի և Ճանիկի կողմերից եկած. Նրանց մի շատ աննշան մասն է միայն, մի քանի տասնեակ տուն, Սինոպի վիճակից գաղթած։

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ։

—

Համշէնցիները համախմբուած մեծ գիւղեր չունին. Նրանց գիւղերը սովորաբար կազմուած են լինում մի քանի իրարից հեռու ընկած տների խմբերից կամ հատ-հատ տներից։ Տների ամենամեծ խմբեր, որ կարելի է տեսնել նրանց մէջ, հազիւ 20-30 տուն կունենան։ Նրանց մեծ գիւղերը սովորաբար մի քանի այդպիսի խմբերից կամ գիւղամասերից են բաղկացած, որոնք ջոկ-ջոկ, ժողովրդական անուն են կրում, սովորաբար Թիւրքերէն և կամ թէ չէ խմբերում ապրող հարուստ, «իշխան» ու առաջաւոր մարդկանց անուններով են յիշւում. օրինակ՝ «Փափազցոց գեղ», «Սնապցոց գեղ», «Արթին ուստի գեղ», «Սիւնգիւրդցոց գեղ» և այլն։ Երբեմն գիւղի մի ծայրից մինչև միւսը ժամերով ճանապարհ է քաշում. այնքան հեռու են լի-

են, իսկ շատերն էլ սարեր-ձորերն են փախչում, անանց անտառներն ընկնում, օրերով քաղցած, սարսափած, գաղտագողի ճանապարհ կըտրում հետզհետէ դէպի Կարադէրէ, Սիւրմէնէ, Տրապիզոնի մօտերքը և Ճանիկի կողմերը (Սամսօն), իսկ մի փոքր մասն էլ անցնում է Բաբերդ. Հետզհետէ, տարիների ընթացքում՝ մահմէդական հալածանքներից նեղուելով, Կարադէրէ, Սիւրմէնէ և Րիզէ փախած հայերը քիչ-քիչ խմբւում են գլխաւորապէս Տրապիզոնի մօտականերում և Ճանիկի կողմերում (Սամսօնի սանջակ). Իսկ այս վերջին վիճակից էլ մի փոքր հատուած գնում հաստատւում է Սինօպի վիճակում։

Այնուհետև երկար տարիներ մնում են նրանք այդ տեղերում, մինչև որ վերջապէս իրանց սոսկալի կացութիւնից վերջին ծայր յուսահատուած, դիմում են օտար ափերը. Վերջին պատերազմից յետոյ՝ Կովկասեան ափերը գաղթելու հետ միաժամանակ մի քանի տասնեակ տուն նրանցից, Տրապիզոնի և Օրդուի կողմերից, գնում նստում են Բրուսայի կողմերը, հեռաւոր Նիկոմիդիայի գաւառը, ուր մնում են նրանք մինչև այսօր.

Այսպիսով մեր Կովկասեան ափերի և նրանց մօտիկ տեղերում ապրող Թիւրքահայերը համշէնցիներ են, համարեա բացառապէս Տրապիզոնի վիլայէթից, Տրապիզոնի և Ճանիկի կողմերից եկած. Նրանց մի շատ աննշան մասն է միայն, մի քանի տասնեակ տուն, Սինօպի վիճակից գաղթած։

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ։

—

Համշէնցիները համախմբուած մեծ գիւղեր չունին. Նրանց գիւղերը սովորաբար կազմուած են լինում մի քանի իրարից հեռու ընկած տների խմբերից կամ հատ-հատ տներից։ Տների ամենամեծ խմբեր, որ կարելի է տեսնել նրանց մէջ, հազիւ 20-30 տուն կունենան։ Նրանց մեծ գիւղերը սովորաբար մի քանի այդպիսի խմբերից կամ գիւղամասերից են բաղկացած, որոնք ջոկ-ջոկ, ժողովրդական անուն են կրում, սովորաբար Թիւրքերէն և կամ թէ չէ խմբերում ապրող հարուստ, «իշխան» ու առաջաւոր մարդկանց անուններով են յիշւում. օրինակ՝ «Փափազցոց գեղ», «Սնապցոց գեղ», «Արթին ուստի գեղ», «Սիւնգիւրդցոց գեղ» և այլն։ Երբեմն գիւղի մի ծայրից մինչև միւսը ժամերով ճանապարհ է քաշում. այնքան հեռու են լի-

նում Թաղերը իրարից։ Դրա պատճառը գլխաւորապէս երկրի տեղագրական պայմաններն են. հարթ, ընկած մեծ տարածութիւններ շատ քիչ են պատահում Սև ծովի ափերին, ծովից մի տասնեակ վերստ հեռու, որտեղ որ հայ գիւղերն են շինուած. սովորաբար բոլորը Թեք ու խորդուբորդ ղառեվայրեր են, ձորերով կտրտուած։ Բացի երկրի դիրքից, մասամբ էլ իրանց երկրագործական պարապմունքն է պատճառը։ Տեխնիկական մի քանի բոյսերի մշակութիւնն ընդհանրապէս շատ աւելի խնամք ու հոգացողութիւն է պահանջում, քան սովորական հացաբոյսերը։ Այսպէս օրինակ անկարելի բան է տնից հեռու վերստերով հեռու Թութուն մշակել. պէտք է վերստերով հեռու տեղից տակառներով ջուր հասցնել տնկելու ժամանակ, քաղածը սայլերով տուն բերել և այլն։ Դեռ հիմա, երբ Թութունի պլանտացիաները տներին մօտիկ են, ջրելն ու քաղածը կրելը աճագին նեղութիւն են պատճառում երկրագործին, ինչ կը լինի, եԹէ վերստերով հեռու լինին։ Այդ է պատճառը, որ նա ստիպուած է իր կացարանը մօտեցնել աւելի իր արտին, քան հարևանին։ Այս էլ կայ, որ համշէնցին ամեն տեղ տուն չի շինիլ. պէտք է ջուրն էլ մօտիկ լինի։ Ջուրը աճագին դեր է կատարում նրա տնտեսական կեանքում. տանը խմելու, կերակրի, լողանալու համար—ջուր պէտք է բերուի, մալերին պէտք է ջուրը տանել, իսկ ձմեռը, խորը ձնին, երբեմն էլ տանը պէտք է խմեցնել. Թութունի և «ածուքի» ցանած հնդերն ու «ֆիդանները» պէտք է ջրել և այլն։ Հեռու տեղից ինչպէս պէտք է այնքան ջուր բերուի, մանաւանդ որ նրանք սովորութիւն չունին տան համար ձիով կամ էշով ջուր կրելու. միայն Թութունի «ֆիդան» ջրելու և տնկելու ժամանակն են տակառներով ջուր կրում. իսկ սովորաբար տանը բանեցնելու ջուրը կրելը կանանց պարտքն է. նրանք են շալակով ջուրը բերում փայտէ ամաններով («դուֆա» Թ.)։ Վերջապէս տունը պէտք է անպատճառ «ածուքտեղ» ունենայ։ Անկարելի բան է երևակայել մի համշէնցի հայի տուն, որ մօտը, իրան կից «ածուք» չունենայ։ Բացի «ածուքից», պէտք է իր շէնքերը շինելու համար տեղ ունենայ տան մօտիկ, աւելի Թութունի հա-

մար, որը չորացնելու և պահելու համար շինուած շէնքերն ու պահեստները աՀագին, հարիւրաւոր սաժէններով տեղ են բռնում։

Եւ պէտք է նկատել, որ առհասարակ նրանք՝ գոնէ այստեղ, Կովկասեան ափերում, թութունի համար աւելի լաւ շէնքեր ու յարմարութիւններ ունին, քան սեփական իրանց համար։ Նրանցից շատերի թութունի պահեստները—«մաղազաները»—իրանց տներից դեղեցիկ են և ցրտից ու խոնաւութիւնից շատ աւելի պաշտպանուած, քան իրանց տները։ Այդ պահեստները սովորաբար տախտակաշէն են լինում, մինչդեռ իրանց տները ծուռումուռ, կլոր փայտից են շինուած, անտաշ ու ծակ-ծակ արաներով։

Խօսելով Կովկասեան ափերի կլիմայական պայմանների մասին, չի կարելի ասել, թէ հայերի բոլոր նստած տեղերը վատ են։ Ոչ, այստեղ էլ են պատահում լեռնային ու հովասուն գեղեցիկ տեղեր, ուր ոչ միայն ջերմը քիչ է լինում, այլ և լեռնային, մաքուր ու առողջարար կլիմա ունին. ինչպէս օրինակ՝ Սուխումի շրջանում Դրէբէլդա, Չէրնօմօրի վիճակում՝ Ղօյթա և այլն։ Բայց ընդհանրապէս ասելով, հայ գիւղերից շատերի դիրքը առողջապահական կողմից լաւ պայմանների մէջ չէ։ Տեղ-տեղ համարեա ծովին հաւասար, ձորերում ու նեղ հովիտներում ցրուած, անտառների մէջ կորած. տեղ-տեղ էլ անտառապատ բլուրների ու լեռների լանջին, ծովից մօտաւորապէս մի $^1/_4$ վերստ կամ քիչ էլ աւելի բարձր և սովորաբար ծովահայեաց, համարեա բոլորն էլ ծովին են մօտիկ տալիս։

## ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ։

Մեզ մօտ, Կովկասում, համշէնցի հայերը նստած են գլխաւորապէս Սև ծովի Կովկասեան ափերում և մասամբ էլ նրանց մօտիկ տեղերում՝ Կուբանի վիճակում, Եկատէրինօդարի ու Մայկօպի շրջակայքում և Խրիմի ափերում։ Նրանց ամենամեծ բազմութիւնը, ինչպէս վերևն էլ ասեցի, կենտրոնացած է այսօր Սուխումի շրջանում, ուր նրանց թիւը հասնում է մօտ 900 տան և մի հազարի չափ էլ, մէն-

մար, որը չորացնելու և պահելու համար շինուած շէնքերն ու պահեստները աճագին, հարիւրաւոր սաժէններով տեղ են բռնում։

Եւ պէտք է նկատել, որ առհասարակ նրանք՝ գոնէ այստեղ, Կովկասեան ափերում, թութունի համար աւելի լաւ շէնքեր ու յարմարութիւններ ունին, քան սեփական իրանց համար։ Նրանցից շատերի թութունի պահեստները—«մաղազաները»—իրանց տներից գեղեցիկ են և ցրտից ու խոնաւութիւնից շատ աւելի պաշտպանուած, քան իրանց տները։ Այդ պահեստները սովորաբար տախտակաշէն են լինում, մինչդեռ իրանց տները ծուռումուռ, կլոր փայտից են շինուած, անտաշ ու ծակ-ծակ արաներով։

Խօսելով Կովկասեան ափերի կլիմայական պայմանների մասին, չի կարելի ասել, թէ հայերի բոլոր նստած տեղերը վատ են։ Ոչ, այստեղ էլ են պատահում լեռնային ու հովասուն գեղեցիկ տեղեր, ուր ոչ միայն ջերմը քիչ է լինում, այլ և լեռնային, մաքուր ու առողջարար կլիմա ունին. ինչպէս օրինակ՝ Սուխումի շրջանում Ծէբէլդա, Չէրնօմօրի վիճակում՝ Ղօյթա և այլն։ Բայց ընդհանրապէս ասելով, հայ գիւղերից շատերի դիրքը առողջապահական կողմից լաւ պայմանների մէջ չէ։ Տեղ-տեղ համարեա ծովին հաւասար, ձորերում ու նեղ հովիտներում ցրուած, անտառների մէջ կորած. տեղ-տեղ էլ անտառապատ բլուրների ու լեռների լանջին, ծովից մօտաւորապէս մի $1/_4$ վերստ կամ քիչ էլ աւելի բարձր և սովորաբար ծովահայեաց, համարեա բոլորն էլ ծովին են մտիկ տալիս։

## ՎԻՃԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ։

Մեզ մօտ, Կովկասում, համշէնցի հայերը նստած են գլխաւորապէս Սև ծովի Կովկասեան ափերում և մասամբ էլ նրանց մօտիկ տեղերում՝ Կուբանի վիճակում, Եկատէրինօդարի ու Մայկօպի շրջակայքում և Խրիմի ափերում։ Նրանց ամենամեծ բազմութիւնը, ինչպէս վերևն էլ ասեցի, կենտրոնացած է այսօր Սուխումի շրջանում, ուր նրանց թիւը հասնում է մօտ 900 տան և մի հազարի չափ էլ, մէն-

մենակ ապրող՝ անտնւոր պանդուխտների։ Հայերը նստած են բացառապէս շրջանի երկու բաժիններում՝ Գուդաուտի ու Գումիստայի։ Նրանց ամենանշանաւոր կենտրօնական գիւղերն են՝ Մծարա և Ծէբէլդա։ Երկուսն էլ նախկին աբխազներից պարապուած գիւղերն են, որ հիմա ամբողջապէս համշէնցի հայերով են բնակեցնուած։ Ամեն մէկը նրանցից 150 տնից աւելի բնակիչ ունի, եթէ այդ տեղերում ժամանակաւորապէս ապրող թիւրքահայերին էլ հաշուելու լինինք։ Բացի իրանց մեծութիւնից ու բազմամարդութիւնից, այդ երկու գիւղերը ամբողջ շրջանում միակն են, որ հայերի սեփականութիւն են կազմում։ Մծարան թէև պետական հող է, բայց իբրև համայնական սեփականութիւն տրուած է հայերին 117 տան անունով դեռ ևս 1880 թւի վերջերին, Կովկասի նախկին փոխարքայ Մեծ իշխան Միխայիլի օրերում։ Իսկ Ծէբէլդան հայ գաղթականներն են գնել մասնաւոր կալուածատէրներից այս մօտիկ տարիներում։ Ամբողջ գնած հողի տարածութիւնը հազար դեսիատնից աւելի է, իսկ մասնակցողները 40 տուն են։ Այսպիսով ամբողջ շրջանում մօտ 900 տնից հողի կողմից մի քիչ ապահովուած՝ հազիւ մի 160 տուն կըլինին։ Թէև նրանց ձեռքի հողն էլ մեծ բան չէ, բայց մի կերպ ապրում են իրանց համար. կալուածատէրերի ձեռքին գերի չեն։ Մնացած հարիւրաւոր հայ տներ ցրուած ապրում են շրջանում, օտարապատկան, վարձով վերցրած հողերի վրայ, կազմելով փոքրիկ գիւղեր և խմբեր, որոնք երբեմն մեծանում, երբեմն էլ բոլորովին պարապւում են։ Ամբողջ Կովկասեան ափերում էլի ամենից աւելի մխիթարական հանգամանքներում այդ շրջանի հայերն են, որոնք թէ մեզ և թէ հայրենական ափերին աւելի մօտիկ են, իրարից էլ ուրիշ տեղերի պէս ցրուած ու կտրուած չեն և նիւթապէս ու բարոյապէս համեմատաբար աւելի լաւ ու բարեկեցիկ վիճակի մէջ են։

Սուխումի շրջանից ինչքան հեռանում ենք դէպի հիւսիս, այնքան աւելի աչքի է ընկնում հայերի ցրուած ու անջատ ապրելը, նիւթական ու բարոյական անխնամ վիճակը։ Չեռնօմորի ահագին վիճակում նրանց թիւը հազար տնից քիչ աւելի կը լինի, խմբուած լինելով գլխաւորապէս Ադլէրի, Սօչիի ու Ճափշուկայի շրջականերում։ Ամենից քիչ Ադլէրի կողմերն են մնում. ընդամէնը՝ 170 տուն։ Մի սեփական գնուած կալուածք էլ այնտեղ ունին հայերը (Մծարա գիւղից), մօտ 1300 դեսեատին տեղ։ Մնացած հայերի կէսը Սօչիի կողմերն են, կէսը Ճափշուկայի։ Այս վերջին վիճակումն էլ (Ճափշովա), որի մի մասը կազմում է պաշտօնապէս յայտնի Վելիամինովեան շրջանը, կան 130-ի չափ հայ տներ, որոնք սեփական հող ունին կառավարութիւնից ստացած. Նրանց կէսը միայն Ճափշուկա կոչուած գիւղի հողի վրայ են, որ համշէնցի հայերի հիմնած առաջին գիւղն է Կովկասեան ափերում։

Ռուսները նրան անուանում են Հայոց գիւղ (Армянская), թէև մի քանի տարի է՝ իրանցից էլ մի քանի տուն մնում են այդտեղ հայերի հետ խառը։ Սօչիի հայ գիւղերի մի ծայրից մինչև Ջափշուկայի վիճակի հայ գիւղերը՝ օրերով ճանապարհ կայ. հարիւրաւոր վերստեր է քաշուած։ Մի 4—5 հարիւր տուն էլ Անապայի, Եկատէրինօդարի, Մայկօպի ու Խրիմի կողմերում կլինին։ Դրանց վիճակը ամենքից աւելի կորած ու անմխիթար է։

Այդքան հայերից միայն մի փոքր մասն է ռուսահպատակ. շատ-շատ մի 300 տուն. գոնէ այսօր Կովկասեան ափերում նրանց թիւը շատ չէ։ Գուցէ թիւրքահայերին Կովկասի սահմաններից հեռացնելու վերաբերմամբ կայացած բարձրագոյն կարգադրութիւնից յետոյ՝ շատերը կաշխատեն ռուսահպատակութիւն ընդունելու, այդ չը գիտեմ։ Այնքանը գիտեմ միայն, որ այսօր նրանց ամենամեծ մասը, հազարաւոր հայեր դեռ ևս մնում են թիւրքահպատակ, չուզենալով բոլորովին կտրուել, բաժանուել իրանց մայր-երկրից։

Այսպիսով Կովկասեան ափերում և նրանց մօտիկ տեղերում ապրող բոլոր համշէնցի հայերը ամենաշատը հազիւ մի 2500 տուն կը լինին. եթէ մի 2—3 հազար էլ մենակ, աշխատելու եկած, անտուոր բանուորների թիւը գցենք, կը ստանանք մօտաւորապէս 15 հազար հոգի. ամենաշատը այդքան կը լինին։ Կովկասում և Ռուսիայում ուրիշ ոչ մի տեղ (բացի վիշուած Խրիմի ափերից) համշէնցի հայեր չըկան։ Բոլորը դրանք են և մէկ էլ՝ հայրենական ափերում մնացողները։ Եթէ նրանց էլ սրանց չափ ընդունենք (Նիկօմիդիայի կողմերը գնացողների հետ միասին), կը ստանանք բոլոր համշէնցի կոչուած թիւրքահայերի թիւը՝ ընդամենը 30 հազար։

## ՀԱՄՇԷՆՑԻ ՀԱՅԵՐԻ ԿԱԶՄՈՒԱԾՔԸ, ԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ, ԶԳԵՍՏՆ ՈՒ ԲՆԱԿԱՐԱՆԸ։

—

Տեսքով՝ Սև ծովի ափերի հայ գաղթականները յիշեցնում են մեզ մեր տեսած ու գիտցած թիւրքահայ հայրենակիցներին, թէև ընդհանրապէս սրանց կազմուածքի, շարժմունքի ու վարմունքի մէջ բաւական տարբերութիւն է նկատւում, համեմատելով սրանց Մշի, Վանի և առհասարակ Հայաստանի դաշտային գիւղացիների հետ։ Համշէնցի հայը, մանաւանդ անատօլիական ափերից նոր եկածը, իր շարժմունքների մէջ աւելի կրակ ու կենդանութիւն է ցոյացնում, քան այն տեղերից եկողները։ Սա իր հայրենիքի լեռնային բնութեան համեմատ, իր շարժմունքներով ու ձևերով իսկական լեռնցու պատկերն է յիշե-

Ռուսները նրան անուանում են Հայոց գիւղ (Армянская), թէև մի քանի տարի է՝ իրանցից էլ մի քանի տուն մնում են այդտեղ հայերի հետ խառը։ Սօչիի հայ գիւղերի մի ծայրից մինչև Ճափշուկայի վիճակի հայ գիւղերը՝ օրերով ճանապարհ կայ. հարիւրաւոր վերստեր է քաշում։ Մի 4—5 հարիւր տուն էլ Անապայի, Եկատէրինօդարի, Մայկօպի ու Խրիմի կողմերում կլինին։ Դրանց վիճակը ամենքից աւելի կորած ու անմխիթար է։

Այդքան հայերից միայն մի փոքր մասն է ռուսահպատակ. շատ-շատ մի 300 տուն. գոնէ այսօր Կովկասեան ափերում նրանց թիւը շատ չէ։ Գուցէ թիւրքահայերին Կովկասի սահմաններից հեռացնելու վերաբերմամբ կայացած բարձրագոյն կարգադրութիւնից յետոյ՝ շատերը կաշխատեն ռուսահպատակութիւն ընդունելու, այդ չը գիտեմ։ Այնքանը գիտեմ միայն, որ այսօր նրանց ամենամեծ մասը, հազարաւոր հայեր դեռ ևս մնում են թիւրքահպատակ, չուզենալով բոլորովին կտրուել, բաժանուել իրանց մայր-երկրից։

Այսպիսով Կովկասեան ափերում և նրանց մօտիկ տեղերում ապրող բոլոր համշէնցի հայերը ամենաշատը հազիւ մի 2500 տուն կը լինին. եթէ մի 2—3 հազար էլ մենակ, աշխատելու եկած, անտուն բանուորների թիւը գցենք, կը ստանանք մօտաւորապէս 15 հազար հոգի. ամենաշատը այդքան կը լինին։ Կովկասում և Ռուսիայում ուրիշ ոչ մի տեղ (բացի յիշուած Խրիմի ափերից) համշէնցի հայեր չըկան։ Բոլորը դրանք են և մէկ էլ՝ հայրենական ափերում մնացողները։ Եթէ նրանց էլ սրանց չափ ընդունենք (Նիկօմիդիայի կողմերը գնացողների հետ միասին), կը ստանանք բոլոր համշէնցի կոչուած թիւրքահայերի թիւը՝ ընդամենը 30 հազար։

## ՀԱՄՇԷՆՑԻ ՀԱՅԵՐԻ ԿԱԶՄՈՒԱԾՔԸ, ԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ, ԶԳԵՍՏՆ ՈՒ ԲՆԱԿԱՐԱՆԸ։

—

Տեսքով՝ Սև ծովի ափերի հայ գաղթականները յիշեցնում են մեզ մեր տեսած ու գիտցած թիւրքահայ հայրենակիցներին, թէև ընդհանրապէս սրանց կազմուածքի, շարժմունքի ու վարմունքի մէջ բաւական տարբերութիւն է նկատւում, համեմատելով սրանց Մշի, Վանի և առհասարակ Հայաստանի դաշտային գիւղացիների հետ։ Համշէնցի հայը, մանաւանդ անատոլիական ափերից նոր եկածը, իր շարժմունքների մէջ աւելի կրակ ու կենդանութիւն է ցոլացնում, քան այն տեղերից եկողները։ Սա իր հայրենիքի լեռնային բնութեան համեմատ, իր շարժմունքներով ու ձևերով իսկական լեռնցու պատկերն է յիշե-

ցնում. թեթև ու արագաշարժ, ժիր ու ճարպիկ. իսկ հագուստն խոսուածքն էլ մի առանձին լեռնային գոյն են կրում։ Ճիշտ է՝ կազմուածքով նրանք այնքան առողջ ու յաղթանդամ տեսք չունին, ինչպէս առհասարակ բոլոր լեռնցիները, թէև քիչ չեն նրանց մէջ հսկայ ու քաջառողջ կտրիճներ, բայց բնաւորութիւնով շատ սրտոտ ու համարձակ մարդիկ են, զէնքը գօտուց ու ձեռքից անբաժան։ Իրանց ամեն մի քայլով ու տարազով սրանք յիշեցնում են լազերին։

Սրանց հագուստի մէջ էլ անբաժան է Քէօլ, «չուխայէ շալվարի» ու «ջուբբա» նրանց տակը «էնթարի» ու «էլադզը», և կաշուէ լայն գօտին—«ղու-շաղ». մի խօսքով՝ զգեստի այն բոլոր տեսակները, որ յատուկ են Թիւրքիայի շատ կողմերի ժողովրդներին։ Բայց սրանց «շալվարի» այնպէս լայն չէ, ինչպէս սովոր ենք տեսնել Էրզրումցոց և կամ վանեցոց մօտ, որոնց հագածը ջուալի նման կախւում է ներքև և լաւ չի նստում։ Սրանց «շալվարը», ընդհակառակը, ներքևն այնքան նեղ է լինում, որ բոլորովին կպչում է սրունքներին և չի խանգարում քանելուն ու շարժուելուն։ «Շալվարի» վրայ նա կապում է բազմածալ կաշուէ գօտին, որի ծալքերում նա պահում է թութունը, «չախմախը» և երբեմն զանազան հարկաւոր թղթերը։ Գօտուց կախած կը տեսնէք ռէվօլվէրը կամ անբաժան դանակը՝ պատեանի մէջ դրած։ Նրանց կանանցից շատերի մօտ կը գտնէք այդպիսի դանակներ, թէև նրանք այդտեսակ կաշուէ գօտիներ չեն կրում։ Ֆէսը, սովորաբար, փաթթում են «չարչավ», որ մի բարակ քօղ է և յատկապէս ֆէսի համար են բանեցնում։

Կանանց հագուստն էլ թէև թիւրքական տարազով է, բայց պէտք է ասեմ, որ այնքան գեղեցիկ չէ, ինչքան տղամարդկանցը։ Սրանց մօտ էլ աչքի է ընկնում թիւրքական ձևի հագուստներից «ջուբբա», որ սովորաբար «կուտնի» ու մետաքսէ նաշխուն իրեղէններով է լինում զարդարուած. իրանք դրան պարզապէս «չուխա» են ասում (մահուդի կտորից լինելու համար. չուխա-մահուդ)։ Երբ որ «չուխա» չեն հագնում, նրա տեղը հագնում են անթև ու երկայն չթէ «էլադզը», որ եթէ «դսնաւուր» է՝ երբեմն մետաքսից ու գոյն-գոյն թելերով են շինում. տակից հագնում են «իշլիղը» և վերջապէս երկայն շապիքն ու վարդիքը, իսկ դրսից «ելաղի» ու շապքի վրայից կապում են գոգնոցը—«փէշտըմալ»։ Սովորական, ամենօրեայ «էնթարի» ու «ելաղը» չափով ու ձևով իրար նման են լինում, այնքան որ առաջինը թևով է ու տակից են հագնում, միւսը անթև է ու վրայից։ Այդ բոլոր շորերի մէջ ամենքից աւելի աչքի է ընկնում նրանց կարմիր ծաղկաւոր, չթէ լայն-լայն վարտիքը, որ նրանց խելքով ու ճաշակով անպատճառ պէտք է ներքև երևայ, թէ չէ անպատշաճ բան կը լինի։ Շրջազգեստ և առհասարակ կանանց երկար հագուստ ոչ միայն չունին, այլ

և, ինչպէս երևում է, այդ տեսակ հագուստը նրանց մէջ այնքան էլ համարմունք չի վայելում․ Նրանք էլ են գլխին ֆէս դնում, բայց առանձին կերպով յարմարեցնում գլխին, ներս ծալելով ու դէպի յետ ծռելով, ճակատի կողմից էլ մի բարակ, ծալած քօղով՝ կապելով ֆէսը գլխի հետ, մի ուրիշ բարակ, գունաւոր քօղով էլ—«[illegible]»—փաթթելով գլուխը բկի տակից․ Այդ ճակտէկապին նրանք «[illegible]» են ասում և միայն կանայքն են կապում. աղջկերք չեն բանեցնում․ «[illegible]»—սովորաբար տղամարդիկն էլ են կապում ֆէսների վրայ, բայց այնպէս ծալծլելով ոլորում են ֆէսի վրայ, ամբողջապէս չեն ծածկում։ Գլխի զարդարանք համարեա չեն բանեցնում․ Ոսկեղէն բոլորովին չունին. շատ քիչ անգամ է պատահում նորահարսների գլխին տեսնել արծաթէ զարդեր՝ կախկխած մազերի հիւսերի հետ, երբեմն էլ արծաթէ ճտնոցներ—«[illegible]»։ Ականջ ծակելու սովորութիւն թէև ունին, բայց սովորաբար օղեր չեն բանեցնում. բանեցնողներն աւելի նորահարսներն են լինում․ Նրանց ամենատարածուած զարդարանքը մատանին ու ապարանջանն են, որոնք բոլորն էլ հասարակ, կոպէկանոց բաներ են լինում, սովորաբար երկաթից կամ դեղին պղնձից, շատ-շատ միայն մատանիներն են լինում երբեմն արծաթից․ Մատանիներ դնելու սովորութիւնը տղամարդիկն էլ ունեն։

Այստեղ հագուստին վերաբերեալ բոլոր ասածներս վերաբերում են աւելի Անատօլիական ափերից նոր եկած համշէնցիներին։ Հին, տասնեակ տարուան եկողները, ինչպէս շատ բան հայրենական կեանքից ու սովորութիւններից, այնպէս էլ հագուստը քիչ-քիչ սկսել են փոխել, ենթարկուելով շրջապատող ազգերի ազդեցութեանը։ Այսպէս սկսել են արդէն ֆէսի տեղ մորթէ գլխարկներ ու «բաշլըղներ» բանեցնել, տրեխների տեղ չուստ («չափուլա») կամ ճտով կօշիկներ հագնել․ Քիչ-քիչ սկսել են վերի շորերն էլ փոխել. միայն «շալուարն» է մնացել. իսկ ներքին հագուստը համարեա ամեն տեղ՝ հայրենական սովորութիւնով՝ իրանց ձեռագործ կտաւից են կարում։ Նոյն փոփոխութիւնն է նկատւում և կանանց շորերում. կամաց-կամաց նրանք էլ են սկսում հին ձևի փոխել։ Հետզհետէ «կաբաները» տեղ են տալիս նոր ձևի, ուռած թևերով «[illegible]», իսկ վերջերս խիստ ձգտում են ցոյց տալիս շրջազգեստ հագնելու, թէև մի քանիսը շրջազգեստի վրայից դեռ էլի հայրենական գոգնոցն են կապում։ Զգեստի փոփոխութիւնը, ինչպէս և ամեն բանի, աւելի աչքի է ընկնում Չերնօմօրի վիճակում, ուր համարեա թէ հայրենական տարազից նշոյներ էլ չեն մնացել. թէ տղամարդիկ և թէ կանայք իրանց տարազով համարեա բոլորովին ռուսների են նմանւում․

Համշէնցիների տները համարեա կլոր փայտից են շինուած, բայց

կան տախտակաշէն և կաղնու ճղներից հիւսուած տներ էլ. վերջին տեսակներին «չիթ» են ասում։ Քարաշէն տներ համարեա թէ չը կան. սովորութիւն չեն ունեցել։ Նրանց եկեղեցիներն էլ թէ հայրենիքում և թէ այստեղ, փայտից են շինուած։ Ամբողջ Սուխումի շրջանում քարաշէն տուն հազիւ թէ երկու-երեք հատ գտնուի։ Շինած տների մեծ մասը երկյարկանի է. տակը՝ գոմ, վրան՝ տուն։ Նրանցից շատերը համարեա մի հատ կարգին պատուհան չեն ունենում։ Լոյսի համար փոքրիկ ծակեր են թողնում պատերի մէջ և մի փոքր բացուածք էլ ծածքի մէջտեղը, օջախի գլխին, այդ էլ աւելի ծխի, քան լոյսի համար («բաջա». թ.)։ Կրակի համար ջոկ տեղ չեն շինում, տան մի անկիւնում. նոյն իսկ լաւ տներումն էլ առաջուան ժամանակների պէս նահապետական օջախն է լինում տան մէջտեղը, որ ամառ-ձմեռ վառում են։ Սովորաբար՝ խաւարը, ցուրտը, ծուխն ու խոնաւութիւնը անպակաս են նրանց տներից։ Հողէ կտուր՝ բոլորովին չըկայ նրանց մօտ։ Նրանց սովորական ծածքը—մանր կտրտած տախտակից է լինում, որ հանում են աւելի կաղնու և հաճարի ծառերից, («ծածուկի տախտակ», «խարդումա» թ. драмь). իսկ աւելի խեղճերի տները «ըմփիրով» («իմփիր»՝ խոտ է, папортникъ) կամ «ծեղով» (սիմինդրի չոր ցօղուն) են լինում ծածկուած։

Համշէնցիները, ինչպէս և մեր կողմի գիւղերում, սովորաբար տները իրանք տէրերն են շինում, երբեմն միայն դրսից վարպետներ վարձում, աւելի իրանց համագիւղացիներից, այդ էլ աւելի այն ժամանակ, երբ իրանք շատուոր չեն լինում և գործ էլ շատ են ունենում։ Վերջին տարիները շինած նրանց բոլոր լաւ տները դրսից եկած օտար վարպետների շէնքեր են։ Տներ սովորաբար շինում են աշնան, թութունի քաղը վերջացնելուց յետոյ, իսկ թութունի համար պահեստի շէնքերը՝ աւելի գարնան, թութունը «սադրելուց» (տնկել) յետոյ։ Տները սովորաբար չեն սուաղում, միայն ձմեռը մօտեցած ժամանակին ձեռքով աղբ են քսում արաներին, որ ծակերը ծեփուին, վերջերս սկսել են լաւ տները կրով սուաղել։ Նրանց տները սովորաբար վերևներքև երկ-երկու աչք են ունենում, միջի դռնով իրար կցուած։ Վերին յարկի աչքերից մէկը մեծ է լինում, միւսը փոքր։ Մեծ աչքը [illegible] է կոչւում. այդտեղ են սովորաբար նստում-վեր կենում, ուտում ու պառկում. փոքրին՝ «մառօն» են ասում. այդտեղ են գլխաւորապէս տան աւելորդ իրեղէնները պահում, փոխնորդներ կախ անում, իրանք փոխւում. իսկ հարսանիքի ժամանակ էլ հարսի առանձնասենեակն է. սովորաբար պսակն էլ այդտեղ են անում։ Այդ տեսակ տներն առհասարակ լայն պատշգամ էլ են ունենում—«հայեաթ», որ սովորաբար փողոցի կողմից տախտակներով փաթթուած է լինում՝ քամուց ու

ցրտից պաշտպանուելու համար, և աւելի տան մանր բաներ ու երկրագործական բերքեր պահելու և մաքրելու համար է ծառայում, քան տեսարանին։ Սովորաբար այդտեղ են պահում ամբարը. կանայքն էլ իրանց ճախարակը այդտեղ են սարքում ու կտաւ գործում և իրանց ձեռագործ նաշխուն եաղլուխները հէնց այդտեղ կախում պատից, դռան մօտիկ։ Պատշգամբի տակը անասունների կանգնելու տեղ է. անձրևին ու վատ եղանակին այդտեղ են կթում կովերը։

Մի քանիսը տան պատշգամբի կամ ջոկ տեղում, տան մօտիկ, մի սենեակ են շինում հիւրերի համար, որին «օդա» են ասում։ Յատուկ «օդա» են շինում և թութունի ծրարը կապելու համար. երբեմն միևնոյն աչքը հիւրերին էլ է ծառայում, թութունին էլ. մանաւանդ որ տարուայ մեծ մասը պարապ է լինում և միայն ծրարը կապելու ժամանակն է հարկաւոր գալիս։ Դրան էլ «դամ-ալթը օդա» են ասում։ Բացի այդ «օդայից», թութունի համար երկու ուրիշ շէնք էլ են շինում. մէկը ծառայում է որպէս թութունը չորացնելու տեղ, միւսը իբրև պահեստատեղ։ Երբեմն երկու շէնքերը միացնում են. տակը չորացնելու համար են գործածում, վրան՝ կախում ու պահում են չորացած թութունը, երկուսն էլ մի ծածքի տակ։ Չորացնելու տեղը, կամ ինչպէս հայերն են ասում, «մաշինա»ն—սների վրայ կանգնած մի պարզ շէնք է, որ առջևի կողմից բոլորովին բաց է, իսկ երեք կողմից ցախով կամ ծառի ճղներով պատած, որպէսզի քամին ներս չփչէ։ «Մաշինան» մի քանի աչք է ունենում, նայելով թէ ինչքան տեղ է բռնում թութունի պլանտացիան. ի հարկէ՝ եթէ շատ է, տեղն էլ շատ կուզէ։ Սովորաբար երկու աչքից պակաս չի լինում, բայց լինում են և մինչև 10 աչքանի շէնքեր։ Երբ որ պակաս է գալիս, մի կողմից կցում, աւելցնում են։ «Մաշինի» առջևից՝ ամեն մի աչքի դիմաց—հորիզօնական կերպով ձողեր են լարուած. գետնից մարդաչափ բարձր, նեցուկների վրայ հաստատուած։ Այդ հողերի վրայով դուրս ու ներս են հանում փայտէ շրջանակներ—«մաղեր», որոնց վրայ թելերով թութուն է շարուած։ Թութունի պահեստատեղը—«մաղազա»—շինում են բոլորովին գետնի վրայ և չորս կողմից տախտակով լաւ պատում են, որպէս զի դրսի օդի խոնաւութիւնը չը ներգործէ ներսը կախած թութունների վրայ։ Համշէնցիների շինած բոլոր շէնքերի մէջ ամենամեծ շէնքերը այդ երկուսն են լինում. դրանց վրայ շատ անգամ աւելի ծախս ու աշխատանք են թափում, քան իրանց սեփական կացարանների վրայ։ Մնում են էլի երեք ջոկ-ջոկ շէնք. մէկը՝ որ ամենքն անպայման ունենում են, գլխով սիմինդր պահելու համար է. սովորաբար փոքրիկ շէնք է, տան ձևով, ամուր սների վրայ հաստատուած, գետնից մի սաժէնաչափ բարձր. դրան հայերն ասում են «կօրօբ»։ Ջասարակ «կօ-

րօբները» կաղնու ճղներից հիւսուած կլոր կամ քառանկիւնի ձև ունին, «ծեղով» ծածկուած։ Լաւ շէնքերը շինում են տաշած կլոր փայտից և մանր տախտակով են ծածկում․ Միւս երկու շէնքերն են՝ փուռը և մարագը։ Փուռը տան մէջ չեն շինում, այլ ջոկ տեղ, առանձին ծածքի տակ. իսկ մարագը հասարակ «չթէ» շէնք է, խոտով կամ «ծեղով» ծածկուած Սովորաբար այդ բոլոր շէնքերը շինում են տներին մօտիկ, գիւղամիջում. երբեմն միայն պակաս եկած, նոր շինուելիք «մաշինաները» շինում են թութունի պլանտացիաներում, եթէ տեղը յարմար են գտնում։

## ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆ ՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ։

—

Համշէնցիները թէ իրանց հայրենական ափերում և թէ այստեղ բացառապէս երկրագործութիւնով են պարապում։ Եթէ համեմատելու լինինք մեր կողմերում ապրողներին հայրենական ափերում մնացողների հետ, նրանց պարապմունքի ու տնտեսութեան ձևերի մէջ շատ քիչ փոփոխութիւն կը գտնենք, եթէ չըվիշենք ու մի կողմ դնենք թութունի մշակութիւնը, որ շատ տեղ հայրենիքում արդէն բոլորովին վերջացել է, իսկ եղած տեղերումն էլ հետզհետէ աւելի յետ է գնում։ Մինչդեռ մեր Կովկասեան ափերում այդ բոյսի մշակութիւնը մի քանի տարուց դէսը դարձել է մի այնպիսի տիրապետող ու գլխաւոր պարապմունք, որ անկարելի է երևակայել այդտեղ, մասնաւորապէս Սուխումի շրջանում մի հայ գաղթականութիւն, մի հայ գիւղ, նոյն իսկ մի հայ գաղթական, որ դրանով պարապելիս չը լինի։ Թութունը մեր կողմի համշէնցի հայերի արդիւնաբերութեան մէջ առաջին ու ամենագլխաւոր տեղն է բռնում։ Սուխումի շրջանում տասնեակ հազար փութ թութուն միայն համշէնցի հայերն են արտադրում։ Դրանից կարելի է հասկանալ, թէ ինչքան մեծ չափեր է ստացել այդ բոյսի մշակութիւնը նրանց մօտ։ Ճիշտ է՝ Չերնօմօրի կողմերում, բացի Սօչիի շրջանից, թութունի մշակութիւնը այնքան մեծ ծաւալ չունի, բայց հաստատապէս կարելի է առաջին տեղը տալ համշէնցի հայերին ամբողջ Կովկասեան ափերի թութունի արդիւնաբերութեան մէջ։

Հացաբոյսերի մէջ առաջինը և ամենատարածուածը նրանց մօտ սիմինդրն է, որ ինչպէս հայրենիքում, նոյնպէս և այստեղ, կազմում է նրանց գլխաւոր ուտելիքը, նրանց ամենօրեայ հացը։ Ամբողջ Կովկասեան ափերի համշէնցիների մօտ այդ բերքը համարեա ոչ մի տեղ չէ արտահանւում. միայն իրանց համար են ցանում։ Տեղ-տեղ էլ եր-

րօբները» կաղնու ճղներից հիւսուած կլոր կամ քառանկիւնի ձև ունին, «ծեղով» ծածկուած։ Լաւ շէնքերը շինում են տաշած կլոր փայտից և մանր տախտակով են ծածկում։ Միւս երկու շէնքերն են՝ փուռը և մարագը։ Փուռը տան մէջ չեն շինում, այլ ջոկ տեղ, առանձին ծածքի տակ. իսկ մարագը հասարակ «չթէ» շէնք է, խոտով կամ «ծեղով» ծածկուած Սովորաբար այդ բոլոր շէնքերը շինում են տներին մօտիկ, գիւղամիջում. երբեմն միայն պակաս եկած, նոր շինուելիք «մաշինաները» շինում են թութունի պլանտացիաներում, եթէ տեղը յարմար են գտնում։

## ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆ ՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ։

—

Համշէնցիները թէ իրանց հայրենական ափերում և թէ այստեղ բացառապէս երկրագործութիւնով են պարապում։ Եթէ համեմատելու լինինք մեր կողմերում ապրողներին հայրենական ափերում մնացողների հետ, նրանց պարապմունքի ու տնտեսութեան ձևերի մէջ շատ քիչ փոփոխութիւն կը գտնենք, եթէ չըլիշենք ու մի կողմ դնենք թութունի մշակութիւնը, որ շատ տեղ հայրենիքում արդէն բոլորովին վերջացել է, իսկ եղած տեղերումն էլ հետզհետէ աւելի յետ է գնում։ Մինչդեռ մեր Կովկասեան ափերում այդ բոյսի մշակութիւնը մի քանի տարուց դէսը դարձել է մի այնպիսի տիրապետող ու գլխաւոր պարապմունք, որ անկարելի է երևակայել այդտեղ, մասնաւորապէս Սուխումի շրջանում մի հայ գաղթականութիւն, մի հայ գիւղ, նոյն իսկ մի հայ գաղթական, որ դրանով պարապելիս չը լինի։ Թութունը մեր կողմի համշէնցի հայերի արդիւնաբերութեան մէջ առաջին ու ամենագլխաւոր տեղն է բռնում։ Սուխումի շրջանում տասնեակ հազար փութ թութուն միայն համշէնցի հայերն են արտադրում։ Դրանից կարելի է հասկանալ, թէ ինչքան մեծ չափեր է ստացել այդ բոյսի մշակութիւնը նրանց մօտ։ Ճիշտ է՝ Չերնօմորի կողմերում, բացի Սօչիի շրջանից, թութունի մշակութիւնը այնքան մեծ ծաւալ չունի, բայց հաստատապէս կարելի է առաջին տեղը տալ համշէնցի հայերին ամբողջ Կովկասեան ափերի թութունի արդիւնաբերութեան մէջ։

Հացաբոյսերի մէջ առաջինը և ամենատարածուածը նրանց մօտ սիմինդրն է, որ ինչպէս հայրենիքում, նոյնպէս և այստեղ, կազմում է նրանց գլխաւոր ուտելիքը, նրանց ամենօրեայ հացը։ Ամբողջ Կովկասեան ափերի համշէնցիների մօտ այդ բերքը համարեա ոչ մի տեղ չէ արտահանւում. միայն իրանց համար են ցանում։ Տեղ-տեղ էլ եր-

բեմն, երբ թութունի պատճառով ցանքը քիչ է լինում, իրանք ստիպուած են լինում ուրիշներից գնելու։

Ցորեն թէև շատերը ցանում են, բայց մէկ որ ամէնքը չեն ցանում, մէկէլ որ՝ տեղ-տեղ ցանածը չի լինում, լաւ չի գալիս։ Իրանց ասելով, էլի հայրենիքում ցանողները թէ հիմիկուանից շատ են եղել և թէ լաւ էլ տուել է։ Բայց էլի չնայելով աննպաստ պայմաններին, ցորենի մշակութիւնը հետզհետէ աւելի ու աւելի է տարածւում հայ գաղթականների մէջ, թէև էլի առաջուան պէս՝ նրա հացը միայն պաս ու տօն օրերին են բանեցնում։

Միւս հացաբոյսերից ցանում են վարսակ ու գարի. աւելի առաջինը։ Վարսակը նրանց հայրենիքում, մասնաւորապէս Ճանիկի ափերում (Չարշամբայի գաւառամասում) մեծ արտահանութիւն է ունեցել։

Տէխնիկական բոյսերից, բացի թութունից, ցանում են էլի կանեփ, թէև ոչ այնքան շատ ինչքան հայրենիքում։ Այնտեղ թէ կանեփ շատ են ցանել և թէ տեղ-տեղ վուշ էլ են ցանել։ Իսկ այստեղ սովորաբար միայն կանեփն են ցանում և այն էլ հազիւ մի «ածուքի» չափ տեղ։ Կանեփի թելից են գործում իրանց բոլոր ներքին հագուստը և տանը բանեցնելիք բազմատեսակ «եաղլուխները»։

Այգեգործութիւնը թէև առհասարակ կանոնաւոր կերպով ու մեծ չափով չէ տարածուած նրանց մէջ, բայց հետզհետէ պտղատու նոր-նոր ծառեր են աւելցնում իրանց «ածուքներում» ու արտերում, մանաւանդ նրանք, որ սեփական հողեր ունին, բերելով պատուաստները իրանց հայրենիքում յայտնի ու գովուած տեսակներից. գլխաւորապէս՝ տանձի, խնձորի, թթի, սալորի, բալի և շագանակի ծառերից։ Տեղ-տեղ սկսել են նաև բաւական մեծ չափով խաղողի որթեր տնկել տեղական, ծառի վրայ բարձրացող տեսակից (իզիբէլլա, տեղական լեզուով՝ «աղէս»)։ Տեղ-տեղ պատահում են և պտղատու ծառեր այդ ափերի հին բնիկներից մնացած. ինչպէս օրինակ՝ տանձենիներ Ճափշուկայի կողմերում (Չերնոմօրի վիճակ), չերքէզներից մնացած, և խաղողի ու թզի ծառեր Սուխումի շրջանում՝ աբխազների ժամանակից։ Իրանց պատմածներին նայելով, հայրենիքում նրանք պտղատու ծառեր շատ են ունեցել, այն էլ՝ ընտիր տեսակներից, թէև այնտեղ էլ կանոնաւոր այգիներ չեն ունեցել. պատուաստների մեծ մասը ճանապարհների, արտերի ու անտառների մէջ է եղել ցրուած և մի մասն էլ տներին մօտիկ։

Ջերմանոցապահութիւնով այստեղ համարեա բոլորովին չեն պարապում. էլի հայրենիքում քիչ-շատ պարապել են։ Դրա պատճառը մէկ թութունն է, մէկ էլ իրանց անհող վիճակը։

Մեղու պահում են, բայց ոչ ամենքը. աւելի քչերը, քան շա-

տերը։ Տեղ-տեղ պատահում են 40 և մինչև իսկ հարիւր փեթակով մեղու պահողներ, բայց դրանք հազւագիւտ են. սովորաբար քիչ են ունենում։

Ինչպէս հայրենիքում, նոյնպէս և այստեղ, ամեն տուն ունի իր բանջարանոցը, կամ ինչպէս իրանք են ասում, «ածուքը», որ համարեա բացառապէս համշէնցի հայ գեղջկուհիների ձեռքով է ցանւում ու մշակւում։ Այստեղ՝ գոգնոցը կապած, փետատը ձեռքին՝ բանում ու աշխատում է նա ժիր տղամարդու պէս, հետն էլ ժամանակ գտնելով մի կողմից երեխանց ու տան պակասներին նայել, միւս կողմից մասնակցել իր մարդու աշխատանքներին։ «Ածուքի» բոյսերից ամենից շատ տարածուածը «բոնջարն» ու լոբիան է։ Իսկապէս լոբիան «ածուքում» այնքան չեն ցանում, ինչքան սիմինդրի հետ խառը՝ մէկ արտում կամ առանձին։ Իսկ «բոնջարը», որ կաղամբի մի տեսակն է (կանաչ ու չըգլխող), «ածուքի» ամենասովորական բոյսն է. առանց դրան համշէնցի հայը չի կենալ. պաս օրերին գլխաւորապէս այդ են գործածում։ «Բոնջարից» յետոյ «ածուքում» մեծ տեղ են բռնում պրասը, սոխն ու սխտորը։ Բացի դրանցից, «ածուքում» պատահում են էլի՝ տոմաթ, բադրիջան, կարտոֆիլ, վարունգ, դդում, ձմերուկ ու սեխ, թէև միևնոյն բոյսերը աւելի մեծ չափով արտերում էլ են ցանում, սիմինդրի կամ թութունի հետ խառը։

Բացի բուն երկրագործութիւնից ու տեխնիկական բոյսերի մշակութիւնից, համշէնցի հայեր պարապում են նոյնպէս անասնապահութիւնով և տնային մանր արհեստներով։ Անասնապահութիւնն այնքան զարգացած չէ նրանց մէջ. պահում են միայն այնքան, ինչքան հարկաւոր է երկրի մշակութեան և իրանց տան կարիքների համար, դրանք են՝ եզ, կով, ձի։ Սովորաբար մի տուն պահում է մի զոյգ եզ (հասարակ կամ «գոմշաեզ»). շատ քչերն են երկու զոյգ ունենում։ Կթելու համար պահում են մի-երկու կով, երեքից ոչ աւելի, կամ մի-երկու կթի գոմէշ։ Աւելի ունեցողը ամենաշատը մի-երկու կթի գոմէշի հետ մի-երկու էլ կթի կով կունենայ. գոնէ Սուխումի շրջանում դրանից աւելի ունեցողները հազւագիւտ են։ Մալերի մէջ ամենից շատ տարածուածը «գոմշամալն» է. այդպէս է գոնէ Սուխումի շրջանում, ուր գոմէշը ընդհանրապէս լաւ է դիմանում։ Եւ պէտք է ասել, որ այդ կողմերի համար, ուր ճանապարհներ չկան, չորս կողմը անտառ է, անձրևն ու ցեխը անպակաս է, շատ դժուար կըլինէր երկրագործի բանը, եթէ գոմէշը չլինէր։ Կաթնատնտեսական արդիւնքները բոլորը իրանց համար են գործածում։ Երբեմն նոյն իսկ նրանցից շատերը իւղը դրսից են գնում. տեղ-տեղ՝ միայն պատահում են նրանց մէջ իւղ ծախողներ։ Պանիր համարեա չեն շինում. քչով շինում են միայն Տրա-

պլիզօնին մօտիկ գիւղերից եկողները։ Անասնապահութիւնով աւելի պարապում են Չերնօմօրի կողմերի հայ գաղթականները։ Ոչխար ու խոզ բոլորովին չեն պահում։

Բացի զուտ երկրագործութիւնից, համշէնցի հայը դարձեալ ժամանակ է գտնում տնային մանր արհեստով զբաղուելու։ Հագուստից ու ձեռագործ գործուածքներից սկսած՝ մինչև իր տան շէնքն ու այլ և այլ երկրագործական սարքեր շինելը, բոլորին նա հասնում է. բոլորը նրա ձեռքից գալիս է։ Շատերը գիտեն իրանց մէջ սայլ, լուծ, արօր, տափան շինելը։ Հիանալի ամաններ են շինում փայտից—ջուր կրելու, թթու դնելու, կաթնեղէն արդիւնքները պահելու համար տակառներ, օշնակներ, եղամաններ, նոյնպէս և տաշտեր խմորի համար և տեսակ-տեսակ մեծ ու փոքր զամբիւղներ՝ զանազան բաներ պահելու և կրելու համար։ Բոլորն էլ ամուր ու գեղեցիկ, դիմացկուն փայտից շինուած։

Կիրակիներից ու տօներից դուրս ուրիշ ոչ մի ժամանակ նրանց պարապ չէք գտնիլ. Ծոյլեր շատ հազուագիւտ են նրանց մէջ։ Կը հաւատաք, եթէ ասեմ որ երեկոյեան՝ արտից տուն դառնալիս և կամ մի տեղ գնալիս, պարապ չմնալու համար նրանք թել են մանում կամ գուլպայ գործում։ Եւ մի բան, որ շատ աչքի է ընկնում, այդ տղամարդկանց գուլպայ գործելն է. նրանց կանայք չեն իմանում. նրանց համար էլ տղամարդիկն են գործում։ Բայց սրանից չը հասկանաք, թէ կինը նրանց մօտ պարապ նստած է, բան չի անում։ Երբէք. գուցէ ոչ մի տեղ գիւղացի կինը այնքան գործ չունի, այնքան չի բանում, ինչքան նրանց մօտ։ Սխալուած չեմ լինիլ, եթէ ասեմ, որ նրանց մօտ թերևս կինն աւելի է աշխատում, քան տղամարդը։ Բացի պատանելուց ու հերկից, նա մասնակցում է իր մարդու ամեն տեսակ աշխատանքին։ Տունը, գոմը, «ածուքը», արտը, մայերին, անտառը,—ամեն տեղ հասնում է թխւրքահայ կինը, և այդքան աշխատանքի մէջ նա դարձեալ պակաս չի թողնում տան բաները։ Նա է ջուրը կրում, օջախը վառում, եփում, թափում, լուանում, ուտեցնում ամեն օր ոչ միայն տանեցող, այլ և երբեմն տասնաւոր բանուորներին, երեխանց նայում ու մեծացնում։ Եւ այդ բոլորի հետ՝ էլի ժամանակ է գտնում —երբեմն «ուօկ», իլիկ, ճախարակ ու ասեղ բանեցնում, կանեփից ու բրդից թել մանում, «լաթ» գործում, շապքցու ու վարդիքցու պատրաստում ու ամեն տեսակ «եաղլուխներ» շինում։

Խօսելով նրանց տնային արդիւնաբերութեան մասին, աւելորդ չեմ համարում մի քանի խօսք ասել նրանց երկրագործական սարքի վրայ։ Նրանց արօրը շատ պարզ կազմութիւն ունի. ամբողջապէս փայտից է, միայն խոփն է երկաթէ։ Մի անկիւնաձև ծակած փայտ է. մի կողմը գետնի վրայ է քսում («ընեղ») և նրա ծայրին է ամրա-

ցած խոփը․ միւս ծայրը մի քիչ թեք կերպով ցցուած է և մաճի տեղ է բռնում («պոչ»)։ Ծակած տեղին մօտիկ կցուած է մի երկայն փայտ («օք»), որի ծայրից լծում են եզներին։ Վերջապէս արօրի ներքևի կողմը, գետնին մօտիկ, մի փոքր տախտակ է մեխուած՝ ակօսի հողը մի կողմ թափելու համար։ Այդ է բոլոր կազմութիւնը․ ուրիշ ոչ անիւ ունի և ոչ մի բան։ Արօրում միայն եզներ են լծում, ձի չեն բանեցնում։ Այդ արօրով թէև կարելի է ուզած խորութիւնով հերկել, բայց սովորաբար նրանք խորը չեն հերկում, Գութան բոլորովին չեն բանեցնում․ երբեմն միայն պատահում են երկխոփաւոր արօրներ («չաթալ յարօր»), որ սովորականից շատ են հերկում։ Նրանց արօրը առհասարակ շատ հեշտ ու թեթև է բանում։ Համարձակ կարելի է ասել, որ այնպիսի խորդ ու բորդ, քարքարոտ ու անհարթ տեղերում, ինչպէս Կովկասեան ու հայրենական ափերի հայերի նստած տեղերն են, նրանց արօրը մեծ յարմարութիւն ունի երկիրը մշակելու համար։ Ինքը շատ թեթև․ տեղը ինչքան զառի վեր լինի, դժուար չի լինիլ շարժել ոչ եզան համար և ոչ քշողին։

Միևնոյն յարմարութիւններն ունի և նրանց սայլը, որ չը նայելով որ բոլորովին թիւրքական շէնք ունի, ծանր ու դանդաղ բան է, միապաղաղ անիւներով, բայց ինչ կասէք, որ նրանց տեղերի համար ամենայաւ սայլն է։ Թէև ծանր է գնում, բայց ամուր ու դիմացկուն բան է։ Ինչքան կուզէ ցեխոտ ու անհարթ լինի ճանապարհը, եթէ միայն քարքարոտ չէ, բան չի լինիլ սայլին, մանաւանդ եթէ գոմշաեզներ են լծուած։ Եւրօպական կատարելագործուած չորս անւաւոր սայլերի մասին չի կարելի խօսել, քանի որ դեռ ամբողջ Կովկասեան ափերում հաղորդակցութեան համար հազիւ միայն մի մեծ ճանապարհ կայ, այն է՝ ծովեզրեայ խճուղին, իսկ դէպի հայ գաղթաշէնները ամբողջ ափերում ոչ մի օրինաւոր, բացուած ճանապարհ չը կայ։

Երկրագործական ոչ մի մեքենայ ու կատարելագործուած սարք չունին նրանք հացաբոյսերի մշակութեան համար։ Բոլոր աշխատանքները կատարւում են սովորական նահապետական ձևով ու գործիքներով։ Մի քիչ աւելի յարմարութիւններ գտել են թութունի վերաբերութեամբ, չորացնելու համար հնարելով բաւական յարմար շէնքեր, որոնք իրանց այժմեան ձևով այս վերջին տարիներս են հնարուել ու շինուել։

## ՄԻ ՔԱՆԻ ԽՕՍՔ ԷԼ ՆՐԱՆՑ ԱՊՐՈՒՍՏԻ ՄԱՍԻՆ.

—

Համշէնցի հայերի ապրուստը շատ խեղճ է ու պարզ. Ոչ միայն երեխաները, այլ և մեծերից շատերը, աւելի կանայք՝ շատ անգամ օրերը բոբիկ ոտով են անցնում, մանաւանդ խորը ցեխերին Իսկ երեխաները 10 համարեա տարուայ մեծ մասը բոբիկ են մնում։ Քանելիս շատ խեղճ ու պարզ են հագնում. միայն տօն օրերին են զարդարւում։ Աւելի խեղճ ու աղքատիկ է նրանց սնունդը։ Ինչպէս վերև ասեցի, նրանց սովորական հացը սիմինդրի հացն է. ցորենի հացը աւելի պաս օրերին են ուտում, իսկ չունեցողը ողջ տարին համն էլ չի առնում։ Նրանց ամենասովորական կերակուրը թանն է. ուտիս օրերին նրանց գլխաւոր ուտելիքը դա է։ Պասին բանեցնում են աւելի «բօնջար», լոբիա, սոխ, պրաս, սխտոր, թթու, «բէքմէզ» (պտուղներից շինած մեղր), երբեմն էլ իսկական մեղր՝ սովորաբար ջրած. «բէքմէզն» էլ նոյնպէս. մէկ որ այդպէս լաւ կը բրդուի և մէկ էլ որ շատ կը դիմանայ։ Մածուն քիչ են ուտում. տեղ-տեղ՝ ուր կաթը քիչ է, գուցէ ամիսը մի անգամ. զուտ մածուն այնքան չեն ուտում, ինչքան մածնախառը թան։ Իւղ սովորաբար դրսից չեն գնում. եթէ կթուան ունենում են, ուտում են. եթէ ոչ ամիսներ բանջարեղէններով են անցկացնում։ Երբեմն միայն աւելցած իւղը ծախում են։ Իւղեղէն կերակուրներից գործ են ածում աւելի խմորեղէններ (ցորենի ալիւրից)։ Նրանց սովորական իւղալի կերակուրը «ճաշն» է (սիմինդրի ալիւրը ջրով եփած և վրան իւղ լցած)։ Միշտ է՝ օրը երեք անգամ ուտում են, բայց կերածը խեղճ ու անսնունդ բան է։ Ամենից շատ ուտում են թանը. միշտ որ մածուն ուտեն, եթէ կթուան էլ ունենան, իւղ չի մնալ. գնելն էլ ամենքին չի ձեռք տալ։ Դրսից գնածը սովորաբար աղը, բրինձը, նաւթն ու կտորեղէնն է լինում։ Բրնձից շինած ուտելիքը (հասարակ ու կաթով փլաւը), ձուաձեղի, «նշստայի» (ցորենի ալիւրը կաթով եփած), հաւի ու խմորեղէնի հետ՝ կազմում է նրանց ամենաճոխ սեղանը, որ տարին հազիւ մի քանի անգամ է լինում, ամենահանդիսաւոր օրերին և կամ պատուաւոր հիւրերի համար։

---

# ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ՈՒ ՀԱՐՍԱՆԻՔ

—

*Համշէնցի հայերը սովորաբար 16—18 տարեկան ժամանակից են սկսում ամուսնացնել իրանց տղաներին: Համարեա նոյն հասակից են սկսում մարդու տալ և իրանց աղջիկներին, այնպէս որ մօտաւորապէս տղի ու աղջկայ հասակը մէկ է լինում: Սովորաբար աւելի տղի համար են շտապում, քան աղջկան: Մէկ որ՝ աղջկան համար շտապելու կարիք չկայ. ով լինի՝ կը տանի. առանց այն էլ աղջիկ քիչ կայ, գոնէ մեզ մօտ, Կովկասեան ափերում. միւս կողմից՝ աղջիկը մարդու գնալով, տան բանողի մէկը կըպակսի. իսկ այդ գիւղացու համար ոչ ցանկալու բան է, ոչ շտապելու: Եթէ չեմ սխալւում, ամուսնութեան հարցի մէջ, գոնէ ծնողների համար, այդ բանելու տեսակէտը առաջին դերն է կատարում: Ահա դրա համար է, որ աղջկայ համար այնքան չեն շտապում: Սովորաբար՝ եթէ մօտ հասակակից տղայ ու աղջիկ են ունենում, առաջ աշխատում են տունը հարս բերել և ապա աղջկանը մարդու տալ: Աղջիկը եթէ մի քիչ աւելի էլ մնայ, ոչինչ նրան երբ լինի, կըտանեն: Համարձակ կարելի է ասել, թէ ամբողջ Կովկասեան ափերում տանը մնացած, պառաւած աղջիկներ բոլորովին չկան. նոյն խսի այրիներ չեն պատահում, հազուագիւտ են նրանց մէջ, ուր մնան թէ ջահիլ աղջիկները: Տղի բանը ուրիշ է. գիւղացին մէկ-մէկ տարիներ է համրում, թէ երբ պէտք է ժամանակը գայ, որ իւր տղին պսակի, տան ու արտի գործերը մի քիչ թեթևացնի: 16 տարեկան հասակն արդէն ժամանակ են համարում. 18 տարին հօ լաւ ժամանակ է, իսկ այնուհետև քանի գնայ, այնքան ժամանակը կանցնի: 23—25 տարեկան երիտասարդը նրանց մօտ ժամանակն անցած է համարւում և դժուար է հարս գտնում իւր համար: Այդ է պատճառը, որ*

նրանց մօտ շատ անգամ կինն աւելի է մեծ լինում, քան տղամարդը։ Վերջին տարիներս միայն համշէնցի գաղթականների մէջ նկատւում է դրան հակառակ մի երևոյթ. հարուստ ու այլիացած համշէնցիները հետզհետէ աշխատում են փողի ուժով՝ հակառակ հայրենաւանդ սովորութեան՝ ջահիլ աղջկերանց հետ պսակուիլ քաղաքցիների պէս, որ նրանց համար բոլորովին խորթ բան է։ Եթէ այս տեղերում չեն գտնում, կամ չեն տալիս, գնում են ուղղակի հայրենական ափերից վերցնում բերում իրանց հետ. ինչ խօսք որ աջ ու ձախ առատ-առատ կաշառքներ տալով գիւղի ազդեցիկ իշխաններին ու աղջկայ ազգականներին։

Աղջիկ առնելը համշէնցիների մօտ, շատ դժուարութիւնների հետ է կապուած. երկար բանակցութիւններ, սրան-նրան միջնորդներ ղրկել, բաւական փողեր պէտք է փչացնել, մինչև որ կաջողուի աղջկայ ծնողներից համաձայնութիւն ստանալը։ Այդպէս դժուար է եղել աղջիկ առնելը նոյն իսկ իրանց հայրենական ափերում, ուր, իրանց ասելով, այսպէս չէ, աղջիկ շատ է եղել, բայց էլի առանց կաշառքի ու նուէրների չէ անցել։ Նեղ ու անճար մնացած տղի տէրը, տեսնելով որ չը պիտի կարողանայ իր ուզած աղջկան տանել, իր կողմը մարդիկ է գտնում և հարսների կամ երիտասարդների միջոցով փորձում է փախցնել աղջկան ուղղակի իր տունը, առաջուց հարսների բերանով նախապատրաստելով աղջկայ տրամադրութիւնը տղի օգտին և նրա կամքը առնելով։ Աղջիկ փախցնելը նրանց մէջ շատ է պատահում. սովորական բան է նրանց համար։ Հէնց որ աղջիկը տեսնում է, որ իր ուզածին չեն տալու իրան, կամ տեսնում է, որ ծնողները դեռ միտք չունին շուտով իրան մարդու տալու, անմիջապէս մօտենում, գտնում է իրան ուզող տղերանց կողմնակից հարսներին ու աղջիկներին, և մէկ օր, սովորաբար եկեղեցի գնացած ժամանակ, նրանց հետ միասին փախչում է ուղղակի իրան ուզողների տունը, ուր նրան սիրով ընդունում են և մինչև չըպսակեն, ինչ էլ լինի, եթէ սրով ու Թրով էլ գան, դուրս չեն հանել։ Աղջիկը տղի տունը գնալուց յետոյ՝ ամեն բան վերջանում է. այնուհետև բանը մնում է

միայն տէրտէրին. սա էլ գալիս պսակում է և այդպիսով խնդիրը վերջանում է։ Երբեմն այդ փախցնելու պատճառով աչագին ընդհարումներ են լինում. իրար վրայ են գնում, զէնքերը մէջտեղն են բերում և, եթէ կարողանում են, զօռով յետ են տանում փախչող աղջկան. իսկ եթէ ոչ, հօ աղջիկը գնում է ու մնում։ Սովորաբար, վերջիվերջոյ, մի քանի ժամանակից յետոյ երկու կողմն էլ անցեալը մոռանում, հաշտւում են և իրար խնամութիւն անում։

Փախցնելու մի պատճառն էլ մասամբ աղջկայ տիրոջ կողմից պահանջուած դրամական վարձատրութիւնն է։ Ճիշտ է, այս սովորութեան ամենքը չեն հետևում, բայց հետևողներն էլ քիչ չեն։ Աւելի այդ սովորութիւնը կայ Տրապիզոնին մօտիկ գիւղերից եկած համշէնցիների մէջ. սովորաբար՝ նրանք առանց փողի աղջիկ չեն տալիս։ Այդ փողը տրւում է աղջկայ տիրոջը, իբրև ժամանակաւոր աւանդ, մինչև մի-երկու տարի բանեցնելու համար, այնքան որ տոկոս տրուելու չէ դրանից։ Բայց երբեմն էլ փողը ստացողը պարտք չի համարում վերադարձնելու, մանաւանդ որ այդ բանի համար երբէք գրաւոր պայմանաթուղթ չեն շինում։ Խօսկապէս՝ խնամախօսութեան ժամանակ այդ փողը տրւում է իբրև նուէր կամ աւելի ուղիղ՝ իբրև գին և ոչ իբրև փոխ։ Բայց հարսը տանելուց մի-երկու տարի անցնելուց յետոյ, տղի տէրը կամաց-կամաց յիշեցնում է խնամուն իր տալիքը և եթէ վերջինը մերժում է, խնդիրը պահանջի ու գիւղական դատարանին է հասնում, որ սովորաբար վճիռ է կայացնում նրա օգտին։

Աղջիկ ընտրելիս ի նկատի են առնում արենակցութեան ու խնամութեան աստիճանները, իրանք առաջուց համրում, յետոյ մէկի միջոցով տէրտէրին հաշուել են տալիս՝ կրհասնի թէ ոչ։ Սովորաբար այսքանը նկատել եմ, որ մեր այժմեան ընդունուած աստիճանների որոշումը նրանց միշտ շատ է երևում։ Իրանց ասելով, հայրենիքում այսքան խիստ չի եղել։ Կայ որ՝ տէրտէրից մերժում ստանալուն պէս, ուղղակի թողնում է միտքը դրածը և աշխատում ուրիշը գտնելու։ Բայց պատահում են և այնպիսիներ, որ մտքում դնում են միայն իրանց հաւանա-

ծին առնելու։ Դրա համար նրանք սկզբում փողի զօռ տալով, աշխատում են մի կերպ գործը գլուխ բերել, առատ-առատ բաժին հանելով ամենքին, ի հարկէ ամենից առաջ պսակող տէրտէրին։ Եթէ չի լինում, ուղղակի փախցնում են։ Փախածին պէտք է անպատճառ պսակել. այնպէս թողնելը աւելի «մեղք է». գոնէ այդպէս է ասում նրանց բարոյական աշխարհայեցողութիւնը և այդպէս էլ եղել է հայրենիքում։ Թոնրի վրայ պսակի սովորութիւնը նրանց մէջ բոլորովին չկայ. իսկ ապօրինի կենակցութեան դէպքերն էլ համարեա թէ չեն լինում։

Աղջիկ ընտրելու և ուզելու հոգացողութիւնը ամենից աւելի տղի հօր վրայ է թողնուած, ի հարկէ՝ մայրն էլ է խառնւում, բայց աւելի կողմնակի միջնորդներին ասող, ղրկողը հայրն է լինում։ Առաջուց տղի յօժարութիւնը չեն հարցնում, բայց երբ իմանում են, որ տղան յօժար չէ, թողնում են։ Կարելի է ասել, թէ առաջ աւելի աղջկայ յօժարութիւնն են հարցնում, քան տղինը. ինչպէս առանց տղի, նոյնպէս էլ առանց աղջկայ յօժարութեան՝ ոչ մի պսակ չի լինում. անպայման հարցնում են։ Ինչպէս տղի կողմից, նոյնպէս և աղջկայ կողմից սովորաբար բանակցողը հայրն է լինում. գլխաւորապէս ամենից առաջ նրա համաձայնութիւնն են աշխատում ստանալ։ Նա շուտով խօսք չի կտրում. գնում-գալիս են, նոր-նոր միջնորդներ են գցում, մինչև որ վերջապէս խօսք է տալիս։ Մինչև խօսք տալը նա ժամանակ է գտնում խորհրդակցելու իր կնոջ ու մօտիկ ազգականների հետ տալու կամ չտալու մասին։

Խօսքը կտրելուց յետոյ, օր են նշանակում (սովորաբար նոյն շաբթին). մի երեկոյ տղի հայրը կամ տէրը մի-երկու բարեկամի հետ պատրաստութիւնով գնում է հարսնացուի տունը, տանելով հետները մի ոչխար, գինի, մի քանի գաթայ և հետն էլ հինա՝ հարսնացուի ձեռքերին դնելու համար. այնտեղ գինիով ու «թօխլիով» պաշտօնապէս կնքում են իրանց խնամութիւնը։ Կերուխումին մի-երկու բարեկամ էլ աղջկայ կողմից է լինում։ Տարած հինան տան կանայք դնում են աղջկայ ձեռքերին, իսկ վերջը նրանց բերած ու պարպած «հաբիզէն» դար-

*սում են ընծայի համար պատրաստած աղջկայ կարած ու գործած շալիքներն ու նաշխուն ծաղկաւոր «եաղլուխները» և ղրկում խնամոնց տուն։*

*Այս նախապատրաստութիւնից միքանի օր յետոյ սկսում են հարսանիքը։ Պսակից ամիսներ ու տարիներ առաջ առանձին նշանդրէքի սովորութիւն համարեա բոլորովին չըկայ նրանց մէջ։ Միայն նոյն առաւօտը, որ իրիկուն որ պիտի պսակը կատարեն, փեսացուի տէրը իր բարեկամներից մէկի ձեռքով ղրկում է եկեղեցի կամ տէրտէրի տունը հարսի համար պատրաստած «հալաւներն» և մատնին՝ օրհնել տալու համար։ Հալաւի հետ ղրկում են մի կամ երկու խաշած հաւ, խմորեղէն, ձուաձեղ, մի կամ երկու «խաչ-քաթայ», որ սովորաբար տէրտէրի համար է լինում, և մի «օխա» (շտօֆ) գինի։ Հալաւ օրհնենքին ներկայ են լինում կամ անձամբ երկու կողմի խնամիները և կամ նրանց կողմից եկած բարեկամները։ Օրհնելուց յետոյ նստում, ուտում են բերած ուտելիքը և ապա օրհնուած հալաւը ղրկում նորահարսի տունը։ Նոյն իրիկունը կատարում են պսակը և հարսանիքն էլ վերջանում է։*

*Հարսանիքի հանդէսը պսակի առաջին իրիկուանից են սկսում։ Սկսելու առաջին նշանը հրացանի ձայնն է լինում։ Այդ օրը վաղ առաւօտից տղի տէրը երիտասարդներ ու երեխաներ է ղրկում գիւղի տները, և նրանցից ամեն մէկին բարակ մոմեր բաժնելով, հրաւիրում է նրանց հարսանիք։ Երբեմն պատուաւորներին հրաւիրելիս, երեկոյեան դէմ «դաւուլ-զուռնի» ձայնով են դէմ գնում։ Հրաւիրուածն էլ, եթէ ուզում է, մի բան է բաշխում նուագողներին, փող կամ «եաղլուխ» և կամ օղի հրամցնում և ապա «զուռնի» ձայնով գնում նրանց հետ փեսացուի տունը։ Բոլոր եկողներին ընդունում է տանտէրը միմի բաժակ գինի առաջարկելով։*

*Հարսը բերելուց առաջ «Թագուորին» զարդարում են նորահարսի ղրկած ծաղկաւոր «եաղլուխներով», նախապէս լողացնելով ու հագցնելով ամենալաւ շորերը։ Լողացնողն ու զարդարողը քաւորն է լինում։ Երեսն էլ նա է ածիլում. ինչքան է մազ չունենայ, պէտք է էլի ածիլին երեսին դիպչի։ «Եաղ-*

լուխներից» մի երկուսը կախում են նրա կողքերից, մէկն էլ ձեռքն են տալիս, որ բերանը ծածկած պահէ։ Այդպէս զարդարուած՝ «Ինքարի» առաջնորդութիւնով գալիս ներկայանում է հանդիսականներին, համբուրելով նրանցից ամեն մէկի ձեռքը և ապա իր քաւորի հետ անխօս կանգնում պատի՛ տակ, ուղղակի գետնին, կամ մի տախտակի վրայ, սովորաբար արևելեան կողմը։ Ոմանք էլ նստեցնում են, իսկ ունևորները «Թաքւորի» կանգնած կողմի պատը զարդարում են կարպետով։

«Թաքւորը» բերած ժամանակը այս երգն են երգում.

«Թաքւորի հա՛յն *) ա՛լ էրի ի՜ւ.
Խաչ էհօն ո՜ւ,
Խաչ խաղաղութեան,
Խաչի սուրբ խաչի տէրունի։
Դեօլվաթն Աստըձմէ»։

Այսպէս երգում են ամեն մէկի համար, ում մօտ որ տանում, ներկայացնում են. նա էլ մի քանի կոպէկ ընծայ է տալիս։ Կանանց համար էլ ջոկ երգում են. նրանք էլ մի-մի «եաղլուխ», կամ օրհնէնք ու աչք-լոյս են տալիս։ Երգով գովելը հին սովորութիւն է. հիմա շատերը չեն երգում։ Դրանից յետոյ նստում՝ հաց են ուտում։

Բոլորը մի սեղանի շուջը չեն բոլորւում, մի քանի խմբերի են բաժանւում. դրանցից ամեն մէկի մէջտեղը դնում են Թիւրքական ձևի կլոր սեղանը, կերակուրները վրան դարսած։ Կանանց համար էլ ջոկ են տալիս։ Հարսանիքի սովորական կերակուրները սրանք են. «բլղուր», փլաւ (իւղով կամ կաթով), «բարակ հաց» (բարակ բացուած, տապակած խմորեղէն), մսեղէն, մածուն, թան և վերջապէս մի քանի հատ հաւ, մեղր ու կարագ՝ տէրտէրի ու պատուաւոր հիւրերի համար։ Սովորաբար հարսնոց կերուխումներին ամենից աւելի պահանջներն անողներն ու «նազութուզ» ծախողները նորահարսի հետ եկած «հայսնախպերներն» են լինում. նրանց ամեն ուզած ուտելիքը պէտք է մօտ բերեն, թէ չէ կըծաղրեն, իսկ երբեմն էլ վէճ ու կռիւ կըսարքեն տանեցոց հետ։

*) հայրն (կամ քեռին)։

Կերուխումը վերջացնելուց յետոյ, եթէ եղանակը լաւ է լինում, դուրսը մի հարթ տեղ են ընտրում, «դուռնան» ածել են տալիս և «դլիպնուշ» (գոտեմարտ) են սարքում:

Հարսանիքն սկսած իրիկունից «դաւուլ-զուռնան» անբաժան է լինում նրանց հանդէսից: Սովորաբար զուռնաչին մէկն է լինում: Կայ «զուռնի» մի տեսակն էլ, որ աւելի մեծ ձայն է հանում և աւելի սիրում են. նրան «բորու» են ասում: Երբեմն «զուռնի» տեղ «քամանչա» ու «տիկ» են ածում. այդպէս են անում աւելի Տրապիզոնի մօտերքից եկողները: Հարսանիքի ժամանակ երգած բոլոր խաղերն ու նուագները և գոտեմարտը ասւում ու կատարւում են թիւրքերէն խօսքով ու եղանակով: Խմբովին երգ կամ խաղ բոլորովին չեն ասում: Ասած կտորներն էլ սովորաբար՝ Ղարիբից, Քեօռօղլուց կամ Շահ-Իսմայիլից են լինում: Գոտեմարտն էլ թիւրքական ձևով ու ծէսով են կատարում՝ մերկ, առանց շապքի, մինակ վարտիքը կամ «շալուարը» հագին: Առաջ միքանի րոպէ իրար բարևներ ու «թէմէնաներ» են տալիս, պտոյտներ ու փորձեր են անում իրարից բռնելու, մինչև որ երկար իրար քաշքշելուց յետոյ, մէկին աջողւում է միւսին մէջքի վրայ գցել. դա է համարւում յաղթութեան պայմանը: Գցելուց յետոյ՝ յաղթողն իսկոյն վեր է բարձրացնում իր ախոյեանին և համբուրւում նրա հետ: Ապա երկուսը միասին, ձեռքները իրար ուսներին դրած, գալիս են ու մի ոտով ծունկ չոքում «աղաների» ու «իշխանների» առաջ և «բաշխիշ» պահանջում: Ստացած փողը կիսում են իրար մէջ, իսկ յաղթողը բացի դրանից, ստանում է նաև մրցանակ դրուած «եաղլուխը»:

Գոտեմարտը վերջացնելուց յետոյ, հարսնևոր բազմութիւնը ձիերով ու հետևակ, նուագողներին առջևը գցած, գնում են նորահարսի տունը, ամբողջ ճանապարհին սարերն ու ձորերը դղրդեցնելով հրացանի ու ռէվօլվէրի թնդիւններով: Մի քիչ ժամանակ էլ այնտեղ են անցկացնում, ուտում, խմում, զուարճանում, գոտեմարտ են սարքում, մինչև որ նորահարսին զարդարում, դուրս են բերում, դնում ձիու վրայ: Այդ ժամանակ սկեսրայրը կամ տղի տէրը նրա վրայ միքանի սև փող է շաղ

տալիս. մօտիկ եղողները խլխլելով հաւաքւում են գետնից: Իսկ իրան վզից էլ հարսի տնից բերուած մի երկայն «ծաղլուխ» են կապում: Դրանից յետոյ բազմութիւնն ուղղւում է կամ դէպի եկեղեցին և կամ «թաքւորի» տունը, նայելով թէ որտեղ է լինելու պսակը: Սովորաբար պսակը տանն են կատարում. իսկ երբեմն լաւ եղանակին, մանաւանդ երբ միևնոյն օրը ուրիշ պսակուողներ էլ են լինում, բոլորին միասին բերում, լցնում են եկեղեցին. զոյգերը իրար մօտ կանգնեցնում և մէկ անգամից բոլորին պսակում: Տանն են պսակում, թէ եկեղեցում՝— ոչ մի դէպքում «թաքւորին» նորահարսի տունը չեն տանում. նրան մենակ թողնում են տանը՝ իր քաւորի հետ, մինչև հարսը կբերեն: Եկեղեցում պսակուած ժամանակն էլ «թաքւորը» մենմենակ իր քաւորի հետ է գնում եկեղեցի. այնտեղ սպասում մինչև նորահարսի գալը:

Վերջապէս նորահարսն առնում, գալիս են եկեղեցի: Առջևից ու յետևից ձիով կամ ոտով նրան ուղեկցում են իր քոյրերն ու եղբայրները կամ նրանց փոխարէն, մօտիկ բարեկամ հարսներ ու երիտասարդներ—«հայսնքոյրներ» ու «հայսնախպարներ». իսկ նրա ձիու կողքերից ու առջևից մարդիկ են գնում՝ հարսին ու նրա ձիու սանձը բռնելու, որ չըլինի թէ վայր ընկնի, որովհետև գլխին երկայն քող է ունենում գցած («բլուրլուղ»)։ Եկեղեցում քաւորը ձեռքին ոչինչ չի բռնում. այնքան որ մօտը կանգնում է և կատարում է քահանայի ասածները: Թուրը բռնելու և կամ գլխին թագ դնելու սովորութիւնը բոլորովին չըկայ. միայն աբրէշումէ կարմիր ոլորած թելից նարօտ են կապում երկուսի գլխներին, որ կամ անմիջապէս պսակից յետոյ և կամ յաջորդ օրը, չորեքշաբթի կամ ուրբաթ չ՚եկած վերացնում են: Խորհուրդը կատարելուց յետոյ, առաջուան հանդէսով, նուագով ու հրացանների ձայնով շտապում են դէպի «թաքւորի» տունը: Հասնում են տուն. դեռ հարսին ձիուց վայր չառած, դրսից կանչում են. «Ի՛նչ բաշխիշ տաք պիտի հայսին»: Բերում են մի պղնձէ աման. հարսի ոտը ասպանդակից միքիչ վեր վերցնում ու դնում են ամանը նրա ոտի տակին: Իսկոյն հարսնեղբայրները մէջքի դանա-

կով 3 տեղից մինչև խաղում են ամանը. իսկ իրանց էլ մի-մի «ճաղլու խ» ընծայ են տալիս։ Մտնում են ներս. հարսին կանգնեցնում են դռան յետևը, «Թաքուրին» էլ մօտը։ Տունը մտնողի ձեռքը հարսը պիտի համբուրէ։ Նորից շարունակում են առաջի իրիկուան հանդէսը. ուտում, խմում են, խաղ են կանչում, պարում են և զանազան հանաքներ ու խաղեր են սարքում մինչև լուսանալը, երբ արդէն ամենքը ցրւում, գնում են իրանց բանին ու գործին։ Նրանց ցրուած օրը աշխատում են դրսից, հարևաններից փոխ բերած ամանները, դդալներն ու սարքը տէրերին վերադարձնել. ինչ որ մնում է, չեն կարողանում տալ, պահում են մինչև 3 օր. միւս օրը չեն տալիս, որ չըլինի թէ վնասի հանդպեն, հարսը տնից բաժնուի։ Հարսը մի երեք օրի չափ կրում է գլխի վրայի «բուրւ-ղը». մի շաբաթի չափ էլ ցերեկները դռան յետևը կանգնած՝ համբուրում է ներս ու դուրս մտնողի ձեռքը. մի երեք շաբաթի չափ, ամեն իրիկուն լուանում է բոլոր տնեցոց ոտները, իսկ մինչև միքանի ամիս անցնելը, ուրիշների մօտ չըխօսքանութիւն է անում, խօսքի չի խառնւում, իր համար սուս ու անխօս կանգնում է պատի տակին։ Ոտները առաջին անգամ լուացած ժամանակը, տնեցիք փող են բաշխում հարսին։

Հարսանիքից մի շաբաթ անցած, «մառէհուր» են գալիս. այն է՝ նորահարսի ծնողները գալիս են փեսի տունը, հետները բերելով տանը մնացած հարսի մանրունք բաները, նրա հին զգեստները, «ռօկը», դանակը, մկրատը և այլն։ Այդ իրիկուն էլ փեսի տանը խնջոյք-ուրախութիւն են սարքում։ Նորահարսը բոլոր եկողների ոտները լուանում է և նրանցից միքանի կոպէկ ընծայ ստանում։ Դրանից մի-երկու շաբաթ յետոյ էլ սկեսրայրը կամ տան մեծը՝ հարսին տանում է մարանց հիւր։ Այն իրիկուն էլ այնտեղ են ուրախութիւն անում և միւս օրը նորից դառնում իրանց տեղը։

Սովորաբար հարսանիքին աղջկայ կողմից շատ քիչ ծախս է լինում. համարեա ոչինչ։ Նրանք աղջկայ համար ոչ միայն օժիտ ու փող չեն տալիս, այլ դեռ իրանք են ստանում փեսի կողմից։ Ծախսերի ամենամեծ մասը պսակն աջողցնելու համար

աշչկայ հօր կամ տիրոջն ու նրա բարեկամներին տուած կաշառքներն են լինում, որ երբեմն երեք հարիւր րուբլու է հասնում։ Այնուհետեւ աղագին փող է նստում նորահարսի համար պսակի հագուստ կարել տալը։ Ոտնամանից, գուլպայից, գլխի ֆէսից, շապքից ու վարտիքից սկսած մինչեւ վրայի հագնելիքն ու զարդերը—բոլորը տղի տիրոջ վրայ է, նա պէտք է առնէ ու կարել տայ. բոլորը, բացի շապքից, աբրէշում, ատլաս, դումաշ ու չուխա պէտք է լինի։ Ամենաքիչը 50—60 րուբլի միայն դրա վրայ է գնում, եթէ զարդերն էլ չլինին։ Սրանք մի կողմից. հարսանիքին նորահարսի տանը պատրաստուած բոլոր ուտելիք-խմելիքն փեսի կողմից է ղրկւում. մինչեւ չ'ղրկեն, չեն պատրաստիլ։ Խօսքը կտրած ժամանակն էլ «Թօխլին» ու գինին եւ քահանային ու աթոռահասը՝ նա է տալիս։ Եթէ նոյն իսկ ընդունենք, որ աղջիկ ուզելու ժամանակ՝ առանց դժուարութիւնների գործը շուտով գլուխ է գալիս, ոչ ոքի նուէր ու կաշառք չի տրւում, որ շատ դժուար կըպատահի, էլի միմիայն ուտել-խմելու, հագուստի ու քահանայի ծախս կընստի միջակ հաշւով ամենաքիչը 150-200 րուբլի։ Ահա գլխաւոր ծախսերի հաշիւը մօտաւորապէս.

| | | |
|---|---|---|
| 1 ջուալ ցորենի սպիտակ ալիւր | . | 8 րուբլի. |
| 1 ջուալ բրինձ | . . . . | 10 ,, |
| 1 երինջ, աչառ կամ կով | . . | 20 ,, |
| 10 օխա իւղ | . . . . | 10 ,, |
| Գինի եւ օղի | . . . . | 25 ,, |
| Խօսքը կտրած ժամանակ՝ | | |
| «Թօխլի» եւ գինու ծախս | . . | 10 ,, |
| 1 ձեռք շոր իր համար | . . . | 15 ,, |
| Նորահարսին հալաւ | . . . | 60 ,, |
| Քահանային եւ աթոռահաս | . . | 15 ,, |

Գումարն է՝ 173 րուբլի։

---

# ՀԱՄՇԷՆՑԻ ՀԱՅԵՐ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ *)։

Ե. ՄՕՒՐԱԴԵԱՆՑԻ.

### ՏՂԱԲԵՐՔ և ԿՆՈՒՆՔ։

—

*Ամլութիւնը, ինչպէս և ամեն տեղ հայ գիւղերում, Համշէնցի հայերի մօտ էլ նախատինք է համարւում և երբեմն դժգոհութիւնների ու ապօրէն կնապահութեան պատճառ լինում։ Երեխան՝ բացի այն որ տան «ծաղիկն» և ուրախութիւն է, տան յոյսն ու ապագան նրա մէջն են տեսնում։ Անորդի գիւղացու բանը շատ դժուար է. մենակ ո՞ր մէկին հասնի։ Տուն է, արտ է, «ածուք» է, մալ է, ջրաղաց հատիկ պիտի տանել, անտառից փայտ պիտի բերել, քաղաք պիտի գնալ ու էլ ինչ գիտեմ՝ քանի-քանի տեղ պիտի վազէ ու հասնի գիւղացին, թէ չէ բանը կը մնայ, ինքն էլ հետը. ինչքան էլ շատուր լինի, տան գործը չի պակսիլ։ Այդ է պատճառը, որ գիւղացին սաստիկ մեծ ցանկութիւն ունի որդի ունենալու, որ մէկը իրան ժառանգ լինի, թև ու թիկունք տայ, նեղ օրին մենակ ու անօգնական չը մնայ։ Շատ որդիք ունենալը գիւղացու պարծանքն է կազմում, տան հարստութիւնը, նրա բարգաւաճումը, և հակառակը՝ չունեցողը կորած ու անբախտ է համարւում։*

*Սովորաբար ամլութիւնից ազատուելու համար, ուրիշ տեղերի պէս, սրբերի և ուխտագնացութեան չեն դիմում։ Առաջ տնային միջոցներն ու խորհուրդներն են գործ դնում, աշխատելով դեղերով մի ճար անել։ Երբ դրանք չեն օգնում, դիմում*

---

*) Տե՛ս Ազգ. Հանդէս գիրք Դ.

են բժիշկներին, երբեմն հեռու տեղեր գնալով և մեծամեծ ծախսեր անելով։ Երբ բժիշկներից էլ յոյսը կտրում են և ճար չեն գտնում, մօլլաներին ու իրանց «տէրացուներին» «գիր» ու «նուսխա» են անել տալիս, և կամ էլի իրանց լսած ու իմացած տնային կախարդական միջոցներն են գործ դնում։ Աւելի այս են անում. մի մօր առջնեկին 40 ջրաղացի տակից ջուր են ժողովել տալիս և նրա հայրենական մնացած օջախի շղթայի բոլոր ծակերից անցկացնել տալիս։ Այս ամուլ կնոջը նստեցնում են գետնին, երթիկի տակ, կշտին կանգնեցնում մի ուրիշ կին, որ մաղ բռնէ նրա գլխին։ Առջնեկը վեր է ելնում կտուրը և այնտեղից, երթիկի միջով ջուր լցնում մաղի մէջ, իսկ նրա միջից էլ ջուրը թափւում է ամուլ կնոջ մարմնի վրայ։ Այդպէս կրկնում են 3 անգամ։ Վերջապէս, երբ ոչ մի դեղ օգուտ չի անում, ճարը կտրած՝ համբերում են, համարելով այդ իրանց ճակատի գիրը և մեղքերի պատիժը։

Համշէնցի հայ կնոջ յղութեան շրջանը անցնում է շատ պարզ. մինչև վերջին րոպէն նա ոտի վրայ է։ Կերակրի, աշխատանքի ու կենցաղավարութեան մէջ առանձին ոչ մի փոփոխութիւն չի լինում. ոչ ուրիշ յարմարեցրած թուլթոլիկ շորեր են հագնում, ոչ առանձին պահանջներ ու նազեր բանեցնում, ոչ էլ աշխատանքից խուսափում։ Շատերը մինչև ծնընդեան րոպէն անխօս ու անտրտունջ կատարում են իրանց սովորական ծանր աշխատանքները, մինչև որ վրայ է հասնում յանկարծ երկունքի րոպէն։

Երկունքի ժամանակ յղի կնոջը առանձնացնում են և տան ու հարևան կանայք տատմէրի հետ միասին շրջապատում են նրան։ Երբ հասնում է ծնելու ժամը, ծննդկանին չոքեցնում են գետնին, մէկը յետևի կողմից իր կրծքին է յենում նրան, իսկ տատմէրը առջևի կողմից սպասում երեխայի գալուն։ Եթէ ծնունդը դժուար է լինում, կամ ընկերքը ուշ է գալիս, յետևը նստողը աւելի երկու ծայրերից բռնելով, սեղմում է նրանով ծննդկանի արգանդը։ Ծանր րոպէներին, երբ ծննդկանը ուշագնաց է լինում, հրացան են արձակում, կամ տէրացուի յետև

վագում «կաշտամ» են անել տալիս, սատանաներին ու չարերին հալածելու համար։

Նորածնին ձեռքի վրայ են վերցնում, լողացնում, բարուրում և պառկեցնում ծննդկանի կողքին։ Նորածնի վրայ աղ ցանելու սովորութիւնը բոլորովին չըկայ նրանց մօտ։ Ծննդկանին լուանալուց ու տեղաւորելուց յետոյ, տատմէրի և օգնող կանանց համար սեղան են դնում, հաց են տալիս։

Ինչպէս շատ տեղ, նոյնպէս և սրանց մօտ, աղջիկ նորածինը սովորական դժգոհութեան ու տրտմութեան պատճառ է լինում։ «Էհ, քած մըն է», ասում են նրանք այսպիսի դէպքերում, ուզենալով արտայայտել իրանց դժգոհութիւնն ու արհամարանքը այնքան երկար, լարուած հետաքրքրութիւնով սպասելուց յետոյ։

Իսկապէս տնտեսական կէտից նայելով հարցի վրայ, ոչ մի նշանակութիւն պիտի չունենար նրանց համար սեռը, քանի որ թէ աղջիկ և թէ տղան մինչև տնից բաժնուելը, հաւասարապէս օգնում են տան բոլոր գործերին։ Ինչպէս երևում է, աւանդական նախապաշարմունքն ու սովորական, տարածուած, անմիտ կարծիքն է կանանց սեռի մասին—նրանց այդ եզրակացութեան բերել։

Լոյսը առնելուն պէս, ազգականներն ու հարևանները շտապում են ծննդկանին տեսութեան, բերելով իրանց հետ ձուածեղ, կաթնապուր ևայլն։

Ուրիշ տեղերի պէս՝ սրանք ծննդկանին անսուրբ չեն համարում և ոչ էլ նրա ամաններն են զատում։ Տունը փարատելու համար քահանային հրաւիրելու սովորութիւնն չունեին։

Կնունքը կատարւում է ծննդից մի քանի օր յետոյ, սովորաբար նոյն շաբթին. ուշացնել չեն սիրում։ Կնքելուց առաջ կնքահօրը իմաց են տալիս, որ գայ քահանայի հետ խօսի ու երեխին կնքէ։ Կնքում են կամ եկեղեցում, կամ իրանց տանը և կամ քահանայի տանն են գնում։ Եկեղեցում երբեմն մի քանի հատին մէկ անգամից է կնքում քահանան։ Սովորաբար երեխին մօտի հարևան կանայքն են եկեղեցի տանում, թէ որ տատմէրը հեռու է լինում բնակուելիս։ Փողով տատմէրութիւն

նրանց մօտ բոլորովին չկայ. նա իր պաշտօնը կատարում է վարձքի համար, որովհետև «խաիր» է։ Կնունքի ժամանակ միայն մի քանի կօպէկ (10—20) բաշխում է նրան կնքահայրը, եթէ այն էլ մտքին մնայ ու չը մոռանայ, պարտաւորական չէ։ Ուհասարակ անունի ընտրութիւնը քահանային են թողնում, թէ որ իրանք որոշած չեն լինում։

Աղջկերանց տեղական անուններից, բացի սովորականներից, ամենից աւելի տարածուած են նրանց մօտ. Լուսիկ, Պայծառ, Զալթար, Օսկէկ, Մանիկ, Նազիկ, Համաս, Միմզար (Նոյեմզար), Զօնակ (Ջանազան), Սաչին (Սաթինիկ), Սարեր. իսկ տղերանց տեղական անուններից՝ Խաչիկ, Երթին, Գալուստ, Ալէգ, Օհօն, Զօրիկ, Զատիկ, Հօմբիկ (Համբարձում) ևայլն։

Երեխին եկեղեցի կնքելու տարած ժամանակ սովորաբար հետն էլ ուտելիքն են ղրկում. մածուն, փլաւ, հասարակ կամ կաթով, խմորեղէն ձուածեղ, երբեմն էլ եփած հաւ։ Կնունքի պատճառով տանը յատուկ հրաւէրք սարքելը շատ քիչ կը պատահի գիւղում. այդ էլ հարուստներն են անում։

Կնքահայրը ոչ երեխին, ոչ էլ ծննդկանին ոչինչ չի տալիս։ Երեխին խաչ տանելու սովորութիւն էլ չունեին։ Կնքահայրը մենակ քահանայի փողն է տալիս, սովորաբար մի բուքլի. մէկ էլ մի քանի կօպէկ դայեակին. ուրիշ ոչինչ։ Իրան էլ կնքելուց յետոյ իրանց ձեռագործ «ճաղլուխներից» մի հատ ընծայ են տալիս. իսկ այնուհետև տարուայ ընթացքում սանամայրը նրա համար նոյն կտորից շապիկ է կարում, ինքն էլ իր սանիկին շոր կամ մի ուրիշ բան է նուիրում։ Ինչպէս երևում է, կնքահայր լինելը ցանկալի ու նախանձելի բան է համարւում. ամենքն են ուզում սանիկ ունենալ։ Դա հաւշէնցիների կարծիքով մեծ վարձք է։ Մարդ անպատճառ գոնէ մի սանիկ պիտի ունենայ կնքած։ Նրանց կարծիքով՝ ով որ իր կեանքում բոլորովին երեխայ չի կնքել, միւս կեանքում նրա գրկին մի շուն կը դնեն։

Ծննդկանը երկար չի պառկում. հազիւ 3—4 օր, եթէ միայն հիւանդ չէ։ Դեռ մի շաբաթ չանցած և բոլորովին չը

*կազդուրուած, սկսում է իր առաջուան չարքաշ ու ծանր աշխատանքը։*

*Երեխային խնամք տանելն ու մեծացնելը ամբողջապէս մօր վրայ է թողնուած։ Նա է ծիծ տալիս, օրօրում, պառկեցնում, ուտեցնում, հագցնում մինչև մեծանալը։ Սովորաբար մինչև 2—3 տարի ծիծ են տալիս, եթէ միայն տարուայ գլխին ուրիշը նրա տեղը չը բռնէ։ Կաթ չունեցած ժամանակ, կովի կաթ են տալիս. ուղղակի այնպէս, առանց ջրի ու շաքարի խառնուրդի։ Ծծից կտրելու ժամանակ ուրիշի ձեռքն են տալիս, ման բերում, մօրից հեռու պահում, հարևանների տները ղրկում, որ մօրը մոռհան անէ։*

*Ում որ երեխայ չի մնում, պէտք է որ երեխային տանէ անցկացնէ մի այնպիսի կնոջ շապկից, որի որդիներից ոչ մինը չէ մեռել. վերջը նրան մի քիչ փող տալով, պէտք է երեխին յետ գնէ. դրանից յետոյ երեխան շուտ չի մեռնիլ։*

*Մինչև ծծից կտրելը և նրանից էլ դեռ շատ յետոյ, երեխին պառկեցնում են օրօրոցում, առաջին օրերից սովորեցնելով երեխին դիմանալ ու համբերել ամուր ու ձիգ կապանքներին։ Օրօրոցից կախում են «չիլուններ» երեխին չար աչքից ազատ պահելու համար։ Նոյնպէս այդ նպատակով ապակէ «չիլուն» են կապում երեխանց ձեռքերին ու ոտներին. սովորաբար տղաներին՝ աջ ոտին, իսկ աղջկերանց՝ աջ ձեռքին։ Թէև այս էլ են ասում, որ մանչ տղի ձեռքին եթէ «չիլուն» կապեն, ձիու բախտ չի ունենալ։*

*Որպէս զի երեխան շուտով ոտքի կանգնի, երկու քառանկիւնի տախտակ են վերցնում. մէկի մէջտեղից մեծ ծակ են շինում և ամրացնում տակի տախտակի վրայ 3—4 ոտներով, երեխայի հասակի համեմատ, այնպէս որ այնքան բարձր չըլինի, որ երեխան միջից ընկնի, ոչ էլ այնքան ցած, որ վրայից դուրս թռչի։ Տակի տախտակը, ի հարկէ, պէտք է հաստ ու ծանր լինի, որ չըլինի թէ երեխի հետ միասին շրջի։ Դրան ասում են «կօյնիչ» (կանգնիչ)։*

*Նոր ոտի կանգնող երեխին շուտ ման գալ սովրեցնելու համար այսպէս են անում. երեխին կանգնեցնում են տան շէմքի*

վրայ, երկու ոտը իրար կապում «խաչքը-մէջքը». մէկը բռնում է երեխին որ չընկնի, իսկ նոյն կամ ուրիշի տնից անդրանիկ տղան կտրում է մէջտեղից։ Կտրած ժամանակ բռնողը հարցնում է. «ի՞նչ կտրես կու».—կտրողն ասում է. «տղուն քեօստողը (բըխով) կտրիմ կու»։ Այսպէս կրկնում են 3 անգամ տան բոլոր շէմքերի վրայ, և ապա երեխի ձեռքից բռնած՝ ման են բերում «Գօղէ, գօղէ» ասելով։ Էլի տանում են երեխին հետոները աղբիւրը կամ գետը, կանգնեցնում «աւզօնի» ջրու անկիւնում, առաջուան պէս ոտները կապում և կապը մէջտեղից կտրում։ Այդ կապին «օտնառ» են ասում։

Ման չեկող փոքր երեխին շալվ(ի)քը ոտներից են հագցնում և ոչ գլխից, որ շուտ մեծանայ և բօյ քաշէ։

Շուտ մանգալու համար մի գորտ են բռնում, գցում ամանը և երեխին նրա վրայ լողացնում. յետոյ ջուրն ու գորտը դուրս թափում և 3 անգամ այս խօսքերն ասում. «Գեօրտ (գորտ). տղուն գալը առ, գնա կոյսւէ» (կորիր)։

Փոքր երեխին քուն դրած ժամանակ, եթէ մայրը մօտը մնալու չէ, աւելը հետը ցից են անում, իբրև երեխի ընկեր, որ չըլինի թէ քնի մէջ վախենայ։ Նոյնպէս՝ վախից ազատ պահելու համար երեխի օրօրոցի յետեւը «ջաղուի թաթ» ու «բուրձ» (վրձին) են կախում, գլխի տակ էլ Կիպրիանոս դնում։

Դեռ չը խօսող փոքր երեխին եթէ մէս ուտեցնեն, լեզուն ուշ կը հանէ, իսկ գալ, հօ բոլորովին չը պէտք է տալ, թէ չէ և՛ ուշ կը խօսի, և էլ թոթով կը լինի։

Փոքր երեխի եղունգները չեն կտրում, ասում են, թէ հրեշտակն է կտրում։

Մայր որ երեկոյեան դուռը գայ, բերանին կը նայեն. թէ որ խոտ ունենայ, կառնեն շատ լացող մանկան օրօրոցի գլխի տակը կը դնեն, որ լացը պակսեցնէ։

Ասում են էլի՝ երեխի վրայ սեւ գցելը լաւ չէ. երեխան չի մեծանայ։

Երբ նորածին կամ փոքր երեխան առանց պատճառի յետ է գնում, հետզհետէ նիհարում, նուաղում է, ասում են, թէ «կեօխ ըղած է»։ «Կեօխը» միայն փոքրերին չի բռնում, այլ

և մեծերին, նոյն իսկ կովերին, բայց աւելի պատահում է նորածիններին ու փոքրերին, նոյնպէս և ծնած կովերին, և այդ լինում է շատ պատճառներից։

Այսպէս՝ եթէ երկու մարդ կամ կին «քառասունաց» երեխայ ունենան, մէկը միւսի տունը գնացած ժամանակը առանց իմաց տալու ուղղակի ներս չի մտնել, թէ չէ գնացած տան երեխան «կեօխ» կը բռնուի։ Դրա համար գնացողը դրսից ձայն է տալիս, թէ վեր կացէք, գալիս եմ, երեխին գրկեցէք. այդ ասելուց յետոյ միայն կարող է ներս մտնել։ Մայրը երեխին գրկած կանգնած սպասում է, մտնողի գիրկն է դնում երեխին և էլի յետ առնում։ Մտնողը գետնին պէտք է նստի. նրա նստելուց յետոյ միայն երեխի մայրը կարող է նստել։ Եթէ այդպէս չանեն, երեխան «կեօխ» կըլինի։

Թէ որ «կեօխի» պատճառը միւս երեխի հայրն է եղել, գնում են նրա պառկած կողմի պատից մի փայտի կտոր հանում, օրինակ մի «ծեփրկալ» (ծակը ծեփելու փայտ), կամ նըրա պառկած կողմի կտուրից ծածքի մի տախտակ գողանում, բերում են տուն, իրանց երեխին վրան լողացնում։ Յետոյ այդ փայտի կտորը կամ տախտակը դցում են տնից հեռու, մի անյայտ տեղ, այնպէս որ չը գտնեն ու իր առաջուան տեղը չը դնեն, թէ չէ «կեօխը» նրանց երեխին կանցնի։

Թէ որ «կեօխը» ուրիշ տան «քառասունաց» կնոջից է եղել, դրա համար «կեօխ» բռնուածի մայրը լուր է դրկում նըրան, և երկուսը միասին երեխանցով, հետները մի-մի կին առած՝ գնում են առուակի ափը, իրար դէմուդէմ կանգնում՝ և ուղեկից կանանց միջոցով փոխադարձաբար երեխաներին իրար գիրկը դնում, ծիծ ուտեցնում և էլի նրանց միջոցով իրանց երեխաներին յետ ընդունում ու տուն գնում, մէկը իր ուղեկցի հետ մի կողմը, միւսը ուրիշ կողմը, առանց յետ նայելու։

«Կեօխը» կարող է լինել և մսից. այսպէս՝ եթէ մի տեղ միս մորթեն ու բերեն այն տունը, ուր փոքր երեխայ կայ 40 օրեկան չեղած, բերողը պէտք է դրսից կանչի ու իմաց տայ, թէ չէ երեխան «կեօխ» կը լինի։ Դրանից լաւացնելու համար

պէտք է անկշիռ միս առնել և «կեօխ» եղած երեխին նրա վրայ լողացնել։

Երեխին «կեօխ» բռնած ժամանակ այսպէս էլ են անում. վերցնում են նրա հօր «շալվարը» տան մէջտեղն են գցում, տունը վրան աւելում, ժողված «կախը» «դէգ», աղբ) տանում լցնում են մի տարեկան «պատրուսի» (պատուաստած ծառ) արմատի մօտ և երեխին 3 առաւօտ տանում նրա մօտ, ոտով կոխկրտեցնում։

Մալն էլ կարող է «կեօխ» բռնուել։ Թէ որ մէկն ունենայ նործին կով և մի «քառսունաց» ծննդկան գայ նրա տունը, կովը «կեօխ չը լինելու համար՝ եկող կինը հացի մի կտոր «քբրիջը» (կեղևը) բերանն է առնում, ծամում. և ապա դը-նում նործին կովի բերանը, նրան ուտեցնում։

Նոյնպէս նործին կով (կամ գոմէշ) ունեցած ժամանակը, միս չեն բերել տուն, մինչև քառսունքը լցուի, թէ չէ կովը «կեօխ» կը բռնուի։

Գիւղը նոր «քօչ» (գաղթական ընտանիք) եկած ժամա-նակ կովը գոմից դուրս են հանում և յետոյ ներս բերում, որ «կեօխ» չը լինի։

Նործին կովի տէրը մինչև 40 օր իր տնից կրակ չը պի-տի տայ ուրիշի. լաւ չէ. կովը կաթը կը քչացնէ կամ կը հի-ւանդանայ։ Եթէ անպատճառ պիտի տայ, գոնէ պէտք է ձեռ-քով չը տայ. կրակը պէտք է դնի շէմքի մօտ, եկողը պէտք է ինքը վերցնի տանի։

Գոմում կովը ծնած ժամանակ վրան ալիւր են ցանում, խունկ ծխում ու մի քիչ ժամանակ դուրս հանում, յետոյ նո-րից ներս տանում։

Ասում են, թէ ծակ «չաչի» (սիմինդրի հասկի պատիճն) մէջ չը պէտք է փչել, թէ չէ մալը չի լղանայ։

Էլի ասում են, եթէ մանածի *) խուսը կովին տան, չի լղանալ։

*) Մանածը („մօնածը“) ջրում խաշում են. ջրին մի քիչ ալիւր լցնում, որ թելն ամրանայ. թելը ջրից հանելուց յետոյ, ջուրը պէտք է թափել. դը-րան են ասում ,,մօնածի խուս''։

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔԸ

Ընտանիքի մէջ ամենից յարգուածը հայրն է։ Քանի որ չափահաս որդիք չունի, նրա ձեռքին է ընտանիքի ղեկը և նրա անմիջական իրաւասութեան տակ է գտնւում ընտանիքի ներքին ու արտաքին կառավարութիւնը։ Ծերանալով հետզհետէ այդ իշխանութիւնը քանի գնում թուլանում է և կամաց կամաց որդուն անցնում։ Նոյն կերպ են վարւում և մօր հետ. քանի որ երեխաները փոքր են, նրան ամենքը լսում են, իսկ որդոց չափահաս դառնալուց յետոյ, նրա յարգանքն էլ հետզհետէ պակասում է. նրա խօսքին մտիկ են տալիս միայն հարսներն ու տան փոքրերը։

Տան մեծի առաջին ու գլխաւոր բանը աշխատանքը կարգադրելն է տնեցոց մէջ. նա է ամեն օր նշանակում միւս օրուայ գործը, որոշելով ամեն մէկի աշխատանքն ու չափը, իւրաքանչիւրի ոյժի ու խելքի համեմատ։

Գիւղի երկրագործական աշխատանքը կապում է ընտանիքի անդամներին միմեանց հետ։ Մեծ, փոքր, կին, տղամարդ՝—ամենքը աշխատում են. աշխատում են շատ անգամ իրար հետ և միշտ էլ իրար համար. մէկը ամենքի համար, ամենքը մէկի համար։ Պէտք է աշխատել, ուրիշ ճար չկայ. այդպէս է կարգը. այդպէս է հրամայել տան մեծը. եթէ նրա խելքը չը կտրէր, չէր ասիլ. որ ասել է՝ ասել է թէ պէտք է կատարել։ Փոքր երեխան էլ գիտէ, հասկացել է, որ մինչև չը բանեն, չը ցանեն, հաց չի լինիլ, քաղցած կը մնան. ռոճկի ու փողի երես նրանք ո՞րտեղից կը տեսնեն։ Եթէ փող էլ գալիս է բերքի ծախուելուց, դա էլ միմիայն հօր ձեռքն է մնում. քանի որ տան մեծը նա է, ուրիշ ոչ ոք չի կարող խառնուել նրա հաշիւների մէջ։ Կտոր է, պարտք է, տան պակասներն են,—բոլորը նա է հաշւում ու մտածում։ Քիչ անգամ է կնոջը դիմում ու հարցնում, այն էլ աւելի կտոր առած ժամանակ, միշտ էլ աշխատելով չափաւորել նրա պահանջները և մի քանի բան պակսեցնել նրա ասածներից։ Այդ է պատճառը, որ կինն աշխատում է իր համար ջոկ փող ձեռք գցել

կամ պարապ ժամանակին ուրիշի մօտ օրավարձ բանելով, կամ տան աւելցած իւղից, հաւից ու ձուից ծախելով։ Ծախածի փողը անպատճառ կնոջն է պատկանում։ Սովորաբար իւղ ծախած ժամանակ, կանայք պահանջում են, որ գինը իրանց ձեռքը տրուի և ոչ իրանց մարդոց։ Եթէ մարդն իմանար կամ չէր թողնել որ տան իւղը ծախուէր, քանի որ իրանց էլ հագիւ է հերիք գալիս և կամ կը պահանջէր, որ փողը իրան տրուէր։ Դրա համար էլ շատ անգամ կանայք իրանց տղամարդկանցից ծածուկ են ծախում իւղը։

Աշխատանքի անընդունակ անդամին ոչ ոք չի սիրում. նրան ծաղրում, ատում են։ Իրանց սիրելի անձի երկար ժամանակով հիւանդանալը նոյն իսկ ատելի է թւում նրանց, ուր մնաց առողջ, բայց ծոյլ ու անընդունակ մարդու գոյութիւնը։ Եւ պէտք է ասել, որ իսկապէս ծոյլեր, աշխատանքի անընդունակ մարդիկ շատ հազւագիւտ են համշէնցիների մէջ։ Նրանք բոլորն էլ չափից դուրս բանուկ, աշխատասէր մարդիկ են։ Տուէք նրանց մի կտոր հող. ուր էլ լինին, նրանք իրանց ճարպիկ ձեռքերի ու տոկուն ույժի շնորհով ամեն տեղ գլխները կըպահեն, քաղցած չեն մնալ։

Հօր մահից յետոյ ընտանիքի կառավարութեան ղեկը անցնում է որդիներից նրան, որ աւելի ընդունակ է ու խելօք, որ աւելի դիրք ունի հասարակութեան մէջ։ Միմիայն աշխատանքը բաւական չէ ընտանիքը կառավարելու համար. խելքն աւելի է հարկաւոր։ Նրան է յանձնւում աշխատանքի ընդհանուր հսկողութիւնը և ընտանիքի շահերի պաշտպանութիւնը դրսի շրջանում։ Եթէ խելք չունենայ, լեզու չունենայ, տանն էլ, դուրսն էլ նրան մտիկ անող չի լինիլ։ Այդ է պատճառը, որ լեզուանի, խելքով տղան նոյն իսկ հօր կենդանութեան ժամանակ շատ անգամ տան ներկայացուցիչն է համարւում հասարակութեան մէջ։ Տանը թէև նա ամենքից քիչ է բանում և ամենքից աւելի նոր ու մաքուր է հագնում, որովհետև շինամէջ է դուրս գալիս, բայց էլի տանը նրան պատւում են, ամենքից աւելի նրա խօսքին են լսում։ Եւ այդ նրա համար, որ ամենքն էլ գիտեն, որ միայն աշխատանքը ոչինչ է. ձեռ-

քի հացը կը խլեն գիւղի զօրեղներն ու ցեցերը, եթէ քամակին օգնող չը լինի, եթէ իրանց շահերին պաշտպան չունենան։

---

### Ազգակցութիւն ու խնամութիւն։

Տատին ասում են — — — մօմ.
Մօրը « — — — մէ՛՛ր կամ մէր. իսկ կանչելիս՝ Եմա.
Հօրը « — — — հէ՛՛ր կամ հէր. իսկ կանչելիս՝ Եբա.
Հօրեղբօրը « — — — հօրփէ՛՛ր կամ հօղբէր.
Հօրեղբօր կնոջը « — — — մօմէ՛՛ր կամ հօղօփկին.
Մօրեղբօրը « — — — քեռի։
Մօրեղբօր կնոջը « — — — քեռեկին.
Մօրաքրոջը « — — — մօրքուր.
Հօրաքրոջը « — — — հօրքուր.
Եղբօրը « — — — ախպէ՛՛յս կամ ուղղակի անունն են տալիս.
Քրոջը « — — — քուրիկս կամ ուղղակի անունն են տալիս.
Կնքահօրը « — — — կնքեար.
Կնքամօրը « — — — կնքակին.
Կնքահօր մօրը « — — — կնքամայր.
Կնքահօր քրոջը « — — — կնքաքուր։

Խնամոնց համար՝ աներոջ ու զոքանչի մասին խօսելիս փեսան յիշում է նրանց «միր պապը» կամ «միր մօմը» ասելով. կանչելիս էլ՝ սովորաբար նրանց պապ կամ «մօմ» է ասում. աներորդուն ուղղակի անունն է տալիս, իսկ նրա մասին խօսելիս՝ Թուրքերէն բառով է յիշում։ Իսկ քենակալին խօսելիս էլ, կանչելիս էլ միշտ Թուրքերէն բառով է յիշում։ Իսկ ուրիշները այդ չորսի համար ուղղակի Թուրքերէն բառեր են գործածում. դրանց հայերէն անուններ չը կան. (աներ-Բաբալուղ, զոքանչ-Օնալուղ, աներորդի—կաինչի. քենակալ-բաջընաղ)։ Հայերէն բառեր պահել են՝ սկեսուր, սկեսրէ՛՛ր, տէ՛՛քր, ներ, տալ-քենի-անուններում։

Կինը իր մարդու մասին խօսելիս՝ սկեսրոջ առաջ նրա համար «տղադ» է ասում, տալի մօտ՝—«ախպէ՛՛յդ». տէգրկնոջ մօտ՝—«տէքրդ». իր ծնողների առաջ՝—«ընկշաէ՛՛դ», օտարների մօտ՝—«ինքը, միրոնք, միր տոնը մեծը, միր կտրիճը, միր աղոց հէ՛՛րը (կամ երեխի անունը տալով)։

Տղամարդը իր կնոջ մասին խօսելիս՝ ծնողների մօտ ասում է նրա համար՝—«հարսը». աներանց մօտ՝—«ախչիկդ». օտարների մօտ՝—«միր տոնտիկօնը, միր ընտանիքը». երբեմն էլ յիշում է նրան ծագումով, այս ինչի աղջիկը կամ Թոռը, իրանց հայրական ազգով («միր Վար-

վաշտը, միր Մուշին, միր Միւսէլլիմը...»)։ Անուն տալ ոչ իրար մօտ, ոչ էլ ուրիշների մօտ բոլորովին չէ ընդունուած։ Իրար կանչելիս՝ սովորաբար ասում են—«քա» և կամ թէ չէ, եթէ մի քիչ հեռու են, նախապէս իրար «ո՜ւ» են ձայն տալիս ու ապա աւելցնում. «քա՛, լսե՞ս կու տէ"» (լսու՞մ ես)։

---

Սովորաբար Համշէնցի հայերի մօտ բազմանդամ ընտանիքներ չըկան։ Հազուագիւտ են նրանց մօտ այնպիսի ընտանիքներ, ուր մի քանի եղբայրներ երկար ժամանակ միասին միևնոյն յարկի տակ ապրէին։

Եղբայրներից ամեն մէկը համարեա պսակուելուն պէս՝ բաժնւում, իր համար ջոկ տուն է կազմում։ Ծնողները մնում են փոքր որդու մօտ։ Դա նրանց մօտ այնպիսի մի բնական սովորութիւն է դարձել, որ որդու բաժնուելու մասին նախապէս ոչ կռիւ է լինում և ոչ էլ խօսակցութիւն։ Որդիք բաժնւում, հեռանում են ուղղակի հէնց այնպէս, որովհետև կարգն այնպէս է, էլ յարմարութիւն չը կայ մնալու, այնպէս՝ ինչպէս նոր եկած մեղուի ձագը անմիջապէս թողնում է հին փեթակը և նոր տեղ տեղաւորւում։ Բոլորովին այդպէս է և նրանց մօտ։ Չը նայելով որ նրանք անխտիր երկրագործութիւնով են պարապում և այդ պարապմունքն էլ պահանջում է շատ աշխատաւոր ձեռքերի միութիւն, բայց և այնպէս՝ նրանք գերադասում են մեն-մենակ, իրանց համար ազատ-անկախ, քչւորով հողը մշակել, չարքաշութիւն քաշել, անոք, անօգնական մնալ, քան թէ շատւորով շատ գործ անել, բայց շարունակ տրտունջներ ու անբաւականութիւն ունենալ իրար դէմ։

Բաժնուելու պատճառը ոչ այնքան տէգրկնիկներն ու հարսներն են, կամ սկեսուրի բռնութիւններ, ինչքան հէնց իրանց տղամարդկանց կամքն ու զգացմունքները։ Աւելի իրանք որդիքն են ուզում հեռանալ հօրենական օջախից, օր առաջ ազատուել հօր իշխանութիւնից ու հսկողութիւնից, իրանց աշխատանքի կատարեալ տէրը լինել։ Ճիշտ է՝ նրանց մօտ ընտանեկան բռնութիւններ չկան, բայց գիւղական նահապետականութիւնը դեռ ևս ընդունում է այնպիսի կարգեր, որոնք

կապում, կաշկանդում են ջահել որդու ազատութիւնը։ Այսպէս նա պարտական է հօր-մօր և առհասարակ տան մեծերի առաջ չը ծխել, ամօթ է. նրանց բռնած գործում չը խառնուել, նըրանց սխալը չուղղել, պատշաճ խոնարհութիւն ցոյց տալ, մեծից առաջ խօսք չասել և այլն և այլն։ Բայց ամենից աւելի նըրան վշտացնում է այն բանը, որ այնքան աշխատելուց յետոյ գրպանը մի կոպէկ չի մտնում, որ ինքն էլ երբեմն-երբեմն, քաղաք գնացած ժամանակ՝ սիրտն ուզած բանն առնի, կամ հագնելիք կամ ուտելիք։ Քանի որ փոքր է, ջահել է, հօր իշխանութեան տակ է, դրամական ոչ մի հաշուի մէջ նրան չեն խառնում, նրա ձեռքը ոչինչ չեն տալիս. բոլորը հօրը ձեռքն է գնում. նա է որոշում իր խելքով, թէ ում ինչ է հարկաւոր առնել։ Էլ ինչի՞ մնայ ինքը, քանի որ տանը իրան բանի տեղ դնող չըկայ։ Ինքն էլ վեր է կենում, գնում է, իր համար ջոկ ապրում։ Մենակ հօ ինքը չէ այսպէս. ուրիշներն էլ այդպէս են արել. ոչ ոք դրա համար ոչ նեղացել է, ոչ էլ մի բան ասել. երևի կարգն այդպէս է. ինչի՞ ինքն էլ չը գնայ։ Եւ գնում է, նոյն իսկ հաշտ կերպով, առանց ղալմաղալի, դըսէ դուրս շարունակելով իր կապը հայրենական օջախի հետ, շատ անգամ օգնութեան հասնելով հօրը նեղը մնացած ժամանակ, նոյնպէս իր հերթին վայելելով հօրանց օգնութիւնը իր նեղ ժամանակը։

Տէգրկնիկների, հարսների ու սկեսրի անհամութիւնները երկրորդական, երրորդական պատճառ կարող են լինել. դրանց մասին գանգատներ շատ քիչ են լինում։ Որդէն բանը դեռ դրանց չը հասած՝ բաժանումը լինում է, էլ երբ պէտք է ժամանակ գտնեն իրար հետ ընկնելու։

Նոյնպէս շատ աղջիկ բերելը տնեցիներից ոչ ոքի համար ախորժելի չէ, բայց և այնպէս հաստատապէս կարելի է ասել, որ նրանց մէջ ոչ մի դէպք պատահած չի լինիլ, որ դրա համար հարսին սկսած լինին ծուռ աչքով նայել և կամ տնից դուրս արած լինին. այդ տեսակ բան նրանց մէջ երբէք չէ պատահել։ Ճիշտ է՝ աղջկայ ծնունդը նրանց մօտ այնպէս ուրախութիւնով չէ ընդունւում, ինչպէս տղինը, բայց և այնպէս՝

աղջիկը ոչ մի կերպ բեռ չի լինում ծնողների համար։ Նրան էլ այնպէս են պահում ու հագցնում, ինչպէս տղին. ոչ մի զարդարանք, ոչ ոսկի, ոչ արծաթ չեն կախում նրա վրայ մինչև մարդու գնալը, եթէ չը հաշուենք կոպէկանոց պղնձէ ապարանջաններն ու հասարակ օղերն ու «չլըլունները»։ Պսակի ժամանակ եթէ մի զարդարանք տալիս են, այն էլ տղի տիրոջ կողմից է ընծայ գալիս, ինչպէս և հարսի պսակի բոլոր հագուստեղէնն ու նրա տան ուտելիքի պատրաստութիւնը։

Վաղ նշանել, այսպէս կոչուած՝ օրօրոցախաղի սովորութիւն բոլորովին չկայ նրանց մօտ, ոչ էլ դրա պատճառով խնամոնց յաճախ հիւրասիրելն ու «խօնչա» ուղարկելը։ Հակառակը, ինչպէս տեսանք, աղջկայ տէրը աւելի նազ ու թուղ է ծախում, լիզուն երկար է պահում, աւելի մեծ արտօնութիւններ է վայելում, քան տղի տէրը, որ հազիւ հազ, հազար նազով ու փողով կարողանում է աղջկայ տիրոջ հաճութիւնն ըստանալ։

Հարս ու սկեսրի յարաբերութիւններն առանձին անհամութիւնների պատճառ չեն լինում։ Առասպելական հռչակ ստացած սկեսրական բռնութիւններ դրանց մօտ լսուած չեն։ Ճիշտ է՝ հարսը սովորաբար ակնածութիւն ու պատշաճ խոնարհութիւն է ցոյց տալիս սկեսուրին, բայց այդ խոնարհութիւնը երբէք ստրկութեան չի հասնում. ոչ էլ սկեսուրն է այդպիսի պահանջներն անում։ Կինը աւելի կախում ունի մարդոց, քան սկեսուրից. սկեսուրը երկրորդական դեր է կատարում։ Սկզբներում՝ երբ հարսը նոր եկած է, տղան ջահէլ է, ամօթ է նրան խառնուել կնոջ գործերում. հարսը սկեսրի հսկողութեան տակ է. նա է նրան տան բաները սովորեցնում, տեղ դրկում, սովորեցնում տնեցոց ու օտար մարդկանց ընդունելու և վարուելու կարգը, ում հետ և երբ խօսելու և չը խօսելու ժամանակը և այլն։ Հարսի չը խօսքանութիւնը կարճ է տևում, հազիւ մի քանի շաբաթ. այնուհետև կատարեալ ազատութիւն է վայելում խօսելու ամենքի հետ, լինի նա տան մարդ թէ օտար. երեսն էլ միշտ բաց, առանց որևէ կապի ու քնթկալի։ Միմիայն հարսնիքից յետոյ առաջի շաբաթն է, որ գլխին երկար

քօղ գցած, տանն է մնում. դրանից յետոյ բաց երեսով, արձակ-համարձակ ամեն տեղ էլ կարող է գնալ:

Կինը ընդհանրապէս համշէնցիների մօտ վայելում է կատարեալ ազատութիւն. մանկութիւնից նրան տղերանց հետ հաւասար ազատութիւն է տրւում. նրանց հետ միասին մեծանում պատ ու մաքուր բնութեան ծոցում, ամեն աշխատանքին նրանց հետ մասնակից մինչև մարդու գնալը: Մարդու գնալուց յետոյ էլ նա չի կտրում իր կապը բնութիւնից. մարդու անբաժան մասնակիցն է արտի ու դաշտի գործին: Փեսատն ու մանգաղը ձեռքին՝ նա բանում է արտում ոչ միայն իր մարդու, այլ և դրսից բռնած մարդկանց հետ, առանց քաշուելու և ամաչելու: Նրանց հետ խօսում է, ծիծաղում, հէքիաթներ պատմում, արտի ու բերքի մասին դատողութիւններ անում: Ու այդ վարմունքի համար նրան ոչ ոք չի դատապարտիլ. գործն այնպէս է, որ տղամարդը միշտ ամեն տեղ չի կարող հասնել. մէկը պէտք է՝ որ բանւորների հետ լինի, նրանց հետ բանի, նրանց վրայ հսկի, թէ չէ նրանք էլ չեն բանիլ, գործը կը մնայ: Դրա համար ոչ սկեսուրը կը նեղանայ, ոչ էլ մարդը մի բան կասի: Նեղանան, նեղանան՝ շատ-շատ մի քանի հայհոյանքներ կը թափեն, բանը ծեծի երբէք չի հասնիլ: Շատ հազիւ պատահած կը լինի, որ մարդը իր կնոջը ծեծած լինի, իսկ սկեսրի կողմից հարսին ծեծելը հօ իմացուած չէ: Նոյն իսկ ամենամեծ պատճառի համար, ուրիշների հետ ծածուկ կապերի համար անգամ մարդը քաշւում է իր կնոջ վրայ ձեռք բարձրացնելու. շատ-շատ մի քանի հայհոյանք ասի, կը թողնի, համոզուած լինելով, որ ինչքան կոպիտ վարուի, այնքան կը հեռացնի նրան իրանից, միւս կողմից հասկացած լինելով, որ օրէնքը իրաւունք չի տալիս մարդուն կնոջը ծեծելու:

Աշխատանքն ընտանիքի անդամների մէջ այսպէս է բաժնուած. հերկը, տափան ու պատ քաշելը, լուծ ու սայլ բանեցնելը—անպայման տղամարդու գործեր են. մնացած բոլոր երկրագործական-տնտեսական գործերում անբաժան մասնակցում է կինը: Զուտ տնային գործերը՝ կարը, լուացքը, մանելն ու գզելը, կերակուր եփելն ու հաց թխելը, կթելն ու խնոցին,

ջուր բերելը, տունը սրբելն ու մաքրելը, «ածուքի» աշխատանքը — միմիայն կանանց բանն է, տղամարդը չի խառնւում։ Տղամարդը «ածուքը» հերկում է, պատը քաշում է, մնացածը թողնում կնոջը։ Կինն է փորում, ցանում, փնջում, տնկում, խոտերը մաքրում, քաղում, չորացնում, հնդացու պահում։

—Կերակուրն ու հացը սովորաբար կանանցից նա է պատրաստում, որը որ տանն է մնում, լինի նա հարս թէ սկեսուր։ Եթէ հարսը փոքր, ծծկեր երեխայ է ունենում, տանն է մընում. այդ բաներն էլ նա է տեսնում, իսկ երեխայ չունեցողը արտն է գնում, կերակուրն ու հաց պատրաստելը սկեսրին թողնում։ Սովորաբար՝ որովհետև բանելն աւելի դժուար է, դրա համար տանը բանելու պառաւներն են մնում, իսկ հարսներն ու ջահէլները գնում են արտը։ Տանը մնացողը՝ կերակուրը պատրաստելուց և հացը «քարից» կամ փռից հանելուց յետոյ, դարսում է «կալաթը» և տանում արտը՝ աշխատաւորներին։ Ով որ կերակրի ու հացի նայում է, ջուրն էլ ինքն է բերում. իսկ իրիկունները սովորաբար ջուրը հարսներն ու աղջիկերքն են բերում։ Տունը աւլելն ու մաքրելն էլ տանը մնացողին է մնում, թէև այդ էլ ուրիշ ժամանակ հարսներն ու աղջիկերքն են անում։ Կովը կթելը, խնոցին հարելն ու խմոր հունցելը աւելի հարսների գործ է. տղամարդկանց գլուխն ու ոտները լուանալը նոյնպէս. բայց եթէ տանը մի քանի հարս կայ, ամենից փոքըրն է անում այս վերջինը։ Բուրդ գզելը, «սօկ» ու «սառոբին» մանելը աւելի պառաւների բան է. իսկ կանեփից թել քաշելուն ու խսիր կապելուն ամենքն էլ մասնակցում են։ Կարը լուացքն ու «լաթ» գործելը աւելի ջահէլներն են անում. երբեմն էլ անտառից փայտ նրանք են շալակով բերում, իսկ գուլպա գործելն ու տրեխ շինելը, նոյնպէս՝ կանեփից թոկ ու թել հիւսելը տղամարդկանց բանն է։

Վաղ առաւօտեան, դեռ լոյսն ու մութը չը բացուած, ամենքը վեր են կենում տեղերից երեսները լուանում և ապա անմիջապէս «ծնրի» (աղօթք) կանգնում։ Մեծ, փոքր, կին, տղամարդ—ամենքը աղօթում են. եթէ մէջները «տիրացու»—կարդացող ունին, ձայնով «ծունր» են անում։ Էլի «ծունր» են

անում երեկոյեան, երբ գործից գալիս են, և մէկ անգամ էլ՝ պառկելուց առաջ։ Ճաշից ու ընթրիքից առաջ ու վերջը երկար աղօթելու սովորութիւն չունեն. սովորաբար միայն երեսները են խաչակնքում։ Հացի նստելուց առաջ ձեռքերը լուանում են, իսկ ուտելը վերջացնելուց յետոյ՝ ձեռքերի հետ բերանն էլ են լուանում։ Հացի ժամանակ ամենքը միասին են նստում, կին թէ տղամարդ. հիւր ունեցած ժամանակը՝ երբեմն միասին, երբեմն էլ՝ ջոկ։ Եթէ հիւրը տղամարդ է, տան մեծի հետ են նստեցնում, կամ ջոկ տալիս, իսկ երբ կինմարդ է լինում, տան կանանց հետ է ուտում։ Սեղանը դնելու ժամանակ սովորաբար հարկ եղած ծառայութիւնը տան փոքր հարսի վրայ է. նա է սպասաւորում սեղանին։

---

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԻՒՆ.

Կովկասեան ափերը գաղթելուց յետոյ, Համշէնցիների ինչպէս հայրենական կեանքի շատ կողմերի, նոյնպէս և բարք ու վարքի մէջ հետզհետէ փոփոխութիւններ են մտել։ Հայրենական պարզ ու նահապետական կեանքի հետ տեղ-տեղ նկատւում են նրանց մէջ ապականութիւն ու անբարոյականութիւն, մանաւանդ Չէրնօմօրի վիճակում, ուր շրջապատող ռուս կազակ գիւղացիների ընտանեկան յայտնի բարքերի ապականութեան շնորհով նահապետական հայը կորցրել է իր բարքերի վաղեմի մաքրութիւնը։ Այստեղ բարքերի ապականութիւնը ծայրայեղ աստիճանին է հասել. ապօրինի կապեր և օջախի պատուի խախտումը, առևանգութիւններ ու կանանց փախցնելը շատ տարածուած երևոյթներ են նրանց մօտ։ Միւս տեղերում, ճիշտ է՝ այդ երևոյթներն այնքան մեծ չափով չեն կրկնւում, բայց չի կարելի ասել, թէ բոլորովին չը կան։ Ամեն տեղ նրանց գիւղերում պատահում են այդ տեսակ ապօրինի կապեր, թէև, 'ի հարկէ, ծածուկ, ոչ բացարձակ կերպով։ Դրանց պատճառը ոչ միայն իրանց հայրենակիցների վարակիչ օրինակն է և շրջապատող տարրի ապականող ազդեցութիւնը, այլ գլխաւորապէս

իրանց պարապմունքը, թութունի մշակութիւնը: Այդ բերքի մշակութիւնը որովհետև սաստիկ մեծ ծաւալ է ստացել նրանց մօտ, ստիպում է ահագին թւով բանւորներ թափել գործի տաք ժամանակ: Բանւորների ամենամեծ մասը Կովկասեան ափերի հիւսիսում, Չէրնոմորի կողմերում, կազմում են ռուս աղջիկներ, որոնք ապականութեան ամենագլխաւոր աղբիւրն են: Նրանք գալիս են տասնաւոր, հարիւրաւոր խմբերով, նստում վեր են կենում հայ տղերանց հետ, նրանց հետ ողջ օրը երգով ու կատակներով անցկացնում: Ինչ խօսք որ աղջիկների վրայ ոչ մի հսկողութիւն չը կայ. նրանք իրանց գլխու են, ով է նրանց մօտ նշանակութիւն տալիս այդ տեսակ բաներին:

Եթէ այդ թութունի պատճառով չէ, որ հազարաւոր հայ պանդուխտներ Անատոլիայի հայրենական ափերից գալիս են Կովկասեան ափերը, իրանց հայրենակիցների մօտ, ծառայի կամ թութունից մի մաս ստանալու պայմանով մտնում նրանց մօտ, նրանց հետ միասին նստում, վեր կենում, բանում ու պառկում: Հասկանալի է, որ այդքան պանդուխտ բազմութեան այդպէս մօտիկ կերպով տներ լցուելը առանց հետևանքի չի կարող անցնել: Օրերով, ամիսներով և նոյն իսկ տարիներով միասին ու միատեղ ապրելն ու կենակցելը՝ այսպէս թէ այնպէս՝ պատճառ է լինում ապօրինի կապերի, մանաւանդ որ նրանց մեծ մասը ջահել մարդիկ են, մեծ մասը կնոջ ու երեխանց տէր, որոնց ամիսներով ու տարիներով հայրենի երկրում երեսի վրայ թողած, եկել ընկել են այս տեղերը, որ մի քիչ փող աշխատեն, գնան իրանց երկրում հալալ հաց ուտեն, թուրքական անթիւ ու աճող տուրքերը տան, իրանց բանեցրած եզն ու կովը պարտքի համար դրուելուց ազատեն: Եթէ այդ թութունն է պատճառը, որ շատերը նրանցից իրանց աշխատասիրութեան ու ընդունակութեան շնորհով զգալի բարեկեցութեան հասնելով, միջոց է տալիս նրանց կանանց պճնուելու սովորականից դուրս շռայլ կերպով, այնպէս որ վերջին տարիներս նրանց կանանց մէջ, մանաւանդ ուր թութունի մշակութիւնը մեծ չափերի է հասել, ինչպէս օրինակ Սուխումի շրջանում, չափից դուրս տարածուած է պճնասիրութեան ախտը. մէկը միւսին գերազանց-

ցել է ուզում։ Հարսի համար, ասենք, ոչինչ. նրա ձեռքը կը
հասնի. բայց ի՞նչ կանէ խեղճ-չունեւորը։ Ա՛յ, նրանց բանն է
դժուար։ Աղքատի կինն էլ չի ուզիլ չոր մնալ իր հարեւանից,
և բաւական է տեսնի՝ որ մարդը չի կարողանում իր ճաշակին
ու պահանջներին գոհացում տալ, կամաց-կամաց կսկսի ուրիշ
ճանապարհ բռնել... Ակամայ նրա մարդու լեզուն էլ կը կա-
պուի։ Ի՞նչ կարող է անել. շատ էլ յանդիմանի, նա էլ է
զգում, որ հարեւանի կինն իր կնոջից լաւ է դուրս գալիս.
ի՞նչ արած։ Անիծած կինը որ իրան չի հասկանո՛ւմ։ Ոչ, շատ
լաւ հասկանում է, բայց չի զգում, չի խղճում նրան. զոռով
հօ չի կարելի հասկացնել նրան. տնից դուրս անելու համար
էլ իր ույժը չի հասնիլ։ Լաւ, դուրս արեց, յետոյ ի՞նչ անի. ո՞վ
պէտք է իրան հաց-կերակուր պատրաստի, ո՞վ տունը պահի,
իրան ու երեխանց նայի. տան պակասներն հոգայ, մանաւանդ
որ ուրիշը առնելու համար ոչ իրաւունք կայ, ոչ էլ այնքան
փող ունի։ Հազիւ-հազ, ո՜վ գիտէ ինչ նեղութիւններով, նրա
ծնողներին աջողուել է այդ մէկն էլ ձեռք բերել, ո՞ր մնայ,
թէ հիմա դրան էլ դուրս անի, ուրիշը տուն բերէ, այն էլ
այնպիսի դժուար տեղում, ուր կին առնելը բացի դրամական
մեծ զոհողութիւններից, ահագին դժուարութիւնների հետ է
կապուած։ Ճար չը կայ. մնում է լռել ու հաշտուել։ Շատ էլ
շատ բան կասեն. ինչ պէտք է ականջ կախել ամեն լածին,
ո՞ւմ կնոջ վրայ չեն խօսում, որ իր կնոջ վրայ չը խօսեն։ Եւ
իրաւ, այդտեսակ դէպքում խեղճ մարդու ամենամեծ մխի-
թարանքը հէնց այն հանգամանքն է, որ այդ բամբասանքի
տակ են շատ շատերը իր հարեւանների կանանցից։ Նոյնպիսի
զրոյցներ պտտում են |և տղամարդկանց վրայ։ Բարքերի այս
կամ այն չափով ապականութիւն նկատուում է ամեն տեղ համ-
շէնցիների մօտ, թէև ոչ այնպէս բացարձակ ու մեծ չափով,
ինչպէս Չէրնոմորի վիճակում։

Ինչպէս տեսնում ենք, բոլոր պատճառներն էլ համարեա
վատ տնտեսական են։ Երկրորդական պատճառների մէջ կարե-
լի է ընդունել երկրի դիրքը. ամբողջապէս անտառոտ. չորս
կողմը խիտ, անմատչելի ու մութ անտառները ինչ խօսք որ

այսպէս՝ թէ այնպէս նպաստում են այլ և այլ կապերի հաստատուելուն։

Մի մեծ պատճառ էլ կայ, որ ես մոռացայ յիշելու. այդ նրանց՝ տղաներին փոքր հասակից պսակելու սովորութիւնն է, մօտաւորապէս 16—18 տարեկան հասակից։ Այդ սովորութիւնը գուցէ այնքան վատ հետեւանք չունենար, եթէ միայն աղջիկն էլ տղի համեմատ հասակ ունենար, մինչդեռ աւելի հակառակն է նկատւում. սովորաբար աղջիկը կամ բոլորովին հասակակից է լինում և կամ մի քիչ մեծ, որ այսպէս թէ այնպէս դարձեալ բնական չէ, քանի որ մինչդեռ աղջիկը արբունքին հասած, ֆիզիկապէս կատարեալ զարգացման մէջ է, տղան փոքր է լինում նրա համեմատ և կարօտ դեռեւս մի-երկու տարուայ աճելութեան։

Բարքերի ապականութիւն նկատւում է միայն ամուսնացած կանանց շրջանում. ջահել աղջիկների մէջ այդ տեսակ ոչ մի բան չըկայ։ Նրանց փախցնում են, կամ աւելի ճիշտը՝ իրանք փախչում են իրանց ուզած երիտասարդի հետ, որովհետեւ եթէ աղջկայ յօժարութիւնը չը լինի, շատ դժուար կը լինի նրանց փախցնել։ Այդ տեսակ դէպքեր շատ են պատահում նրանց մօտ։ Սկզբում փախչող աղջկայ ծնողները մերժում են համաձայնութիւնը տալու, չեն հաշտւում այդ բանի հետ, համարելով իրանց օջախի համար անպատւութիւն, բայց վերջիվերջոյ բոլոր փախչողներն էլ պսակւում են։

Ինչպէս ամեն տեղ ժողովրդի մէջ, նոյնպէս և համշէնցիների մօտ՝ սիրահարութեան վրայ վատ աչքով են նայում, ընդունելով այն իբրև անպատիւ ու անբարոյական երևոյթ։ Բայց ծնողների այդ հին հասկացողութեան հետ չի հաշտւում նրանց երիտասարդ աղջիկը կամ որդին, որ յանդուգն ու համարձակ, իր ընտրածի հետ մութ գիշերով սարեր-ձորեր է անցնում խիտ-խիտ անտառների միջով, մինչև կը տանի նրան մօտիկ գիւղը, քահանայի մօտ, որ կարճ հարցափորձից յետոյ անմիջապէս ձեռք կառնի Մաշտոցը և կսկսի օրհնել նրանց միութիւնը։ Իսկական սիրահարութեան դէպքեր շատ հազուագիւտ են նրանց մօտ. և իսկապէս աղջիկը ո՞ւմ վրայ պիտի սիրահարուի, քանի

որ գիւղում էլ երիտասարդ չի մնում. 16 տարեկանից արդէն տղաներին պսակում են. Հօ երեխաներին չի կարող սիրել։

Փախչելը միայն սիրահարութիւնից չի լինում. երբեմն աղջիկը փախչում է հէնց այնպէս, տեսնելով որ իրան շատ երկար են պահում տանը և դեռ էլի միտք չունեն տալու, կամ իր չը հաւանածին են ուզում տալ, կամ թէ չէ տղի կողմից հարսներ խելքից հանած կը լինեն, հեռուանց հեռու գովելով տղին և նախատելով աղջկան այդքան երկար համբերելու համար։ Այս վերջին տեսակ դէպքեր շատ են պատահում։ Տղի տէրը երբ տեսնում է որ ամեն կողմից ճարը կտրւում է, որտեղից ուզեց՝ չը տուին, դիմում է իր բարեկամ հարսների օգնութեան, խնդրելով անպատճառ իր մտքի դրածին կամ մի ուրիշի մի տեղից թռցնել։ Այդ արդէն նրանց համար դժուար չէ։ Դէս-դէն են ընկնում, առաջ հեռուից աղջկան լուրեր են ղրկում, տղին գովելով գովում, վերջապէս իրանք սկսում են մօտենալ և մի գեղեցիկ օր նրանցից մէկը եկեղեցուց կամ ուղղակի տնից աղջկան առնում, տանում է նրան սպասող տղին յանձնում, ինքը հեռանում։ Այնուհետև նրանք երկուսը միայն, ծածուկ, գիշերով ճանապարհ են բռնում դէպի մօտիկ գիւղը, աշխատելով սարերի ու անմատչելի գագաթների վրայից անցնելով, հասնել քահանայի տունը, ուր վերջնականապէս հանգիստ են գտնում և իրանց նպատակին հասնում։

Երբեմն մի աղքատ տղի համար, տեսնելով որ ոչ ոք աղջիկ չի տալիս, ողջ գիւղը կանգնում է. ժողովւում են կտրիճները և մի գիշեր վրայ տալիս մի աղջկայ տունը, պարապ հրացանի ու ատրճանակի ձայներով սարսափեցնում տնեցոց և աղջկան դուրս հանում, փախցնում, տանում տղի հետ պսակել տալիս։ Եւ այդ տեսակ դէպքեր անցնում են անպատիժ և առանց որևէ ծանր հետևանքի։

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ

(Համայնական սովորութիւններ).

Համշէնցի հայը իր խիստ գործնական ոգու և բնաւորութեան հետ արտայայտում է շատ դէպքերում նաև զուտ հասարակական-համայնական կողմեր: Չընայելով որ նրանց տները իրարից հեռու-հեռու են և տան տեղեր ընտրած ժամանակ՝ նրանց մէջ շատ անգամ լուրջ տարաձայնութիւններ են ծագում, բայց և այնպէս՝ ամէն մէկը նրանցից խորը համոզուած է, որ տունը առանց դըրկցի չի լինիլ. ինչքան թէ մօտիկ դըրկից ունենալը վատ է, նրանից հեռու մնալն էլ լաւ չէ: Մահ է, կեանք է, ցաւ է, դժբախտութիւն է՝ նրանք միշտ իրար հարկաւոր կըգան: Նա լաւ գիտէ, որ մեն-մենակ տունը չի կարող ամէն պակասներին ու պատահարներին հասնել. մարդ մարդու կարօտ կը լինի:

Այդ միտքը գեղեցիկ կերպով արտայայտուել է ժողովրդի առածներում: Ահա նրանցից մի քանիսը.

«Ա"քվընցու (առաւօտեան) արևըն դըրկիցը առաջ է». տեսնում էք՝ ինչ գեղեցիկ համեմատութիւն է. հարևանը հարևանի համար արևից էլ առաջ է դուրս գալիս:

«Ինչտըղար (ինչքան) գնդին ըլլիս, դըրկցուն էհտաջ (կարօտ) կըլլիս»:

«Դըրկցուդ փեօյն (փոր) օր ցաւի նա, դուն է՛լ փեօյդ աճըթէ՛ (տրորիր)»:

«Դըրկցուդ աչքը քեօռ է՛ նա, դուն է՛լ մէկը բունէ՛»:

«Դըրկիցս օննայ (ունենայ) նա, ինձի տայ օչ էլ նա, ինձմըն չի ուզեր»:

«Առաջ դըրկցուդ ուզէ՝ օր Աստուած քեզի է՛լ տայ»:

«Դըրկցուդ երկուս կամինաս պէտի հըն օր (որպէս զի) Աստուած մէկը քեզի տայ»:

«Ըստուած տուաչ ղրկցուն տայ, եոքը ինձի»:

«Կերածը հետ (հոռ) կուտայ, տըւածը հօմ կուտայ».— ուզում է ասել, թէ իր ուտելն այնքան համ չի տալ, ինչքան ուրիշին տալը:

«Մէկի փուխարութինը (խեղճութիւն) տաս հոգու էրէսէ կըլլի»:

Այս վերջին առածը զուտ սոցիալական միտք է պարունակում իր մէջ: Նա ցոյց է տալիս, որ մարդու վիճակը մեծ կախում ունի մարդկանցից. մէկի խեղճութիւնը նոյն իսկ ընդունում է իբրև արդիւնք նրա շրջապատողների ազդեցութեան:

Սկսած հասարակ փոխից ու հարևանական յարաբերութիւններից մինչև հաւաքական ուժով կատարած մեծ ձեռնարկութիւնները՝ բոլորը այդ հասարակական գիտակցութեան արդիւնք է: Նա ընդունում է, որ առանց փոխադարձ օգնութեան, առանց մէկ-մէկին բռնելու, դժուար է ապրել աշխարհում: Անհրաժեշտ է, որ մարդիկ մօտենան, միանան իրար, նոյն իսկ իրանց սեփական օգտի ու բարեկեցութեան համար:

Սովորաբար առանց մերժելու մէկը միւսին փոխ է տալիս միշտ սարք, գործիք կամ աման, ինչ որ ուզէ, եթէ միայն ունենում է. սայլ, տակառ (ջուր կրելու), արօր, լուծ, սամիթամք, կացին, ուրագ, պղինձ, ջրաման եւայլն. դրանց համար ոչ մէկը մի բան չի պահանջիլ: Շատ անգամ դրանցից աւելի մեծ բաներ են բան տալիս ուզողին՝—ձի, եզ և էլի փող չեն ուզում:

Ձի տալիս են աւելի ջրաղաց հատիկ տանելու և կամ ալիւր բերելու համար, հիւանդ ունեցողին՝ բժշկի կամ դեղի ետևից գնալու համար, մէկ էլ՝ հարսնիքին, «թագաւորի» ու «հարսնքուրների» նստելու համար: Եզ տալիս են հարևանին նեղ ժամանակ օգնելու համար՝ հերկին, անտառից փայտ քաշելու, արտից քաղածը տուն կրելու համար եւայլն: Շատ անգամ եզների հետ նրանց համար քշող մարդ էլ են տալիս: Հաւը թուխս դնելիս, ով աւելի թուխս ունի, տալիս է չունեցողին, որ նա էլ նստեցնէ:

Հարևանական յարաբերութիւններից յիշելու է նոյնպէս կանանց ծննդկանին ու հիւանդներին 'ի տես գնալը, որ լինում է սովորաբար կիրակի ու տօն օրերին (այլ օրեր պարապ չեն լինում), նրանց համար ուտելիք տանելով։ Մեռնողների համար գերեզման փորելը ամեն մի համշէնցու պարտականութիւնն է. ով էլ լինի մեռնողը, հերիք է որ իր գիւղից կամ թաղից լինի. դրա համար ոչինչ վարձ չըկայ։

Ինչպէս որ առանձին անհատներ իրար օգնում են, այնպէս էլ երբեմն, հարկ եղած դէպքում, համայնքը կամ նրա անդամներից շատերը խմբով ու միացած՝ օգնութեան են գալիս իրանցից մէկին։ Այդ բանը լաւ արտայայտւում է «Էղրաթ» կոչուած աշխատանքի ժամանակ։ «Էղրաթ» է կոչւում այն աշխատանքը, որ կատարւում է հաւաքական կերպով, համայնքի անդամներից մէկի խնդրանքով, նրա նեղ ժամանակ և նրա օգտին, դա է «Էղրաթ բօնել» կամ «Էղրաթ բօնեցնել»։

Երկրագործութեան մէջ «Էղրաթ» ժողովւում են, երբ պէտք է լինում օգնել մէկին մարդով կամ եզով—քաղելու, քաղհան անելու, դիզելու, «սադրելու» (տնկել), շարելու և այլն. երբ շտապով գործ է լինում. կամ երբ հարկաւոր է լինում շատերի հաւաքական ույժը փչացած ճանապարհը կամ կամուրջը շինելու, մեծ-մեծ գերաններն ու ծածքի համար հանած տախտակը նեղ տեղերից ճանապարհը հանելու, սալլ բարձելու և այլն։ «Էղրաթ» անում են աւելի թութունի «սադրելու» (տնկելու), քաղհանի, քաղի ու շարի ժամանակ, ցորենի քաղի ժամանակ, սիմինդրի քաղին ու «կալլելիս» (կճեպը գլխից հանել), «ծեղը» (սիմինդի չոր տերևները) դիզելիս՝ «խուլկելու» (խուրձ շինել) և ծառը հանելու համար, նոյնպէս և թթու դնելիս՝ լոբիայի թելերն ու պոչերը մաքրելու համար։

Շէնքի ժամանակ՝ «Էղրաթ» անում են գլխաւորապէս տունը ծածկելու ժամանակ, երբ հարկաւոր է գալիս մի քանի մարդկանց հաւաքական ույժը ծածքի մանր տախտակները վեր հանելու և ծածկելու համար։ Այդ աշխատանքը համարեա թէ միշտ ձրի է լինում։ Երբեմն «Էղրաթ» գալիս են անտառից շէնքի համար փայտ քաշելու։

«Էղրաթը» սովորաբար ձրի ու հաւաքական աշխատանք է մէկի օգտին և նրան օգնելու նպատակով։ Բայց պատահում է նոյնպէս, որ «էղրաթ» են անում, բայց բոլորովին ձրի չի լինում. մի մասը փող է ստանում, օրավարձ, աւելի թութունի աշխատանքին, իսկ մի քանիսն էլ փոխ են գալիս, այսինքն՝ պտղի տէրն էլ իր հերթին, երբ հարկաւոր լինի, պարտաւոր է գնալու նրանց օգնելու, նրանցից ամեն մէկի եկած օրերի հաշւով։ Փող քաշելու համար փոխ չը կայ. փոխ աշխատանքն աւելի պտղի բերքերի համար է. փոխը նոյն տարին պէտք է վճարուի, ի հարկէ աշխատանքով, գնացած օրերի հաշւով. հին, մնացած փոխեր չեն յիշւում, մոռացւում են։

Հայրենական աւերում այդ սովորութիւնը աւելի տարածուած է եղել, քան այստեղ. մէկ որ՝ այնտեղ այսքան զբաղուած չեն եղել (թութունի գործ չի եղել), մէկ էլ որ՝ բանեցնող չի եղել. փող չի եղել, որ փողով գործ մանգային։ Այստեղ այդ երկուսն էլ կայ. բայց էլի «էղրաթ» բանելը սովորական տարածուած երևոյթ է համշէնցի հայերի մէջ։

Համայնքով մէկին օգնելու գիտակցութիւնը արտայայտւում է համշէնցիների մէջ ոչ միայն զուտ երկրագործական աշխատանքի ժամանակ, այլ և այնպիսի հարցերում, որոնք երկրագործութեան հետ կապ չունեն։ Այսպէս՝ վերև տեսանք, թէ ինչպէս երբեմն մի երիտասարդի համար գիւղի կորիճները, ի հարկէ խնլօքների ու առաջաւորների խորհրդով, արշաւանք են գործում մէկի տան վրայ, նրա աղջիկը երիտասարդի համար փախցնելու մտքով։ Խնլօքներն էլ, կորիճներն էլ համոզուած են, որ դրանով ոչինչ վատ բան չեն անում. ախր չէ որ նրան էլ մի կին է պէտք. հօ անկին չի կարելի մնալ. երբ որ չեն տալիս, պէտք է փախցնել։ Գիւղական տնտեսութիւնն ու երկրագործութիւնը առանց տանտիկինի, առանց կնոջ անկարելի է, չի լինիլ. այդ ամենքը գիտեն։ Եթէ տղան մնայ այնպէս, նրա երկրագործութիւնն էլ կը մնայ. տունը պիտի կորչի. աւելի լաւ չէ՞, որ նա էլ ապրի, տուն լինի, հաց ուտի, Աստծուն փառք տայ։

Այսպէս՝ իրանցից մէկին մի ցաւ կամ վտանգ եկած ժա-

մանակ՝ բոլորը ոտի են կանգնում, օգնութեան գալիս։ Գող է գալիս գիւղը, մալը քշում, տանում է, հարեւանները խմբով յետեւն են ընկնում, ձեռքիցն առնում, բերում։ Հրացանի մի տրաքոց բաւական է, որ շարժէ, ոտի կանգնեցնէ բոլորին։ Կամ մութ գիշեր է. անտառում մալ է մնում. գնում են փընտռելու. կամ թէ գիշեր է՝ անտառում մնացած մալի մասին լուր է գալիս, թէ գայլի ճանկն է ընկել. գնում են ազատելու։ Մէկին հրդեհ կամ մի մեծ վնաս պատահած ժամանակ՝ ամենքը մի բանով օգնում են։

Ինչպէս որ համայնքն է մէկին օգնում, այնպէս էլ երբեմն մէկն է համայնքին օգնում, նրա համար ձրի ծառայութիւններ անում։ Այսպէս՝ գիւղի ժամկոչը ոչ մի բան չի ստանում. ձրի է կատարում իր պաշտօնը. նոյնպէս և տիրացուն։ Յիշում եմ. միանգամ նրանց մօտ մի գիւղում իրանց ամենալաւ մի տիրացուի սիրտը շինելու համար, որպէս զի միշտ անպակաս եկեղեցում գտնուի, քահանայի խորհրդով գլխաւորները տարեկան ռոճիկ էին նշանակել։ Չը նայելով որ ռոճիկը շատ չնչին բան էր, բայց էլի առանց տրտունջի ու խօսակցութեան չանցաւ. տիրացուն ժողովրդի բերանում ծաղրի առարկայ դարձաւ, թէ ինչ է՝ «ձայնն էլ փողով է ծախում»... Եւ վերջապէս դայեակն ու գիւղի մէջ գտնուած մարդկանց ու մալերի ցաւերից հասկացող գիւղացիք ձրի դնում են բոլոր դիմողներին. Նրանցից ոչ մէկը ոչինչ չի ստանում, և այդ ոչ միայն հասարակ խորհուրդների համար, այլ նոյն իսկ այնպիսի ծանր ու բարդ գործողութիւններ կատարելու համար, ինչպէս են զանազան սրագործութիւններ ու կրտելը (каетрированніе).

Նոյն հասարակական գիտակցութիւնն է երեւում նրանց այն աշխատանքներում, որ կատարում են նրանք միասին հաւաքական կերպով, իրար օգնելու նպատակով։ Այստեղ արդէն մօտիւը զուտ հասարակական է. կրօնական կամ բարոյական ոչինչ չըկայ։ Անհատը մեն-մենակ չի կարող իր բազմատեսակ կարիքները լրացնել. և ահա առաջ է գալիս այն գիտակցութիւնը, թէ պէտք է մօտենալ, կպչել հարեւաններին, նրանց հետ գործ սկսել։ Այդ գիտակցութեան արդիւնքն է, որ

այսօր հայրենիքից Կովկասեան ափերը մերկ ու աղքատ եկած հայ գաղթականները իրանց համար սեփական հողեր են ձեռք բերել մասնաւոր կալուածատէրերից Սև ծովի ափերի զանազան մասերում։ Նրանց ամենամեծ հողային սեփականութիւնը գտընւում է Սուխումի շրջանի Դէբէլդա տեղում, ուր հայերի գնած հողի տարածութիւնը հազար դեսեատինից աւելի է։ Միքանի հարիւր դեսեատին սեփական հող էլ Սօչիի բաժնում են գնել, Ադլէր աւանին մօտիկ։

Եթէ չեմ սխալւում, այդ կողմից համշէնցի հայերը Լօռու Ճահնազար գիւղի հայերից յետոյ՝ առաջին օրինակն են տալիս, որ հաւաքական միացած ուժով հողային սեփականութիւններ են ձեռք բերում։ Այսօր, եթէ յայտնի արգելքը չը լինէր (նրանցից մեծ մասը Թիւրքահպատակ են), շատերը նորից հողեր ձեռք կը բերէին իրանց համար. դա բոլոր անհող և ամեն տեղից հալածուած ու քշուած համշէնցի հայերի ցանկութիւնն է։

Բայց ահա և ուրիշ օրինակներ հաւաքական միացած աշխատանքի։ Ընդհանուր արտերի («չիֆթլըղ») ու խոտնոցների պատը միասին են քաշում։ Նոյնպէս միասին են պատում սահմանի պատը որ մալը մի կողմից միւսը չանցնի և վնաս չը պատճառի։

Միասին են շինում և ուղղում գիւղի փչացած ճանապարհները ու կամուրջները։

Մալը հովուելու համար միասին են վարձում «չօբնին»։ «Չօբօնը» հերթով մնում է նրանցից ամեն մէկի տանը, որ այնքան կամ այնքան օր պարտաւորւում է նրան պահել և ուտեցնել։ Վարձը տրւում է նայելով ամեն մէկի մալերի թւին. (քիչ մալ ունեցողը քիչ է տալիս). միևնոյն ժամանակ ջոկ վարձ է լինում գոմշամալին, ջոկ՝ հասարակ մալին։

Վերջապէս պէտք է յիշել նրանց զատկական մեռելոցն ու հասարակական մատաղը—«ժօմը»։ Մեռելներին անգամ ջոկ-ջոկ օրհնել չըկայ. տէրտէրը ուղղակի միանգամից օրհնում է բոլորին, դառնալով գերեզմանատան չորս կողմը։ Բայց մեռելներից աւելի հետաքրքրական է նրանց այդ օրուայ միութիւնն ու հասարակական հացկերոյթը։ Այդ տեսակ հացկերոյթները

սարքում են համշէնցիներ տարուայ մէջ և ուրիշ օրերին, նորից միանալով և ուտելիքները իրանցից մէկի մօտ հաւաքելով, մի տեսակ հաւաքական մատաղի սովորութիւն է դա. դրան են ասում—«ժօմ»: Ուտելիք տանելու սովորութիւն ունին նոյնպէս կիրակի ու տօն օրերին եկեղեցու դուռը: Այստեղ ժամաւորները քահանայի հետ միասին նստում են սեղանին, օրհնելով բերողներին և ողորմի ասելով նրանց մեռելների հոգուն:



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԺՇԿՈՒԹԻՒՆԸ

Սև ծովի ինչպէս հայրենական, այնպէս էլ Կովկասեան ափերը խիտ անտառներով են ծածկուած։ Ցածր, դաշտային մասը ամբողջապէս ճահճային տարածութիւն է ներկայացնում անվերջ ու դժնդակ ջերմով։ Հետզհետէ թիւրքահայերի Կովկասեան ափերը գալուց յետոյ՝ թութունի մշակութեան շնորհով խիտ անտառները կտրտւում բացւում են, ճահիճները ցամքում են և ջերմոտ ու ապականուած օդը կամաց-կամաց մաքրւում է չորս կողմից փչող քամիների հոսանքից, թէև ջերմը այդ տեղերից բոլորովին չի անհետացել. ամառ, ձմեռ կրկնւում է։ Նոյն իսկ բարձր, լեռնային մասում, որ համեմատաբար աւելի զով, առողջարար կլիմայ ունի, ջրերն էլ պաղ ու անուշ, էլի ջերմը կայ, թէև ոչ այնպէս խիստ ու երկարատև, ինչպէս դաշտային մասում։

Ջերմը Սև ծովի ափերի, թէ Անատոլիական և թէ մեր Կովկասեան, յատուկ տեղական հիւանդութիւն է, որ հետևանք է երկրի կլիմայական պայմանների՝—թանձր ու խիտ անտառների, շարունակ տեղացող յորդ ու առատ անձրևների, մշտական եկող ու նստող ցօղի և ծովի մօտիկութեան։ Այդ տեղերում, թէ բարձրում և թէ ցածրում—օդը համարեա շարունակ խոնաւ է, անձրևներն անպակաս, գետինը համարեա միշտ թաց, բացի ի հարկէ, շատ բարձրերից, այն էլ տարուայ ամենաչոր ժամանակը։

Խմելու ջուրը տեղ-տեղ ցածրերում շատ վատ է. ուղղակի ճահճային հողի համ տուող աղբիւրներ են. իսկ բարձրերում պատահում են հիանալի, պաղ ու իստակ աղբիւրներ։

Օդի ու ջրի կողմից Սուխումի շրջանում առողջարար տեղերի թւում կարելի է յիշել հայագաղթ գիւղերից Ծէբէլդա, Խօփ ու Փսիրցխայի բաձրերը, իսկ Չէրնօմորի վիճակում Ղօյթա գիւղը։ Այդ տեղերի դիրքը, օդն ու ջուրը հրաշալի է, թէև էլի երբեմն այդ տեղերումն էլ է ջերմը պատահում։

Այդ տեղերում իսկապէս ամենից շատ տարածուած հիւանդութիւնը դա է, որին, բացի երկրի տեղական-կլիմայական պայմաններից, իրանց պարապմունքն էլ է նպաստում։ Այսպէս թութունի քաղը սովորաբար լինում է վաղ առաւօտներն ու երեկոներին, երբ արդէն ցօղը իջած է լինում։ Ինչ խօսք որ շարունակ ժամերով ցօղոտած խո-

տում ոտները թրջելը առանց հետևանքի չի կարող անցնել։ Մեծ պատճառներից մէկն էլ սիմինդրի արտերում գիշերով հսկելն է։ Ցուրտը, ցօղը, քամին, անձրևը անարգել մտնում են նրանց պառկած փոքրիկ խուղերում, ուր համարեա բացօդեայ և կէս անքուն 2—3 ամիս շարունակ պահպանում են արտերը վայրի խոզից ու արջից։ Քիչ թէ շատ վնաս տալիս են և բոստաններն իրանց խիար-ձմերուկով, նոյնպէս և տեղ-տեղ անտառների վայրի պտուղների առատութիւնը։ Տեղական խաղողի տեսակը («ադէսա»-իզաբէլլա) մինչև անգամ դողացնող ու վնասակար է համարւում, ուր նման սալորը, թուզը, վայրի խնձորը, պանտան և այլն, մանաւանդ եթէ ի նկատի ունենանք, որ գիւղացի երեխաները սովորաբար առաւօտից իրիկուն ընկած սարերն ու ձորերը, ծնողների աչքից հեռու և զարթելուն պէս վաղ-վաղ քաղցած փորով ծառերի վրայ են բարձրանում։

Ջերմին շատ մօտիկ նմանութիւն ունի և շատ էլ պատահում է այդ կողմերում օդի մի տեսակ հիւանդութիւն, որին՝ առհասարակ «հաւա» (горячка) են ասում։ Այդ հիւանդութիւնն աւելի պատահում է ամառուայ ամիսներին, գործի տաք ժամանակը։ Պատճառը էլի ոդն ու տեղն են. արևի տակ շատ աշխատելուց բեզարում պառկում են գետնին, քնները տանում. կամ մրսում են, կամ արևն է խփում, կամ թացութիւնն է դիպչում։ Աւելի լինում է արևի տակ շատ բանելուց ու պառկելուց. մէկ էլ գիշերները դուրսը բացօդեայ մնալուց։ Սկզբում հիւանդութեան ընթացքը մօտիկ նմանութիւն ունի ջերմին, այնպէս որ չի էլ հասկացւում՝ ջերմ է թէ «հաւա», բայց կամաց-կամաց հիւանդի սաստիկ բարձրացող ու շարունակ միաչափ տաքութիւնը, անհանգստութիւնն ու անքնութիւնը ցոյց են տալիս, որ հիւանդութիւնը «հաւա» է։

Այդ հիւանդութիւնը երկար է քաշում և շատ էլ վտանգաւոր ընթացք ունի, մանաւանդ եթէ ժամանակին չնայեն, դեղ չանեն, լաւ չպահպանեն։ Շատ առողջ մարդիկ զոհ են գնացել դրան, չնայած իրանց երկաթէ կազմուածքին. իրանց դիմացկունութեանը։ Գլխաւորը պէտք է առանց ուշացնելու, ժամանակ չանցկացրած՝ սկսել գործածել դեղերը, նայած հիւանդութեան ընթացքին ու յատկութեան։ Կայ հիւանդ, որ տաքով է լաւանում, կայ որ սառը բաներով։ Առհասարակ ժամանակին ու տեղին գործ դրած միջոցները ազատում են հիւանդին։ Ազատուելուց յետոյ պէտք է մի առժամանակ զգուշանալ, թէ չէ՝ կարող է կրկնուել և աւելի վտանգաւոր դառնալ։

Համշէնցիների տները մաքուր են, թէև սովորաբար գոմերը միշտ տակի յարկումն են լինում. բայց աղբը չի մնում, շուտ-շուտ մաքրում՝ դուրս են տանում, «ածուն» են լցնում, ուրիշ տեղերի

պէս աղբի դէզեր ու բրգեր չեն շինում։ Այդ կողմից նրանց գիւղերը շատ մաքուր են, բայց և այնպէս գիւղական խրճիթներից անբաժան ծուխը, խոնաւութիւնն ու լոյսի պակասութիւնը նրանց տներում էլ կայ։ Իսկ ձմեռը որովհետև համարեա բոլորը փայտաշէն են, դրանց վրայ աւելանում է և ցուրտը. քամին չորս կողմից փչում է փայտերի ծակ արանքներից։ Եկէք ու հիւանդ շահեցէք այդպիսի տներում։

Վարակիչ ցաւերի տարածուելու գլխաւոր պատճառներից մէկն էլ, իրանց սովորութիւնն է. հիւանդներին այցելելը։ Ոչ մի տեսակ վտանգաւոր վարակիչ ցաւով բռնուած հիւանդին առանձնացնելու սովորութիւն չունեն։ Հիւանդը իրանց հետ պառկում, իրանց հետ ուտում խմում է միևնոյն սենեակում։ Նա ոչ միայն տնեցոց, այլ և իրան այցի եկողների շնորհով ամբողջ գիւղի հետ յարաբերութեան մէջ է լինում։ Մանաւանդ որ հիւանդատես գնացող կանայք երեխաներին էլ հետներն են պտտեցնում առանց որևէ զգուշութեան։

Գիւղացին շատ անգամ գործից ազատ ժամանակ երեխաներին գիտմամբ տանում է վարակուած տեղը, մտածելով՝ որ թէ մէկ օր նրանք էլ պէտք է բռնուեն, աւելի լաւ է հիմա բռնուին, քանի որ գործ չունեն և կարող են նայել։ Գիւղացին հաւատացած է, որ երեխան մի կարգ վարակիչ հիւանդութիւններ անպատճառ պէտք է քաշէ իր կեանքում, ինչպէս՝ ծաղիկ, քութէշ, կարմրուկ, կապոյտ հազ և այլն։ Քանի որ այդպէս է, ինչու չաշխատել, որ երեխան օր առաջ բռնուի, քանի որ պարապ են, որ գործին էլ վնաս չլինի։

Ամբողջ Սև ծովի Կովկասեան ափերի հայ գիւղերում ոչ մի տեղ ոչ բժիշկ կայ, ոչ դեղատուն, ոչ էլ մի հասարակ ֆէլդշէր։ Նրանց համար նոյն իսկ գաւառական շրջուն բժիշկ էլ չի ման գալիս։ Նեղը մնացած ժամանակ կամ մօտիկ քաղաքներն ու աւաններն են գնում և կամ ուղղակի թողնում բախտին։ Միթէ ամենքին ձեռք կը տայ քաղաքից բժիշկ հանել բերել իրանց տեղերը. տասնեակ րուբլիներ են ուզում։ Ո՞րտեղից գտնի գիւղացին այդքան փող։ Շատ էլ ունենայ, հօ միայն այդ չէ. քանի-քանի պակասներ կունենայ. չէ՞ որ ամեն տեղ էլ անիծած փողն են ուզում։ Դրանից յետոյ ինչ մեղադրելու բան կայ գիւղացիներին, որ նրանք շատ անգամ «տիրացուներին» ու մոլլաներին են դիմում՝—«կաշտում», «գիր», «նուսխա», «հօմայիլ» անել տալիս։ Դրանց մօտիկ ու էժան այդ է ճարւում, իրանց ձեռքից էլ այդքան կըգայ։ Մի քիչ իւղ, ձու, աքլոր կըտայ, մի քիչ էլ փող կըտայ թէ որ ունենայ. մի բան կանի, վերջապէս մի կերպ տիրացուի ու մոլլի սիրտը կը շինի։ Բժիշկը որ չի գալիս, նա ինչ անի. որտեղից տայ նրանց ուզած փողը։ Նրանք 40—50 րուբ-

լուց են սկսում. ամեն անգամ ձեռք կը տայ նրան այդքան փող տալը։ Այդքան փող նա ամիսներ արիւն-քրտինք բանելով հազիւ է ըստանում. միթէ հեշտ է հիմա յանկարծ մի ժամում դնել ուրիշի բուռը։

Հիւանդութեան ժամանակ սրբերին դիմել նրանց մօտ բոլորովին չկայ. ոչ էլ սրբի մօտից հող բերելն ու հիւանդին ջրով խմեցնելը։ Ուխտ գնալ համարեա չունին. Էլի հայրենիքում քիչ-շատ գնացել են, Կովկասեան ափերում այդ էլ մոռացել են։ Մէկ որ՝ իրանց հին ուխտատեղերը չկան, մէկ էլ որ՝ թութունի պատճառով ամեն բան մոռացել են, ազատ ժամանակ չունեն։ Վերջին տարիներս հայ կանանցից ոմանք մէկ-մէկ սկսել են ուխտ գնալ Սուխումին մօտիկ Նոր-Աթօնի ռուսաց վանքը՝ երեխանց ծաղկի վտանգից ազատ պահելու համար։

Պէտք է ասել, որ ընդհանրապէս ծաղիկ հիւանդութիւնը նրանց երեխանց համար անվտանգ է անցնում, քանի որ ամենքն էլ լաւ հասկանում են ծաղիկ կտրելու նշանակութիւնը և օր առաջ ամեն մէկը աշխատում է կտրել տալ իր երեխի ծաղիկը։ Ծաղկի համաճարակի ժամանակ՝ երբ յատուկ ծաղկահատներ չեն գալիս, շատ անգամ իրանք տան պառաւներն են իրանց ձեռքով ասեղով կամ մի սուր բանով երեխանց ծաղիկ կտրում, մէկ-մէկից ծաղիկ քաշելով.

Համեմատաբար աւելի շատ զոհեր են տանում երեխաներից կարմրուկը, քութէշն ու կապոյտ հազը, որոնց առաջն առնելու համար համարեա ոչ մի նախապաշտպանողական միջոցներ չունեն.

Ինչպէս ասեցի, ամենատարածուած հիւանդութիւնը նրանց մէջ դողը կամ «ջերմն» է, մանաւանդ ցածր ծովափի գիւղերում։ Դողից հիւանդանում են թէ երեխաներ և թէ մեծեր։ Դողը երբ երկար է քաշում, պատճառում է երբեմն փայծաղի առանձին հիւանդութիւն, որին տեղական բառով «տալաղ» են ասում. այս վերջինը աւելի փոքր երեխաներն են ունենում։ Կրծքի ու թոքերի բարակ հիւանդութիւններ շատ քիչ են պատահում։ Ստամոքսային խանգարումներից աւելի պատահում են այսպէս կոչուած խարանացաւը, կամ ինչպէս գիւղացիք են ասում,—«սրտի այրելը», որ ինչպէս նրանք էլ գիտեն, վատ ու դժուարամարս ուտելիքներից է լինում. այդ ցաւից շատերն են գանգատւում։ Կանանց հիւանդութիւններից պատահում են ամսականի խանգարումներ, երկար ժամանակով արեան չը գալը, որ աւելի բարդւում է դաշտային ծանր աշխատանքը չընդհատելուց։ Բացի այդ սովորական հիւանդութիւններից, համշէնցիների մօտ յաճախ պատահում է լսել գանգատներ մի տեսակ ցաւի մասին, որ ինչքան լսել եմ, շալակով բեռ կրելով քրտնելուց ու պաղելուց է լինում։ Յանկարծ մարմնի մի տեղում սկսում է ցաւել ինքն իրան, առանց պատճառի.

ցաւը մի տեղ չի մնում, ման է գալիս. դրան համշէնցիները «խուլունջ» են ասում (երևի ուրիշ տեղերի «կոլինջն» է)։ Դա շատ տարածուած, բայց անվտանգ, սովորական ցաւ է, որ շուտով կորչում է, բայց էլի յետոյ նորից սկսում։

Թէև երիտասարդութիւնը բոլորովին ազատ է վէնէրական ախտերից, բայց տեղ-տեղ գիւղերում պատահում են այդ ցաւով վարակուած ամբողջ ընտանիքներ, որոնց վարակուելու պատճառը իրանց անզգուշութիւնն ու տգիտութիւնն են եղել։ Գիւղերում այդ ախտը բերում են սովորաբար Թիւրքիայից Կովկասեան ափերը եկած իրանց հայրենակից հարուստ, վաշխառու ցեցերը, որոնք գաղթել ու պանդխտել ցանկացող, բայց նիւթապէս կարօտ մարդկանց մեծ-մեծ տոկոսներով փոխառութիւն անելով, տարին մի-երկու անգամ գալիս են այս կողմերը իրանց զոհերի յետևը—իրանց առնելիքները հաւաքելու, ամեն տեղ հետները բերած ապականութիւնը տարածելով։

Հիւանդների խնամքն ու պահպանութիւնը, ինչպէս ամեն տեղ գիւղերում, նրանց մօտ էլ շատ աննախանձելի է անցնում։ Հիւանդին արած նրանց մեծ խնամքն այն է, որ չեն ստիպում աշխատանքի գնալ, թողնում են տանը, շատ անգամ մեն-մենակ վէր ընկած օջախի մօտիկ. ոչ խօսող է ունենում և ոչ մխիթարող։ Ի՞նչ անէ գիւղացին. գործը, խեղճութիւնն է մարդկանց այդպէս քարացնում։ Ճիշտ է՝ պահեցողութեան-դիէտային մեծ նշանակութիւն են տալիս, բժշկին ամենից առաջ դրա մասին են հարցնում, բայց ինչ օգուտ հարցնելուց, քանի որ իսկապէս ճար չի լինում կատարելու։ Միսն ու բուլիոնը ամեն ժամանակ չեն գտնւում գիւղում. ոչ էլ ցորենի սպիտակ հաց։ Նեղը մնացած գիւղացին էլի իր հին, պապենական, լսած ու իմացած կերակուրներին է դիմում, ծանր ու անմարս խմորեղէններին զոռ տալիս։ Առհասարակ հիւանդներին, մանաւանդ մրսածներին ու հազողներին՝ առաւօտ-իրիկուն թէյ են խմեցնում, իսկ այնպէս առհասարակ չեն գործածում, սովորութիւն չունին, միայն հարուստներն են պահում ու բանեցնում, այն էլ հիւր եկած ժամանակը։ Հասարակ ջրի տեղ հիւանդին երբեմն էլ եփած ջուր կամ թէյ են տալիս, իսկ տաքութեան ժամանակ՝ ծարաւը կտրելու համար հոնի ջուր են խմեցնում։ Առհասարակ ամեն հիւանդի էլ աշխատում են շատ տաք պահել, մի քանի վերմակով ծածկում, գլուխը մանաւանդ սաստիկ փաթաթում, որ ցուրտը չը դիպչի, մինչդեռ ոտները բաց-բաց դուրս են թողնում։

Ժողովրդական բժշկութեան մի տեսակն էլ իրանց բանեցրած տնային անասունների դարմանելն ու բժշկելն է։ Եւ պէտք է նկատել, որ շատ անգամ նրանք մալերին աւելի աջող են բժշկում, քան

իրանց տնեցոց։ Երկար դարերի փորձն ու գիւղացու բարեկեցութեան կախումը անասուններից—սովորեցրել են նրանց առանձին խնամք տանել մալերի վրայ, նրանց տրամադրութիւնից ու հայեացքից հասկանալ նրանց հալն ու ցաւը։

Ես այստեղ կը բերեմ նրանց բժշկական միջոցներից մի քանի հատ միայն, իբրև նմուշներ ժողովրդական հնարագիտութեան, թողնելով ժողովրդական բժշկութեան՝ թէ մարդկանց և թէ մալերի մանրամասն ու լիակատար ուսումնասիրութիւնը ուրիշ ժամանակի և ուրիշ անգամի։

---

## ԴԵՂԵՐ ՈՒ ՄԻՋՈՑՆԵՐ.

### I. Մարդկանց հիւանդութիւններ.

1. **Ամլութիւն.** Տնային դեղերի մէջ ամենից աւելի գործածականը ամուլ կնոջ սեռական մասերի սրբելն ու հովութիւն (ՃՃԼԻ) կորելն է։ Նոյն միջոցն են գործ դնում և մալերի վերաբերմամբ։

2. **Այրուածք.** «Օնձուղի» *) արմատը հանում են գետնից, մաքրում, լուանում են վրայի հողն ու կեղևը, միջից ձեղքում, կիսում, անլի իւղով տապկում և ապա քսում այրած տեղին։

«Մլմլուկի» **) տերևները չորացնում, բարակ փոշի են անում, ապա ցանում այրուած տեղը, առաջուց այրուածքի վրայ անլի իւղ քսելով, որ տերևները չը կպչեն ու չը ցաւեցնեն։ Ձէթի հետ խառնում են քիչ չը հանգած կիր ու քսում։ «Արաս» (բրդէ) կտորը այրում, մոխիրը խառնում են ձուի դեղնուցի հետ ու քսում։

Եթէ ոչինչ չը լինի, քսում են միայն կարագ. իսկ եթէ այդ էլ չըլինի, աղի իւղը գցում են ջուրը, որ աղը դուրս տայ, ապա հալում ու քսում։ Իսկ տաքութիւնն ու կսկիծը պակսեցնելու համար քսում են պաղ բաներ, ինչպէս՝ սառը ջուր, թանաք, մածուն, թան և այլն։

Մի քանիսն էլ փորձել են, որ նաւթը թէև սկզբում մի քիչ վառեցնում է այրած վէրքը, բայց շուտ է լաւացնում։

Այրած մասը պէտք չէ փաթաթել. ցրտից ու դրսի օդից ազատ պահել. դեղը քսել, բայց չը կապել. ինչքան կարելի է՝ օջախին մօտիկ կենալ, որ տաք մնայ, ցուրտը չը դիպչի։

3. **Ատամնացաւ.** Ատամի ցաւի համար բոլոր յայտնի դեղերին ա-

---

*) Խոտ է, ճանապարհի ափերին է բուսնում, սովորաբար՝ տաք չը կոխած տեղերը։

**) Խոտ է, տերևները ձմեռն էլ կանանչ են մնում. չեն թափւում, կինում է աւելի կաղնի թփերի տակին։

ռանձին նշանակութիւն չեն տալիս, թէև գործ են ածում։ Ամենաարմատական միջոցը համարում են ուղղակի քաշել-հանելը։ Ցաւը մեղմացնող և մասամբ կտրող դեղերից գործ են ածում.

Մեխակի իւղը, բամբակի վրայ կաթեցրած, դնում են ցաւած ատամի վրայ։

Բերանն օղի են առնում, մի քիչ պահում ցաւած ատամի կողմը և ապա թափում. այդպէս այնքան կրկնում են, մինչև որ ցաւը կը թմրի։

Ամենաազդու դեղը համարում են գոմէշի մէզը, որ օղու պէս բերանն են առնում և մի քիչ յետոյ թափում։

4. Գլխացաւ. Աղը ծեծում, բովում են, յետոյ տաք-տաք՝ կտորի վրայ ցանում, փաթաթում են ճակատին։

Աղն ու սխտորը ծեծում, խառնում են, գլուխն ածիլում և ածիլած տեղը դնում։

Քացախի «մէ՛րուտը» (մակարդը) շորով ճակատին են կապում։

Ճակատից կամ քթից արիւն են քաշում։

Գլխին դնում են «մուցօմը» (մոմը քամելուց յետոյ մնացած տակիճքը)։

5. Դող.—Ամենայայտնի ու տարածուած դեղը՝ խինին է։

Ասում են, որ 20 հատ եղունգի կտրած ծայրեր շան մազի հետ միասին կրակի վրայ դնել, այրել ու ծխից հոտ քաշել տալ հիւանդին՝ օգուտ է։

Էլի ասում են, թէ դողը կտրելու համար շատ օգուտ է մէզ խմելը։

6. Լուծ. Լուծը կտրելու համար, թէ որ երկար է քաշում և ինքն իրան չի կտրվում, տալիս են բրնձի ջուրը. ուտեցնում են հին, մի քանի տարուան կաղինը. հոնի չորը եփում, ջուրը խմեցնում են։

7. Խարանգացաւ («սրտի Է՛րիլը», изжога)։ Անանուխի կաթիլներ են խմում։

8. «Խուլունջ». Միակ ու ամենաազդու միջոցը ասեղն է։ Որտեղ որ ցաւում է, ուղղակի ասեղ են կոխում. ցաւը չի իմացվում, իսկոյն անցնում է։

9. Կապոյտ հազ—«կօկիծ»։ Դրա դէմ միակ և ամենալաւ դեղը իշի կաթ խմելն են համարում։

10. Կատաղած շան կծածը. Դրա դէմ միայն մի միջոցն են գործածում, այսպէս կոչուած—«փայփըրլօմա»։ Այդ միջոցի էութիւնը կայանում է մասամբ կախարդական, մասամբ էլ բժշկական գործողութեան մէջ։ Այդ բանը ամենքը չեն կարող անել. դրա համար մասնագէտ հէքիմներ կան։ Հէքիմը հիւանդին առանձնացնում է մի սենեակում,

նրա վրայ այլ և այլ կարգումներ անում, ի հարկէ միայն իրան հասկանալի լեզուով, և ապա նրան սաստիկ քրտնեցնում է։ Նրա կարգումներին ոչ մի նշանակութիւն չը տալով, մնում է ենթադրել, որ քրտնեցնելը այսպէս թէ այնպէս բարերար ազդեցութիւն է անում հիւանդի վրայ՝ քանի որ, ինչպէս հաւատում են ամենքը, «փայփրլօմին» ենթարկուած կատղած շնից խածուած հիւանդները համարեա բոլորն էլ ազատուել են։

11. Կարիճի կծածը. Կծած վէրքի վրայ մարդու աղբ են դնում տաք-տաք։ Կնոջ կաթ են խմեցնում։ Կաթի մէջ ծծումբ խառնած՝ դնում են վէրքի վրայ։ Վերցնում են մի քանի կարիճ, շող երկաթի վրայ այրում և ապա ցանում կծած տեղի վրայ։ Փորձել են, որ մեղր խմելն էլ է օգնում։ Կարիճ են բռնում, շշի մէջ գցում, վրան ձէթ լցնում, և պահում, կարիճ կծած ժամանակը բանեցնում, ձէթը քսելով վէրքին։

12. «Կեծուկ» (բերանի դրսի խոց). «Չախմախով» խոցի վրայ կայծ են հանում. խոցը կորչում է։

13. Կողկի ծակոց. Աղը կամ թեփը տաքացնում, դնում են կողքին։

14. Կտրուած վէրք. Բացի մի քանի տեսակ «մհլոմներից» գործ են ածում «եարաօթի» կոչուած խոտի տերևները. դնելուն պէս՝ շուտով բերանը կապում, լաւացնում է։ Վէրքի բերանը կապելու համար նոյնպէս կտրած տեղին դնում են թութունի տերև։

15. Ջազ. Ջասարակ կամ սալէպի թէյ են խմում։

16. «Ջաւա». Այդ հիւանդութեան դէմ շատ տեսակ դեղեր ու միջոցներ են գործ դնում. մէկը չէ օգնում, միւսն են անում։ Երբ տեսնում են, որ տաք քրտնեցնող, դեղերով հիւանդը չի լաւանում, դիմում են զովացնող, պաղ միջոցներին։ Ամեն հիւանդութիւն միակերպ ընթացք չի ունենում. կայ հիւանդ, որ տաքով է լաւանում, կայ՝ որ պաղով։ Ամենից առաջ հիւանդին աշխատում են մի կերպ քրտնեցնել։ Դրա համար այս միջոցներն են գործ դնում։

Մեղր են քսում հիւանդի մարմնին, յետոյ առնում են նաշադիրը ծեծում ու ցանում քսած տեղերին, ապա լաստենու կամ «ջրխմի» (դդմի մի տեսակ է) տերևները ցանած տեղերի վրայ դնում, հիւանդին անկողնում տաք-տաք փաթաթում, որ քրտնի։ Շատ անգամ էլ նաշադրի հետ օղի են խառնում, այնպէս քսում, որ աւելի ազդէ։ Երբեմն էլ իրան, հիւանդին, մի քիչ նաշադիր են խմեցնում, որ «ցաւը դուրս քաշէ»։

Այծը մորթում են և չը սառած՝ հիւանդին մերկացնում, տաք-տաք մորթու մէջ փաթաթում են. հանած ուղեղն էլ ճակատին դընում, իսկ փորոտիքը ոտներին կապում։

«Օնճուղի» կամ լաստենու տերևները կրակի վրայ խաշում, բերում լցնում են հիւանդի վերմակի տակ, հիւանդին վրայից տաք-տաք ծածկում։

Թանձր աղաջրում մի շապիկ են թրջում, հիւանդին հագցնում, 3—4 ժամ թողնում, որ քրտնի։

Կամ թէ վերցնում են աղը ծեծում, մեղրով շաղւում ու հիւանդի մարմնին քսում. քսած տեղը տերևներ դնում և տաք վերմակով ծածկում։

Գաղջ սապնաջրում թրջում են սաւանը և փաթաթում նրանով հիւանդին, կրկնելով այդ միքանի անգամ ամեն ցամքելուց յետոյ, 5—6 ժամ շարունակ։

Վերջապէս երբ ոչ մի կերպ չեն կարողանում քրտնեցնել, հիւանդին դնում են ուղղակի մի քիչ հովացած փուռը, ուր մնում է մինչև քրտնելը և կամ ինչքան որ կը դիմանայ։

Եթէ այս դեղերով հիւանդը չի քրտնում, սառը միջոցներն են գործ դնում։

Հիւանդին ուղղակի «կօլն» (կանգնած ջրի փոս) են դնում, կամ մի փոս են փորում, լաստենու տերևները կտրտում, տակն են լցնում, հիւանդին վրան պառկեցնում, մէջը ցեխ ու վայրի եփած խնձոր լցնում, վրան էլ ջուր, որ մարմինը ծածկուի և թողնում այդպէս՝ ինչքան որ կը դիմանայ։ Տեղն ու տեղը քացախ էլ են խմեցնում։

Վայրի խնձորը ճզմում, ոտն ու գլուխը փաթաթում են։ Աղն ու սխտորը ծեծում են. հոնի ծառի տակի հողի ու մածնի հետ շաղվում, խառնում են և դնում հիւանդի ճակատին, մէջքին ու ոտներին։

Դեղձի ծառի տակի հողը քացախով շաղվում, փաթաթում նրանով հիւանդի ածիլած գլուխը, մէջքն ու ոտները։

Մոշը ժողովում, ջուրը քամում, եփում են և սառչելուց յետոյ հիւանդին խմեցնում։

17. Ճինու. Դրա դէմ միայն խօրասան են գործածում։

18. «Մկչչրմուկ". Սա մի տեսակ ցաւ է, որ մատների արանքումն է լինում. այդ տեղերը սաստիկ քոր են գալիս ու ճեղքվում են։ Դրա դէմ այս միջոցն են գործ դնում. մատների ճեղքած տեղը վերցնում մի ոջիլ են դնում. քորը անցնում է ու լաւանում։

19. Միզակապութիւն. Եթէ մրսելուց է լինում առաջ եկած, վերցնում են գդումը կաթով եփում և տաք-տաք դնում փորի ներքև. միջատեղի վրայ։ Եթէ գդում կը գտնուի, կարելի է շինել ալիւրէ կամ թեփէ „ճաշ" (խաշիլ) և տաք-տաք կպցնել փորի ներքև։

Լաւ դեղ է համարվում նոյնպէս մաղդանոսը. նրա արմատը եփում, ջուրը խմեցնում են հիւանդին, իսկ մաղդանոսն էլ խաշում,

դնում են միջատեղին։ Առհասարակ այդ հիւանդութեան դէմ տաք խաշիլ պէտք է գործածել։

20. **Մկնդեղից թունաւորուիլ.** Հողը փորում, թունաւորուած մարդուն մերկացնում, մէջն են դնում մինչև գլուխը. Հողը թոյնը դուրս է քաշում մարմնից։

21. **Ոսկրացաւ.** Դուրս ընկած կամ կոտրած ոսկորի համար նոր տրեխցու կաշին եփում են թանձր աղաջրում, ապա փաթաթում ցաւած տեղը և ամուր կապում։

22. **„Տալաղ“** (փայծաղի ուռոյց)։ Մեղր ու կիր իրար հետ շաղախում, դնում են ուռած կողմը մինչև ուռուցքի անցնելը։

23. **Փորի ցաւ եւ „ածեջու“.** Սովորական հասարակ փորի ցաւի համար լաւ դեղ է համարվում օղին։

Լաւ է նոյնպէս ոտները տաքացնել, տապանները դէմ տալով կրակին։

Փորի ցաւի համար արջի լեղի էլ են գործածում։

Սանջուի համար վերցնում են հաւի լեղին, մի գդալ ջրում խառնում ու խմում։

Էլի վերցնում են գետափից երկու մանր քար («չայդաշի»), մէկ-մէկ թրջում ջրում և պորտի վրայ կապում։

24. **«Քարկեսխ».** Սա էլ ոտների մի տեսակ ուռուցք է, որ լինում է սովորաբար բութ մատին կամ կրնկին մօտիկ։ Պէտք է փլցնել և տաք բանով դաղել։ Ապա պէտք է զգուշանալ, որ ջուր չը դիպչի։

25. **„Քեօր“** (**Երեսին կամ գլխին դուրս տուած ցաւ**)։ Դրա դէմ միքանի տեսակ դեղեր են անում։ Վերցնում են կրակի վրայի մոխիրը, հետը միքիչ անլի իւղ խառնում ու քսում խոցին։

Կապոյտ քարը („գեօզդաշի“) ջրում հալում, բաց են անում և. ապա մօտով քսում ցան եղած տեղին։

Սխմինդրի հատիկը երկաթի վրայ չորցնում են, ապա մի ուրիշ երկաթէ բանով նրան. սղմում, միջից իւղ են հանում և տաք-տաք քսում են չան եղած տեղին։

Երեսին դուրս տուած ջրջրուկ խոցերի համար գործ են ածում ամելի կարմիր սնդիկի օծելիքը։

26. **Օձի կծածը.** Կծած տեղից վեր կապում են, վէրքը դաղում։ Պաղ բաներ են քսում—մածուն, ցեխ, թան։ Վէրքից ծծում են, կամ թէ՝ գորտ կամ հաւ են դնում վէրքի վրայ, որ միջի թոյնը դուրս քաշէ։ Նոյնպէս „սիրող“—պատառուկ խոտից բերում խաշում են և տաք-տաք դնում վերմակի տակ, կծած անդամի շուրջը, սաստիկ քրտնեցնում։

---

## II. Մալերի հիւանդութիւններ.

1. Գալլի կծածը. Խոզկաղնի ծառի կեղևը մանր կտրտում, ջրով եփում են այնքան, որ թանձրանայ. եփելուց յետոյ՝ ջուրը քսում են կծած վէրքին։

Խոզի ճարպը հալում են և տաք-տաք դաղում վէրքը։

2. Մալի ոչլոտիլը. Ոչլոտիլը սովորաբար պատահում է փոքրիկ հորթերին ու կովերին, մանաւանդ ձմեռը՝ գոմերում երկար պահելուց յետոյ։ Եթէ երկար շարունակուի, մալը կը նիհարի և կարող է մինչև անգամ սատկել։ Եթէ քիչ է ոչլը, թութունը ջրով եփում են և նրա ջրով մալին լողացնում։ Իսկ թէ շատ և վատ տեսակից լինի, (սև), մենակ թութունի ջուրը չի օգնիլ՝ հետը մի քիչ մկնդեղ պիտի խառնել։

3. „Չօնգ“. Այդպէս են կոչում այն հիւանդութիւնը, որ ստանում են մալերը մրսելուց յետոյ։ Մալը ախորժակ չի ունենում, չի ուտում, տրամադրութիւնը կորցնում է, հայեացքն ու արտայայտութիւնը տխուր են երևում, հետզհետէ ույժից ընկնում, նիհարում է։ Այդ նշանները տեսնելուն պէս, գիւղացին իսկոյն կասի, որ մալը մրսել է, «չօնգ» է բռնուել։ Առաջին և միակ դեղը արիւն առնելն է։ Մէջքի վրայ յատուկ տեղից մի-քիչ կտրում են, մի-քիչ պոչից խազում, քիչ-քիչ էլ ոտներին, կճղակների մօտից են կտրում, և թէ որ արիւն է դուրս գալիս, դրանով վերջանում է բանը. մալն ազատվում է. Եթէ «չօնգ» լինի բռնուած, կտրելուն պէս ուղղակի արիւն չի դուրս գալ. մինչդեռ առողջ մալին երբևիցէ ոտներից էլ կտրէք, իսկոյն արիւն դուրս կը գայ։ Պէտք է աշխատել, որ անպատճառ արիւն դուրս գայ. դրա համար կտրելուց յետոյ, ձեռքով այնքան քաշքշում, տրորում են կտրած կաշուի բերանը, մինչև որ արիւն է երևում։ Արիւնը դուրս գալուց յետոյ՝ մալը լաւանում է։ Երբեմն կտրելը կրկնում են, եթէ առաջին անգամ լաւ կտրած չեն լինում և կամ թէ՝ չի օգնում։

4. „Սինկիլ“. Երբեմն մալերի փորի տակից, ծծի մօտիկ սնկանման մի աւելորդ ու վնասակար միս է գոյանում. որ եթէ թողնուի, ինքն իրան կաճի, կը մեծնայ, մալին վնաս կը տայ, ծծերը կը փչացնի։ Դրան „սինկիլ“ են ասում։ Ուղղակի կտրում են. մէջը կաղնի պէս փոքրիկ բազմաթիւ խուլեր կան. մէկ-մէկ հանում են և վերջը տաք-տաք երկաթով դաղում։

5. „Քեօր“. Մի տեսակ վարակիչ ցաւ է, որ աւելի պատահում է հորթերին և դուրս է տալիս մարմնի ամեն [illegible] աւելի գլխին՝ դնչի մօտերքը։ Դրա համար՝ խոզի վրայ ծծումբ են ցանում և տաք-տաք երկաթով դաղում։ Իսկ թէ բերանում դուրս տուած լինի, եղունգով կամ դանակով են կտրում։

6. „Քօբան“. Մի տեսակ ուռուցք է, որ դուրս է տալիս մալե-րի մարմնին. Դրա ամենալաւ դեղն է՝ ծծմբի „մուշամբա“ փաթաթե-լը. Ծծմբած կտորը—„մուշամբան“ մոմի պէս, նեղ-նեղ կտրտում են և ուռուցքի չորս կողմը դնում. դրանց մէջտեղն էլ ուրիշ նեղ ու կլոր „մուշամբաներ“ են դնում և յետոյ վառում, ուռուցքը այրում. Վերջը մի տախտակի կտորի վրայ մեխեր են ցցում և նրանով խփում վէրքին, արիւն հանում.

---

## Ահա եւ միքանի նախապաշտպանողական միջոցներ.

Ընկզենու տակ նստելը վնասակար են համարում. օձը կարող է դիպչել, կամ՝ ինչպէս իրանք են ասում, „հաւան չալմիշ կընէ“. Դրա համար՝ նախապէս ծառից մի փոքր ոստ են կտրում տերևներով և դնում ճակատին, ֆէսի տակից.

Արիւնի ապականութեան և առհասարակ արիւնը մաքրելու և կազդուրուելու համար ընկզենու տերևները ջրով եփում են և առա-ւօտ-իրիկուն ջուրը խմում են.

Ատամը չը հարելու համար պէտք է „իմփուի“ (խոտէ—папоротникъ) ծիլը ծամել.

Ճարունակ կաթ ուտելը լաւ չեն համարում. ասում են, որ ճի-ճու կը գոյացնէ. Նոյնն են ասում և խակ սիմինդր շատ ուտելուն համար.



## ՄԱՀ, ԹԱՂՈՒՄՆ ՈՒ ՄԵՌԵԼՈՑ

—

Սրանք էլ են հաւատում, թէ մարդու մահուան օրը նախապէս որոշուած ու գրուած է ճակատին, և որ ոչինչ չի կարող հեռացնել կամ մօտեցնել նրան։ Ընդունում են նոյնպէս, որ ամեն մի մարդ մի աստղ ունի երկնքում, երբ օրը գալիս է, աստղն ընկնում է և մարդն էլ մեռնում։

Մեռնելու ժամին, եթէ մեռնողը բարի է, բարի հրեշտակն է գալիս, իսկ թէ չար՝ չարն է գալիս հոգին առնելու։ Բարի մարդը հանգիստ ու թեթև է հոգին աւանդում, իսկ չարը դժուար ու տանջուելով։

Երբ մէկը մեռնում է, տանը խրարանցում է ընկնում. տնեցիները սաստիկ լաց ու կոծ են բարձրացնում. հարևանները գալիս մեռելի երեսը ուղղում են դէպի արևելք, շորերը հանում, աչքերը ծածկում, ձեռքերը կրծքին խաչաձև ծալում, ապա լողացնում և պատանքի մէջ փաթաթում։

Մեռելը նոյն օրն և եթ թաղում են, առանց օրերով սպասելու, աշխատելով արևը մայր չմտած՝ մեռելը հողին յանձնել։

Սովորաբար մեռելը դնում են «ճաղբի» (նաժ) մէջ, դագաղ չեն շինում։ Թաղելու ժամանակ՝ մեռելը «ճաղբից» հանում են և այնպէս են դնում, «ճաղբը» թողնում գերեզմանի թմբին։ Մեռնողների համար յատուկ պատարագ չեն անել տալիս։ Տան կարգը կատարելուց յետոյ, ուղղակի տանում են գերեզմանատուն, երբեմն միայն առաջ եկեղեցի են տանում, բայց էլի պատարագ չեն անել տալիս. մի «հոգւոց» էլ այնտեղ են ասում և ապա այնտեղից տանում հանգստարան։

Մեռելի լողացրած տեղը ոչ մոմ են վառում, ոչ կանթեղ, ոչ էլ վերցնելուց յետոյ քար դնելու սովորութիւնն ունին։

Նոյնպէս չկան նրանց մօտ յատուկ հրաւիրուած լալկան

կանայք։ Բարձր ձայնով լալիս են աւելի մօտիկ ազգականները, իսկ սովորաբար ցածր ձայնով բոլոր կանայքն էլ լռիկ, մնջիկ մասնակցում են։ Նրանց կանայք մինչև գերեզմանատուն հետները գնում են. սպասում են մինչև մեռելի հողի մէջ դնելը, ապա վերադառնում են, առաջուան պէս ամբողջ ճանապարհին, մինչև տուն հասնելը, լաց ու կոծ անելով։

«Ճաղբը» տանում են ձեռքերով մի քանի հոգի, ճանապարհին շուտ-շուտ փոխուելով։ Ամեն մէկը իր պարտքն է համարում մօտենալ «ճաղբին» և օգնել տանելուն։

Սովորաբար նրանց մօտ գերեզման փորում են հարևանները, ձրի։ Փորում են սովորական խորութիւնով ու լայնութիւնով. մօտ 2 արշին խորը և 1 արշին լայնութիւնով, նայած տակի հողի յատկութեան ու ջերմին։

Մեռելը գերեզման դնելուց առաջ ազգականները մօտենում, համբուրում են ու լաց լինում։ Յետոյ հանում են «ճաղբից» և այնպէս իջեցնում հողը։ Քահանան օրհնում է հողը մօտիկ ազգականի ձեռքում և գցել է տալիս գերեզմանի մէջ։ Նրան հետևում են բոլոր յուղարկաւորները, մի-մի բուռ հող գցելով մեռածի վրայ, ասելով՝ «Աստուած օղորմի հոգուն»։ Գերեզմանը հողով լցնելուց յետոյ, վրան թումբ են շինում, «ճաղբը» վրան թողնում։

Թաղման կարգը կատարելուց յետոյ բոլոր յուղարկաւորները նստում են գերեզմանին մօտիկ, ննջեցեալի տնից բերած հոգեհացը ուտելու։ Հոգեհացի համար առանձին մեծ պատրաստութիւններ չեն տեսնում. ոչ եզ են մորթում, ոչ էլ ոչխար։ Տանում են ինչ որ իրանց տանը գտնւում է. շատ-շատ դրսից բրինձ են առնում, փլաւ եփում, հասարակ կամ կաթով, հետը վերցնում մածուն, ձուածեղ, բարակ հաց՝ եթէ ուտիս է, իսկ պասին պասուց բաները՝ թթու, սոխ, լոբիա և այլն. գինի ու օղի չեն առնում։ Հացն ուտելուց յետոյ ցրւում են ամենքը, կրկնելով իրանց օրհնութիւնը մեռածի հոգուն, և մխիթարելով մնացողներին, գնում են իրենց գործի, դրանով էլ վերջանում է ամեն բան։ Այնուհետև ոչ գերեզման են գընում-գալիս. ոչ առաւօտ-իրիկուն մինչև ութ օր եկեղեցի,

ոչ գերեզմանի հող քսել և այլն: Մարմինը հողին յանձնելուց յետոյ սովորաբար ամեն բան վերջանում է, միայն Տրապիզոնի մօտերքից եկած գիւղացիներն են, որ թաղելուց յետոյ էլի մի երկու-երեք օր առաւօտները գալիս այցելում են գերեզմանը, լալիս, աղօթում, խունկ ծխում, ննջեցեալին յիշում և նորից տուն գնում. միւսները այդքան էլ չեն անում:

Համշէնցիների սովորութիւնով գերեզմանօրհնէք կամ մեռելոց կատարում են տարին մէկ անգամ, Զատկի շաբթին, սկսած երկուշաբթի օրից մինչև Նոր կիրակին: Այդ շաբթին ամեն մի գիւղ ջոկ-ջոկ մեռելոց է անում, և որովհետև ամեն մի գիւղի մեռելոցի հանդէսին միւս գիւղերից գնացողներ են լինում, դրա համար մօտիկ գիւղերը առաջուց իրար մէջ որոշում են մեռելոցը կատարելու օրը, այնպէս որ իրար չեն խանգարում: Մեռելոցը մեծ հանդէսով են կատարում. այդ օրը ամեն տնից կերակուր է գնում եկեղեցի, կաթ, մածուն, փլաւ, ձուածեղ, խմորեղէն և այլն, ինչ որ գտնւում է գիւղում: Կէսօրին մօտիկ քահանան տիրացուներով գնում է հանգստարան, չորս կողմը դառնալով միանգամից օրհնում է բոլոր մեռելներին, և ապա գալիս է, սեղան են դնում. բոլոր ուտելիքները մէջտեղն են բերում: Քահանան օրհնում է և բոլորը միասին նստում են հացի, տղամարդիկ առանձին, կանայք առանձին: Ճաշից յետոյ երբեմն գօտեմարտ են անում կամ նուագում, պարում են և ապա երեկոյեան ցրւում տները:

Մեռելների վերաբերմամբ կան հետևեալ նախապաշարումները:

1. Նոր փորած գերեզմանի հողը եթէ շուտ իջնի, հաւասարւի, նշան է որ մեռելը արդար է եղել:

2. Կատուն որ մեռելի վրայից անցնի, մեռելը «խօրթաղ» կը դառնայ:

3. Սպանուածի հոգին իսկոյն ուղղակի տեղը չի հասնում, սպասում է մինչև նախասահմանուած ժամանակի լրանալը, որ նշանակուած է եղել սպանուողի կեանքի համար: Երբ լըցւում է այդ ժամը, նա էլ այն ժամանակն է տեղը գնում:

4 Երբեմն հիւանդի համար կարծում են, թէ մեռելից վա-

խած կըլինի։ Այդ տեսակ հիւանդին տանում են հանգստարան, նրա շուրջը 3 անգամ ման բերում և 3 անգամ ծունր չոքեցնում, ասել տալով «իմ ցաւիցս դուք առէք, որ ես պէտքընոմ (լաւանամ)։

5. Մեռելատանը մինչև մէկ տարի ոչ թուխս կը դնեն, ոչ շերամ կը պահեն։ Թխսի տակից ելած ձագերը գետինը կը փորփորեն և փորած հողը մեռելի աչքերը կը լցուի, իսկ շերամի քաշած թելը աչքերը կը կապէ, երկու դէպքումն էլ մեռելը հանգիստ չի լինիլ։

6. Ցուղարկաւորութեան միջոցին եթէ մեռելի վրայ անձրև կաթէ՝ 40 օր անձրև կը գայ։

7. Մեռելից էլ կարող է «կեօխ» լինել։ Եթէ մէկը նոր ննջեցեալի տնից մի ուրիշի տուն է գնում, անպատճառ նրանց կ'գգուշացնի, որ վեր կենան ոտի կանգնեն։ Առաջ եկողը պիտի նստի, յետոյ տնեցիք. թէ չէ տնեցիք բոլորն էլ կը հիւանդանան, «կեօխ կը բռնուեն»։

8. Երաշտի ժամանակ անձրև բերելու համար, կտրում են մի նոր մեռելի գլուխ, ամուր թոկով կապում են և գցում ծովը. բայց գլուխը ծովում չեն թողնում, թէ չէ սարսափելի հեղեղ կը գայ։

9. Մի աղբիւրից թէ որ երկու հոգի միասին ջուր խմեն, միաժամանակ էլ կը մեռնեն։

10. Նոյնպէս միասին հաց ուտելիս՝ վերջացնելուց յետոյ գդալները իրար հետ միաժամանակ պէտք չէ ցած դնել, թէ չէ միաժամանակ էլ կը մեռնեն։

11. Տնից փայտը ուսին դուրս գնալը լաւ չէ. տնից մեռել կը լինի։

12. Տան չորս կողմը որ պտոյտ գան, հայրն ու մայրը կը մեռնեն։

---

## ՀՈԳՈՒ ԵՒ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ ԿԵԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Համշէնցի հայը ընդունում է, որ մայն էլ մարդու պէս հոգի ունի. մայը որ հոգի չունենար, ինչպէս պէտք է ապրէր։ Նա մայերին և առհասարակ կենդանի արարածներին ան-

խած կըլինի։ Այդ տեսակ հիւանդին տանում են հանգստարան, նրա շուրջը 3 անգամ ժան բերում և 3 անգամ ծունր չոքեցնում, ասել տալով «իմ ցաւիցս դուք առէք, որ ես պէտքընոմ (լաւանամ)։

5. Մեռելատանը մինչև մէկ տարի ոչ թուխս կը դնեն, ոչ շերամ կը պահեն։ Թխսի տակից ելած ձագերը գետինը կը փորփորեն և փորած հողը մեռելի աչքերը կը լցուի, իսկ շերամի քաշած թելը աչքերը կը կապէ, երկու դէպքումն էլ մեռելը հանգիստ չի լինիլ։

6. Ցուղարկաւորութեան միջոցին եթէ մեռելի վրայ անձրև կաթէ՝ 40 օր անձրև կը գայ։

7. Մեռելից էլ կարող է «կեօխ» լինել։ Եթէ մէկը նոր ննջեցեալի տնից մի ուրիշի տուն է գնում, անպատճառ նրանց կ'գգուշացնի, որ վեր կենան ոտի կանգնեն։ Առաջ եկողը պիտի նստի, յետոյ տնեցիք. թէ չէ տնեցիք բոլորն էլ կը հիւանդանան, «կեօխ կը բռնուեն»։

8. Երաշտի ժամանակ անձրև բերելու համար, կտրում են մի նոր մեռելի գլուխ, ամուր թոկով կապում են և գցում ծովը. բայց գլուխը ծովում չեն թողնում, թէ չէ սարսափելի հեղեղ կը գայ։

9. Մի աղբիւրից թէ որ երկու հոգի միասին ջուր խմեն, միաժամանակ էլ կը մեռնեն։

10. Նոյնպէս միասին հաց ուտելիս՝ վերջացնելուց յետոյ գդալները իրար հետ միաժամանակ պէտք չէ ցած դնել, թէ չէ միաժամանակ էլ կը մեռնեն։

11. Տնից փայտը ուսին դուրս գնալը լաւ չէ. տնից մեռել կը լինի։

12. Տան չորս կողմը որ պտոյտ գան, հայրն ու մայրը կը մեռնեն։

---

## ՀՈԳՈՒ ԵՒ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ ԿԵԱՆՔԻ ՄԱՍԻՆ

Համշէնցի հայը ընդունում է, որ մալն էլ մարդու պէս հոգի ունի. մալը որ հոգի չունենար, ինչպէս պէտք է ապրէր։ Նա մալերին և առհասարակ կենդանի արարածներին ան-

շունչ ու անշարժ էակներից ջոկելու համար գործ է ածում ուղղակի «հողըւեօր մալ» խօսքը, որ հաւասարապէս վերաբերում է թէ մարդուն և թէ կենդանիներին։ Հոգի ասելով նա հասկանում է այն շարժումը, եռանդն ու կենդանութիւնը, որ յատուկ է բոլոր կենդանի էակներին։ Բայց այն կենդանութիւնը նա ընդունում է ոչ թէ իբրև ամբողջ օրգանիզմի, կեանքի գործունէութեան հետևանք, այլ հակառակը՝ այդ կեանքն ու արարածների գոյութիւնը նա ընդունում է ինչպէս հէնց այդ օրգանիզմի մէջ ապրող ու պահուած, անտեսանելի հոգու արդիւնք, նրա հետևանքը։ Հոգին գնում է, կեանքն էլ ոչնչանում է, գոյութիւնը դադարում։ Այնքան որ մարդու և մալերի հոգու մէջ այս տարբերութիւնն է գնում, որ մալերի մեռնելուց յետոյ, նրանց հոգին գնում, կորչում է, անասնի հետ ուղղակի մեռնում է, մինչդեռ մարդու մեռնելուց յետոյ, նրա հոգին չի մեռնում, կենդանի է մնում, մարմնից բաժանուած ապրում է իր համար նշանակուած տեղում, սպասելով վերջին դատաստանին, Քրիստոսի գալստեան, որ մարմնի հետ միանալով, միւս աշխարհում ստանայ իր հատուցումը։

Նա հաւատում է, որ այս աշխարհից դուրս կայ ուրիշ աշխարհ, յաւիտենական հանդերձեալ կեանք. և իր կեանքի նպատակն է ապրել այնպէս, որ միւս կեանքում արքայութեան արժանանայ։ Դա այն տեղն է, որ նշանակուած պահւում է բոլոր արդարների համար։ Նրան ասել են, որ այս աշխարհում բոլոր նեղութիւն, աշխատանք, տանջանք ու հալածանք քաշողները—միւս կեանքում խաղաղ ու հանգիստ կեանք են անցնելու, առանց արևի ու ցրտի տակ տանջուելու և մի կտոր հացի համար ողջ տարին հողի ու քարի հետ կռուելու։ Եւ նա սպասում է միամիտ սրտով, անշէջ յոյսով, այդ յաւիտենական հանգստին, երբ պէտք է վերջապէս վերջ տրուի նրա չարքաշ կեանքին, հանգիստ կեանք սկսուի նրա համար առանց հացի համար կիսամաշ մտածմունքների։

Դրա համար նա այս աշխարհում օր առաջ պատրաստւում է. իրան մաքուր է պահում, աշխատում է քիչ հայհոյել, թէև անիծած հողի գործն այնպէս է, որ եթէ չը հայ-

հոյլի, գործը առաջ չի գնալ։ Տանեցոց «չըր քճըլի» ծուլութիւն կանեն, բան չեն անիլ. մալին կը հայհոյէ առաջ չի գնալ։ Ինչ, արած. ինչքան կարող է իրան զսպում է, մեղանչած ժամանակն էլ մատաղ կանէ, Աստծու հետ կը հաշտուի, տէրտէրին «թաքալխ» կը տայ, խունկ ու մոմ կը վառէ, սրբերին կը դիմէ բարեխօսութեան համար, «ծունր»—աղօթքը անպակաս կանէ, կը զղջայ, սրբութիւն կառնէ իր ժամանակին և վերջապէս տէրտէրից ու պապերից լսած ու իմացած օրէնքները կը կատարէ, որ չը լինի, թէ դժոխքի բաժին դառնայ։ Նա շատ է վախենում դրանից. այս կեանքն ամբողջապէս աշխատանք-տանջանքով անցնել, վերջն էլ յաւիտենական տանջանք ժառանգել,—ո՞վ չի վախիլ։

Մեռնելուց յետոյ մարդուն միւս կեանքում մազէ կամըրջից անցկենալ կըտան։ Արդարը վրայից հանգիստ ու թեթև կանցնի, իսկ մեղաւորի անցած ժամանակ՝ մազը մէջտեղից կը կտրի, մեղաւորը կընկնի տակը, ձիւթով լիքը ամանի մէջ։ Ամանում ձիւթը մշտապէս եռ է գալիս. նրանում պիտի խաշխըշուի այնքան, մինչև որ ցորենի հատիկի չափ դառնայ. նոր մէկանց էլի սատանաների շնորհով—մեծանայ, առաջուան չափ դառնայ, էլի փոքրանայ ցորենի չափ և այդպէս անվերջ պիտի տանջուի—գէհէնի հուրի մէջ. դա է դժոխքը, կամ ինչպէս իրանք են ասում, «Ջէհհնամը»։

Իսկ յաւիտենական արքայութիւնը—դրախտը մի հրաշալի այգի է, լի մշտադալար ծառերով, ծաղիկներով ու քաղցրահամ աղբիւրներով։ Այնտեղ ոչ ցանում են, ոչ էլ հացի հոգս քաշում. այնտեղ ոչ բանել կայ և ոչ էլ այստեղի պէս տանջուել։ Այնտեղ յաւիտենական հանգստութիւն կայ. մարդու կեանքն անցնում է ազատ ու խաղաղ Աստ՟ու, նրա հրեշտակների և արդար հոգիների հետ միասին։



# ՀԱՄՇԷՆՑԻ ՀԱՅԵՐ

## ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐ*)

**Ե. ՄԹՈՒՐԱԴԵԱՆՑԻ.**

---

### ԱՇԽԱՐՀԱՅԵՑՈՂՈՒԹԻՒՆ

*(Հաւատք, աւանդութիւններ ու նախապաշարումներ)*

### Բնութեան պաշտամունք

Համշէնցի հայը՝ ինչպէս բնութեան ծոցում և նրան մօտիկ ապրող մարդ՝ շատ տեղերի գիւղացիների պէս աստուածացրել է ամբողջ բնութիւնը։ Նրա հաւատքի, հայեացքների ու աշխարհհայեցողութեան մէջ արտայայտւում է ինքը մայր-բնութիւնը իր խոր ու մութ անտառներով, քչքչան աղբիւրներով, երկնքի լուսատուներով, վեհ ու խաղաղ լռութիւնով և երբեմն էլ մութ, անբացատրելի խորհրդաւորութիւնով։ Դարեր առաջ նա ինչ հայեացք որ ունեցել է բնութեան վրայ, հիմա էլ նոյնն է. էլի այն բնապաշտն է, բնութեան հարազատ որդին։ Կրօնը ոչնչով չի փոխել նրան, ոչինչ չի տուել նրան, բացի այն ծիսական, ձևական կանոններից ու պատուէրներից, որոնք մինչև այսօր էլ նրա հոգու մէջ չեն մտել։ Դեռ մինչև հիմա էլ նորա հոգին կրթւում, սնւում է բնութիւնից, նրա անմիջական ազդեցութեան ու խնամքի տակ։ Նա հիմայ էլ պաշտում, ծունր է դնում բնութեան առաջ։ Ճիշտ է, կրօնի ազդեցութեան տակ՝ նա ընդունում է բնութեան մէջ Արարչի գոյութիւնը, բայց այս էլ ճիշտ է, որ նա իր ամբողջ կեանքում այնքան Արարչին չի յիշում ու չի դիմում, ինչքան իրան բնութեան։ Մութ գիշերներին նա լուսնեակին է ման գալիս,

---

*) Տես Ազգ. Հանդէս գիրք Դ. և Ե.

Նրան փառք տալիս, երաշտ օրերին՝ ամպերին է երեսը դէմ անում, նրանցից խնդրում զովարար կաթիլներ. երկար անձրևներին՝ ժամէժամ արևին է սպասում, թէ երբ պիտի վերջապէս ամպերի տակից դուրս գայ։ Նա դրանցից, ինչպէս նաև կարկուտից, կայծակից, հեղեղից ու երկրաշարժից, աւելի շատ է վախենում քան իրա Արարչից։

Եթէ երբեմն-երբեմն Արարչի անունը տալիս է և Նրա օգնութեան է դիմում, այդ էլ լինում է բնութեան արհաւիրքների ու աղէտների ժամանակ, երբ կամ ծանր հիւանդ է ունենում, կամ հեղեղն ու կարկուտն է գալիս, կայծակն է խփում և կամ շարժ է լինում։ Այդպիսի ժամանակ՝ երբ մոլորուած ու յուսահատ՝ աչքը չորս բաց է անում, թէ ումը դիմի, ումից օգնութիւն սպասի, միտքն է բերում Արարչին. Նրանից խնդրում դարման իր ցաւին։

Նրա ընդունած Արարիչն էլ այնքան բարի չէ, ինչքան որ պէտք է լինէր։ Ահեղ ու փոթորկալի բնութեան պէս, Նա էլ երբեմն ցասումներ ու պատիժներ է ղրկում մարդկանց գլխին, նրանց պատժելու և խելքի բերելու համար։ Կը համբերի, կը համբերի, բայց ձեռքից չի թողնիլ, մէկ օր ցոյց կըտայ իր զօրութիւնը։ Նա այնքան էլ անսահման ներող ու բարի չէ. պէտք է միշտ ահը սրտի մէջ ունենալ։ Եւ գիւղացին աւելի վախենում է Նրանից, քան սիրում Նրան. նա իր գոհութիւնն ու խնդրուածքը միշտ էլ ահ ու դողով, գլուխը հողին ու քարին քսելով, գետին խոնարհելով ու երկրպագելով է ուղղում Նրան։ Համշէնցիների բարբառում նոյն իսկ աղօթք բառի տեղ «ծունր» խօսք են բանեցնում։ Նրանց բոլոր աղօթքները ծնրով են սկսում, ծնրով էլ վերջանում են։ «Ծունր» —աղօթքը նրանց համար պարտաւորական բան է դարձել. Նա անպատճառ պէտք է «ծունր» անի, թէ չէ միւս կեանքում կըստիպեն նրան շող քարի վրայ պակաս աղօթքներն ասելու։ Նա զարմանում է, թէ ինչպէս կարող է մարդ չաղօթել, քանի որ թռչուններն անգամ աղօթում են։ Գարնան՝ առաւօտները կամ երեկոները, երբ «պօրշուկները» (սարեակ)

ծառի վրայ նստած, սիրուն կերպով ծլվլում են, ասում են, որ նրանք էլ «ծունր են անում։

Երրորդութեան մասին քրիստոնէական հայացքը համշէնցի հայը ոչ գիտէ և ոչ էլ խելքը կը մտնէ։ Նա ուղղակի մի Աստուած է ճանաչում՝ իբրև բնութեան Արարիչ, առանց որևէ անձերի։ Քրիստոսին թէև ընդունում, պաշտում է, բայց ոչ իբրև Արարիչ, ոչ իբրև Աստուած՝ այլ իբրև Նրա Որդին, Նրանից փոքրը, աւելի մարդկանց գործերը դատող և նրանց մեղքերը բաշխող։ Բնութիւնը Արարչի ձեռքի գործն է համարում, իսկ մարդկանց չարն ու բարին, նրանց մեղքերը— Քրիստոսին է բաժին հանում։ Սուրբ Հոգուն ոչինչ չի մնում, համշէնցի հայը նրան չի էլ ճանաչում. թէև «յանուն Հօրի» մէջ միշտ կրկնում է Նրա անունը։ Կրկնում է՝ բայց չի հասկանում։ Մէկ անգամ նրանցից մէկին հարցնում եմ՝ թէ ինչ է հասկանում «յանուն Հօրի» խօսքերից։ Նա մոլորուած կանգնում, ասում է, որ ոչինչ չի հասկանում. ասում է հէնց այնպէս, որովհետև սովորութիւն է. վերջը միամտաբար աւելացնում է՝ իբրև ուզում է ասել, թէ Հօր Աստուծու Որդին սուրբ Հոգին է...

Դժբախտաբար նրանց լեռների, քարերի, աղբիւրների ու ծառերի պաշտամունքի մասին ոչինչ չեմ կարող ասել, քանի որ Կովկասեան ափերում նրանք հանդիսանում են իբրև գաղթական տարր և ոչ իբրև երկրի բնիկներ, որ մօտիկ կապեր հաստատած լինէին երկրի բնութեան, նրա սարերի և ձորերի, նրա ծառերի ու ջրերի հետ։ Մնում է բաւականանալ այն աւանդութիւններով ու նախապաշարմունքներով, որ բերել են նրանք իրանց հետ հայրենական ափերից, և որոնք վերաբերում են բնութեան տարրերին ու երևոյթներին և այն կենդանիներին ու բոյսերին, որոնք իրանց այժմեան նոր տեղերում էլ կան։

---

## II. Երկնքի լուսատուներ եւ բնութեան երեւոյթներ.

Լուսինն ու արևը, ինչպէս որ շատ տեղի ժողովրդի մէջ, սրանց մօտ էլ անմարմին ու անշունչ չեն ճանաչւում։ Սրանք էլ են ընդունում նրանց իբրև հոգի ունեցող, շնչաւոր արա-

ծառի վրայ նստած, սիրուն կերպով ծլվլում են, ասում են, որ նրանք էլ «ծունր են անում:

Երրորդութեան մասին քրիստոնէական հայացքը համշէնցի հայը ոչ գիտէ և ոչ էլ խելքը կը մտնէ: Նա ուղղակի մի Աստուած է ճանաչում՝ իբրև բնութեան Արարիչ, առանց որևէ անձերի: Քրիստոսին թէև ընդունում, պաշտում է, բայց ոչ իբրև Արարիչ, ոչ իբրև Աստուած՝ այլ իբրև Նրա Որդին, Նրանից փոքրը, աւելի մարդկանց գործերը դատող և նրանց մեղքերը բաշխող: Բնութիւնը Արարչի ձեռքի գործն է համարում, իսկ մարդկանց չարն ու բարին, նրանց մեղքերը— Քրիստոսին է բաժին հանում: Սուրբ Հոգուն ոչինչ չի մնում, համշէնցի հայը նրան չի էլ ճանաչում. թէև «յանուն Հօրի» մէջ միշտ կրկնում է Նրա անունը: Կրկնում է՝ բայց չի հասկանում: Մէկ անգամ նրանցից մէկին հարցնում եմ՝ թէ ինչ է հասկանում «յանուն Հօրի» խօսքերից: Նա մոլորուած կանգնում, ասում է, որ ոչինչ չի հասկանում. ասում է հէնց այնպէս, որովհետև սովորութիւն է. վերջը միամտաբար աւելացնում է՝ իբրև ուզում է ասել, թէ Հօր Աստուծու Որդին սուրբ Հոգին է...

Դժբախտաբար նրանց լեռների, քարերի, աղբիւրների ու ծառերի պաշտամունքի մասին ոչինչ չեմ կարող ասել, քանի որ Կովկասեան ափերում նրանք հանդիսանում են իբրև գաղթական տարր և ոչ իբրև երկրի բնիկներ, որ մօտիկ կապեր հաստատած լինէին երկրի բնութեան, նրա սարերի և ձորերի, նրա ծառերի ու ջրերի հետ: Մնում է բաւականանալ այն աւանդութիւններով ու նախապաշարմունքներով, որ բերել են նրանք իրանց հետ հայրենական ափերից, և որոնք վերաբերում են բնութեան տարրերին ու երևոյթներին և այն կենդանիներին ու բոյսերին, որոնք իրանց այժմեան նոր տեղերում էլ կան:

---

## II. Երկնքի լուսատուներ եւ բնութեան երեւոյթներ.

Լուսինն ու արևը, ինչպէս որ շատ տեղի ժողովրդի մէջ, սրանց մօտ էլ անմարմին ու անշունչ չեն ճանաչւում: Սրանք էլ են ընդունում նրանց իբրև հոգի ունեցող, շնչաւոր արա-

բաժներ։ Սրանց մամերն էլ լուսնեակէն և արևէն իրար քոյր-եղբայր են ճանաչում, լուսնեակը տղայ, արևն՝ աղջիկ։ Լուսինը մեծ դեր է կատարում գիւղացու կեանքում. Նրա հաշիւը նրան գուցէ ժամանակի ամսաթւից աւելի է պէտք գալիս։ Նա լուսնի օրերի հաշիւը այնպէս գիտէ, ինչպէս ամսի օրերինը, իսկ անգրագէտը հօ լուսնի հաշիւը աւելի հեշտ է պահում մտքում, քան ամսի հաշիւը։ Ամսի հաշիւը հարկաւորւում է նրանց գուցէ միայն նրա համար, որ իմանան, թէ երբ է պասը կամ իրանց մէջ շատ յայտնի տօնը և կամ սրբի օրը։ Բայց պասն ու սրբի օրը իմացնելը քահանայի պարտականութիւնն է. Նրանից կիմանան եկեղեցում. դրա համար ինչ գլուխ ցաւեցնեն։ Մինչդեռ կեանքում, ամեն քայլում, նրանց հարկաւոր է գալիս գիտենալ, թէ այս ինչ գործը երբ և ինչ ժամանակ սկսել, որ լաւ լինի և աջող գնայ։ Լաւն ու վատը կախուած է լուսնի հաշւից, այդ հաշիւը մեծ ազդեցութիւն ունի գործի ապագայի վրայ։ Կան չար ու բարի օրեր, ամէն գործի համար «ռաստ գալու սհաթ» կայ. լաւ և վատ. դրանց ուղեցոյցը լուսնի հաշիւն է։

Լուսնի օրերն է համրում գիւղացին՝ ցանք սկսելիս, ծառ տնկելու և պատուաստելու ժամանակ, ճանապարհ գնալիս, երազ տեսնելիս, նոր գործ կամ առուտուր անելիս և հարսանիք սկսելիս, պսակի վրայ էլ ազդեցութիւն ունի լուսնի որ երորդ օրը լինելը։ Լուսնի օրերի հաշւով հետաքրքրւում է ժողովրդի մեծամասնութիւնը։ Շատ անգամ և շատ շատերն են դիմել ինձ լուսնի քանի երրորդ օրն իմանալու։

Առհասարակ նոր լուսինն աւելի լաւ է համարւում, քան կէսն անցածն ու հինը. լուսնի օրերի հաշուի մէջ երեք հատ ինը կայ. այդ երեքն էլ վատ են (9. 19. 29.) այդ օրերին ոչ ցանք են անում և ոչ հարսանիք. լաւ չէ։

Լուսնի նորած ժամանակին էլ ցանք չեն անիլ. լաւ չէ. չի բուսնիլ, կը չորնայ։

Լուսնի նորին թուխս դնելը նոյնպէս լաւ չէ. բոլոր ճուտերը աքլոր դուրս կը գան։

Նոր լուսնի առաջին չորեքշաբթին և ուրբաթը թութուն չեն քաղել. լաւ չի չորնալ, խակ կը մնայ:

Լուսնի 7-ին ու 9-ին մարդուց արիւն առնելը լաւ չէ. խելքը կը կորցնէ:

Թէ որ լուսնի 1-ին, 11-ին և կամ 21-ին ծառ պատուաստեն, նոյն տարին պտուղ կը տայ:

Լուսնի լինին ցորեն կամ ինչ էլ լինի—ցանելը լաւ չէ. մուր կը բռնէ և լաւ բերք չի տալ:

Լուսնի լինին անտառից շէնքի փայտ կտրելն էլ լաւ չէ. նեխուից կը ճինճոտի: Լուսնի նորին էլ լաւ չէ կտրելը: Փայտ կտրելու ամենալաւ ժամանակը՝ երբ լուսնից մի չորեքշաբթի կամ ուրբաթ անցած լինի:

Ծառի պատուաստը առաւօտն են անում, որ արևի հետ մեծնայ, ճաշից յետոյ լաւ չէ անելը, պատուաստը վեր չի բարձրանալ, որովհետև արևը ցածանում է:

Արևի մայր մտնելուց յետոյ մեռելը չեն թաղել:

Ահա և մի երկու աւանդութիւն արևի ու լուսնի մասին:

1. Արեւն ու լուսնեակը իրար քոյր-եղբայր են: Մէկ օր մայրն ասում է նրանց. «գնացէք աղբիւրից ինձ ջուր բերէք. ծարաւ եմ. ով որ առաջ բերի, նրան պիտի օրհնեմ»: Երկուսն էլ վեր կենում, գնում են ջուրը: Եղբայրը քրոջից առաջ է անցնում և իր փարչը դնում է «վաքի» տակ, որ լցուի: Քոյրը յետևից գալիս, հասնում է եղբորը և նրանից ծածուկ, նրա փարչի տակը ծակում: Եղբօր փարչը լցւում է, բայց ճանապարհին բոլոր ջուրը գնում է: Քոյրը լցնում է փարչը և գնում է, մօր օրհնութիւնը ստանում:

2. Սրանք էլ են պատմում արևի ու լուսնեակի հէքեաթը, որի մէջ արև-քոյրիկը յայտնում է իր վախը գիշերըման գալու և մարդկանց լոյս տալու, որովհետև երբ ինքը ցած նայելիս է եղել, ամեն մարդ նրան է մտիկ տուել: Արեւն էլ գանգատուել է մօրը, որի խօսքով այնուհետև սկսել է ցերեկները ման գալ և մօր տուած սուր-սուր ասեղներով ծակել իրան նայողների աչքերը:

3. Լուսնի վրայի մութ բծերը սրանք էլ բացատրում են

նրա բարկացոտ մօր ապտակով, որ խմորոտ ձեռքով խփել է իր լուսնկայ տղի երեսին։

---

Արեւի ու լուսնի խաւարումը բացատրում են նրանով, որ մի վիշապ կայ. գալիս՝ աշխատում է բռնել նրանց, որ կուլ տայ։ Հէնց որ բռնելու է լինում, խաւարում է պատահում։ Բայց երկար չի քաշում, լուսատուն նրա ձեռքերից պրծնում, փախչում է։ Վիշապը ամեն օր լուսանալուն պէս, արշալոյսի հետ, հետեւում է արեւին, որ բռնէ կուլ տայ. մինչեւ օրս չի կարողացել. մէկ օր պիտի գայ, որ կուլ տայ։

---

Աստղերի համար ասում են, որ ամեն մարդ մի աստղ ունի երկնքում։ Երբ մէկը մեռնում է, նրա աստղն էլ ընկնում է։ Աստղերի մէջ նրանք աւելի յիշում են Լուսաստղ, Վեցուկ, Կշիռ և Բազուկ։ Դրանց ծագելով ու դուրս գալով իմանում են, թէ գիշերն ինչքան է անցել, ինչ ժամանակ է։

Պոչաւոր աստղի երեւալը, արհաւիրքի նշան են համարում։ Ասում են՝ մեծ աղէտներ են պատահելու, թագաւոր է մեռնելու և այլն։

Յարդգողի համար ասում են, թէ մէկ օր ջրաղացպանի մէկը գողցած ալիւրը տանելիս է լինում տուն. ճանապարհին թափւում է և թափածը երկնքի վրայ երեւում։ Իրանք համշէնցիները յարդգողին «քշտումռալ» են ասում, որ բառացի նշանակում է՝ քրդի ամպ։

---

«Ամպրոտի» համար ասում են, թէ Աստծու եզներն են «պօլօքում» (բղաւում), իրար հարու տալիս ու կպչում։

Առաջին անգամ՝ գարնան, որոտի ձայնը լսելուն պէս՝ գդալը վեր են գցում. ընկնելիս թէ որ բերանը վեր դառնայ՝ տարին առատ կըլինի. իսկ թէ որ ներքև՝ բերքը քիչ կըլինի։

Տանտիկինն էլ առաջին որոտի ձայնն առնելուն պէս, իր ճկոյթ մատի ծայրն է կծում, որ տարուայ մէջ խնոցին միշտ հեշտ հարուի։

Փայլակի համար ասում են, թէ երկրի վրայ մի մեծ ձուկ

կայ, փորի վրան մի փայլուն բան ունի. երբ մէջքի վրայ է ընկնում, նրա փորի գոյնից երկինքը փայլատակում է։

Կայծակի համար ասում են, թէ սատանի համար է իջնում։

Ընձրեւի ժամանակ եթէ կատարանքը դէպի վեր կանգնեցնեն, կարկուտ չի լինիլ, և մէկ էլ՝ եթէ յորդ անձրեւ լինի, կը խաղաղի։

Կարկտի ժամանակ թէ որ 3 հատ կարկուտ կխուլի, կարկուտը կըկանգնի։

Բամու համար ասում են՝ եթէ նա երեւար, բոլոր մարդկանց կը ջարդէր։

---

## III. ԲՆՈՒԹԵԱՆ ՏԱՐՐԵՐԸ.

(հողը, օդը, ջուրը և կրակը)

Ահա մի քանի աւանդութիւններ ու նախապաշարմունք բնութեան տարրերին վերաբերեալ։

ՀՈՂ։ Բանելիս տրեխը մտած հողը պէտք է արտում թափել, թէ չէ արտի «բէ"րէ"քէ"թը» կը գնայ։

ՔԱՐ։ Մի.քիչ խելօքները կարծում են, թէ քարը հողից է եղել. շատերն էլ ասում են, թէ մի ժամանակ Աստուած թափել է անձրեւի նման։ Կան ուրիշներն էլ, որոնք ասում են, թէ քարը առաջ ոչխար է եղել. վերջը Աստծու հրամանով քարացել է։ Քարի մասին այս աւանդութիւններն են պատմում։

Ադամը որ հերկ էր անում, Աստուած մի քար ցոյց տուեց նրան արտի մի կողմը, իբրեւ սահման, պատուիրելով, որ նրանից դէնը չանցնի։ Բայց նախամարդը այս պատուէրն էլ չը պահեց. քարի միւս կողմն անցաւ։ Դրանից է մնացել սահմանն անցնելը։

Պատմում են էլի, թէ քարը մի ժամանակ մեծամտելով՝ այնքան է ուռել, մեծացել, որ մարդուն տեղ չի մնացել։ Դրա համար Աստուած անիծել է նրան, և դրանից է որ հիմա անշարժ ու անխախտ մնում է իր տեղին։

կայ, փորի վրան մի փայլուն բան ունի. երբ մէջքի վրայ է ընկնում, նրա փորի գոյնից երկինքը փայլատակում է։

Կայծակի համար ասում են, թէ սատանի համար է իջնում։

Անձրևի ժամանակ եթէ կասկարանքը դէպի վեր կանգնեցնեն, կարկուտ չի լինիլ, և մէկ էլ՝ եթէ յորդ անձրև լինի, կը խաղաղի։

Կարկտի ժամանակ թէ որ 3 հատ կարկուտ կլլուի, կարկուտը կըկանգնի։

Քամու համար ասում են՝ եթէ նա երևար, բոլոր մարդկանց կը ջարդէր։

---

## III. ԲՆՈՒԹԵԱՆ ՏԱՐՐԵՐԸ.

(հողը, օդը, ջուրը և կրակը)

Ահա մի քանի աւանդութիւններ ու նախապաշարմունք բնութեան տարրերին վերաբերեալ։

ՀՈՂ։ Բանելիս տրեխը մտած հողը պէտք է դրսում թափել, թէ չէ դրսի «բէ"րէ"քէ"թը» կը գնայ։

ՔԱՐ։ Մի քիչ խելօքները կարծում են, թէ քարը հողից է եղել. շատերն էլ ասում են, թէ մի ժամանակ Աստուած թափել է անձրևի նման։ Կան ուրիշներն էլ, որոնք ասում են, թէ քարը առաջ ոչխար է եղել. վերջը Աստծու հրամանով քարացել է։ Քարի մասին այս աւանդութիւններն են պատմում։

Ադամը որ հերկ էր անում, Աստուած մի քար ցոյց տուեց նրան արտի մի կողմը, իբրև սահման, պատուիրելով, որ նրանից դէնը չանցնի։ Բայց նախամարդը այս պատուէրն էլ չը պահեց. քարի միւս կողմն անցաւ։ Դրանից է մնացել սահմանն անցնելը։

Պատմում են էլի, թէ քարը մի ժամանակ մեծամտելով՝ այնքան է ուռել, մեծացել, որ մարդուն տեղ չի մնացել։ Դրա համար Աստուած անիծել է նրան, և դրանից է որ հիմա անշարժ ու անխախտ մնում է իր տեղին։

**Ջուր**։ Ջրի համար ասում են, թէ ձկան չի երևում. նրա համար է մէջը մնում։

Աղբիւրի համար ասում են, որ նա իր ջուրը մի գետից է քաշում։

**Կրակ**։ Կրակը կայծակից է մնացել երկրի վրայ։

Կրակի վրայ ջուր չեն ածում և ոչ էլ փչելով հանգցնում. այլ ուղղակի մոխիր են ցանում վրան և տակը «կորխում»։

Ով որ վախում է մի տեղ գնալուց, ծոցը պէտք է դնի հանգած կրակ, կամ հացի այրած «քերիջ» (կճիպը, չորը)։

Սովորաբար կաթ եփելու ժամանակ, երբ «ջուկը» (պղինձը) կախած է լինում օջախի վրայ, կաթի տակից կրակ չեն տալիս. լաւ չէ. կաթի «բէ"րէ"քէ"թը» կը պակսի, կամ թէ չէ՝ կովը «կակնըռէ"» (աչքը կը դիպչի)։

Ուրիշի տնից կրակ կամ խանձող բերելիս, պէտք չէ խառնել տան կրակի հետ, [ծ]է որ օջախը վառ լինի. թէ չէ՝ տան «դէօվլէ"թը» յետ կերթայ։

Մայխսին կրակի վրայ դրած կաթ ի տակը չեն փչիլ. մեղք է։

Մայխսին էլի՝ դրացուն կրակ տալը լաւ չէ։

Մեռելը լողացնելու համար տնից կրակ վերցնելը լաւ չէ։

Երեխան որ մի տնից ուրիշ տուն կրակ տանի և ինքը վառի, լաւ չի լինիլ. այն տանը մեռել կը լինի։

Հաւը թուխս դնելու ժամանակ՝ բոլոր ձուերը դնում են մաղի մէջ և օջախի շղթայի—«կլմբուրի» շուրջը 3 անգամ պտտեցնում, ասելով՝ «բազըն տեսնուս՝ ծակը փախիր. ղիափը (չախկալ) տեսնուս՝ ծառը փախիր» կամ թէ ուրիշ կերպ ասում են. «ղիափն օր գայ՝ ծառին ծէ"րը՝ բազըն օր գայ՝ պուշքը (թուփը)»։

Էլի թուխս դնելիս՝ մինչև ձագ հանելը, օջախում ձու «կորխելը» (մոխրի մէջ թաղել) լաւ չէ. ձագը կը կպչի կճեպին և չի լինիլ։

Մալի ոսկորը կրակը չեն գցիլ, թէ չէ մալը կը սատկի դրանցից։

Սերմացու «լազուի»—սիմինդրի «կոթոլը» (գլուխը առանց հատիկների) չեն այրիլ՝—հատիկը ցանելուց յետոյ. թէ չէ՝

գլուխը Հասնիկ չի բերել. մուր կը դառնայ: Դրա Համար «կոթոլնիրը» տանում են մի խոռը ամղ թափում, որ մարը չը տեսնի ու չուտէ:

«Լապտը» ցանելուց յետոյ «փօթ» («բատի-բուտի») էլ չեն անում. թէ չէ՝ գլխելուց յետոյ վրան «փօթի» պէս սունկը տայ, կը փչանայ:

Ըմանը յետ առնելուց յետոյ՝ թէ որ «կլմբալը» (օջախի շղթան) շարժուի, պէտք է բռնել ու կանգնեցնել. թէ չէ՝ տանտիրոջ ատամքը կ'ընկնայ:

Կամարանքի վրայ նստողը շատ աղջիկ կը բերէ:

Երեկոյեան մէկին թան տանելիս՝ թէ որ նործին կովկն է, մէջը Հացի այրած քերիչ կամ կրակած ածուխ են գցում, որ կովը «չակնըւէ»:

Եվ որ թռչունի բուն տեսնէ և կրակի կամ ջրի մօտ մէկին ասի, բունը կը ճեճռոտի, մրջիւն դուրս գայ, այն տան «բէ"րէ"քէ"թը» շատ կը լինի:

Չար աչքը դիպածին—«ակնըռածին» այսպէս են բժշկում:

Խոփի Հետ միքանի ուրիշ երկաթեղէն կրակն են գցում, տաքացնում, վերջը Հանում, վրանները ջուր լցնում և «ակնըռածին» դրանց գոլորշու վրայ կանգնեցնում, որ կուլ տայ: Դրան Համշէնցիք ասում են «խոփխաշ»:

Կայ ուրիշ միջոց էլ: Վերցնում են մէկ աման ջուր. մէջը գցում են միքանի կրակած ածուխ-«քեօզ». գոլորշին տալիս են «ակնըռածին», որ կուլ տայ. ջրից միքանի կում խմեցնում. մի քիչ էլ սրտին քսում. մնացած ջուրը լցնում են օջախի չորս անկիւնը, նրա միջի Հանգած ածուխներն էլ մոխրաթաղ են անում օջախի չորս անկիւնում: Ամանն էլ շուռ են տալիս, տակն ու վրայ են անում. տակի երեսին մի կրակած ածուխ դնում և թողնում որ ինքն իրան մարի, մոխիր դառնայ՝ դրանից յետոյ չար աչքը կանցնի: Դրան էլ ասում են «կէ"ծխաշ»:

## VI. Բոյսեր.

Համշէնցիները սուրբ ծառեր չունին. ոչ էլ նրանց համար ուխտ գնալ կամ մոմեր վառել գիտեն։

Սրանք էլ են հաւատում, որ կայծակի ժամանակ՝ սատանան չուզենալով կրակի հարուածներն ուտել, աշխատում է պահուել ծառերի տակ, աւելի «խոզկաղնու», ընկզենու և հոնու տակ։ Դրա համար լաւ չեն համարում կայծակի ժամանակ այդ ծառերի տակ կանգնելը։

Միքանի ծառերի ու բոյսերի մասին այս աւանդութիւնները կան։

**Խաղողի որթը**։ Մէկ օր Աբրահամի մօտ հիւր է գալիս մի «խըզըր» (հրեշտակ)։ Տանը ուտելու բան չեն ունենում. Աբրահամը մորթում է հորթը։ Իրիկուն որ լինում է, կովը գալիս է, բառանչում, հորթին ձայն տալիս, բայց հորթը չը կայ։ Կովի ձայնը հիւրի ականջն է ընկնում։ Տանտիրոջ պատուիրում է բերել իր մօտ կերած հորթի կաշին ու թափած ոսկորները։ Աբրահամը հաւաքում է ոսկորները, միայն ազդրի ոսկորն է պակաս մնում. չի գտնւում։ «Խըզըրը» օրհնում է, հորթը ոտի է կանգնում։ Քիչ յետոյ Աբրահամը գտնում է կորած ոսկորը և այն էլ տանում է նրա մօտ։ «Խըզըրը» պատուիրում է այդ էլ այգու մէջ թաղել. Աբրահամը լսում է։ Մի տարի վերջը ոսկորից խաղողի որթ է բուսնում։

**Հոնին ու բալենին**։ Մէկ օր հրեշտակն ու սատանան իրար հետ գրազ են եկել, թէ ում ծառն աւելի շատ պտուղ կը բերի։ Հոնին առաջ ծաղկելուն համար, սատանան ընտրում է նրան, իսկ հրէշտակը՝ բալինուն։ Սատանան նստում է տակը. սպասում, պտուղը չի հասնում։ Մէկ էլ ինչ տեսնէ. հրեշտակը բուռը բալ լցած. մէկ-մէկ ուտելով գալիս է։

**Բալն ու թութը**։ Բալը պարծեցել է, թէ ինձ ուտողի ճիտը ճտիս պէս կը բարկցնեմ։—Ղորթ է, վրայ է բերել թութը. թէ որ ես հետդ չը հասնէի։

**Ցորեն**։ Պատմում են, որ շատ առաջ ցորենը արմատից մինչև գլուխ հասկ էր բռնում։ Բայց երբոր մարդկանց չարու-

թխւնն աւելնում է, Քրիստոս Տէրը բարկանում, գալիս սկսում է արմատից վեր ցորենի գլուխը պոկել: Ծայրին մի քիչ մնացած է լինում, որ շունն ու կատուն գալիս, լաց են լինում ասելով. «Տէր, Դու որ բոլորը պոկես, մենք ինչ ուտենք»: Սրա վրայ Տէրը խղճում է նրանց և ծայրին մնացածը թողնում:

Էլի պատմում են, թէ հին ժամանակ երկու եղբայր իրար շատ սիրելիս են լինում: Նրանք միասին ցորեն են անում: Ցորենը քաղել-կալսելուց յետոյ, բաժնելու ժամանակ փոքր եղբայրն ասում է մեծին. «Դու բաժնիր»: Մեծը բաժնում է, բայց այնպէս որ փոքրի բաժինն աւելի է հանում: Փոքրը բան չի ասում. բայց մեծի տուն գնալուց յետոյ, ծածուկ իր բաժնից նրա բաժնին է աւելցնում: Մեծը գալիս տեսնում է, որ եղբօր բաժինը աչքին քիչ է թւում, իր բաժնից նորից վրան է լցնում, շատը փոքրին տալիս: Այսպէս երկար ժամանակ դրանք իրանց բաժիններից մէկ-մէկու դնում, աւելցնում են, մինչև որ Աստուած տեսնելով որ վերջ չունի այդ բանը, հրամայում է, որ ցորենի վրայ ուղիղ մէջտեղից մի ճեղք բացւի. որ նշան է՝ թէ բաժինը պէտք է հաւասար անել:

**Գարի**: Գարին հասնելուց յետոյ, կկուն երբ յետ է գնում, նրանից մի գլուխ հետը վերցնում, տանում է թագաւորին, որ իմաց տայ, թէ արտի բերքը արդէն հասել է. ժամանակ է հարկ հաւաքելու:

**Թութուն**: Մէկի արտումը մի ահագին խոտ էր բուսել: Մարդը տերևը կտրում, դնում է բերանը, ծամում, տեսնում է որ լեղի է: Տանում է ապուր շինում, տեսնում է, որ էլի չի ուտւում: Մէկ անգամ էլ որ գնալիս է լինում արտը, սատանան պատահում է նրան. մի չիբուխ է շինում, խոտի տերևները չորացնում, լցնում մէջը. առաջ ինքը բերանը տանում, յետոյ տալիս նրան և ասում. «սրան թութուն են ասում. ահա այսպէս պէտք է ծխել»:

Ասում են որ՝ մի 'պոռնիկ կին ժամանակին ասած է եղել, թէ ինքը մարդկանց բերնից մտնի, քթից պիտի դուրս գայ: Եւ իրաւ, նրա խօսքը կատարւում է. մեռնելուց յետոյ նրա գերեզմանի վրայ թութուն է բուսնում:

Մէկը սրտի ցաւ է ունենում. գնում է մանգալու: Դաշտում տեսնում է, որ մի խոտ է բուսած լինում, տերևները ոսկու պէս դեղնած: «Չաւասը» գալիս է. տերևները պոկում, մանրում է և թղթի մի կտորի մէջ փաթթում, դնում է բերանը, ծխում: Դրա վրայ սրտի ցաւը մեղմանում, անցնում է: Դրանից է մնացել թութուն ծխելու սովորութիւնը:

Մի հարուստ մարդ մի շատ խոցոտ աղջիկ է ունենում: Հայրը նրա համար շատ փող է կորցնում, բայց չի կարողանում լաւացնել: Աղջիկը տեսնելով, որ իր պատճառով հայրը միշտ «նամու» է լինում, գլուխը վերցնում, գնում է մի մեծ անտառ: Պատահմամբ այստեղ մի փոքր, ծաղկած թուփ է տեսնում: Մտածում է փորձել այդ թփի տերևները ճզլել ու ջուրը քսել երեսի խոցերին: Այդպէս էլ անում է. անում է ու լաւնում: Իսկոյն վազում է տուն և հօրը պատմում ծառի զօրութիւնը: Հայրը հետաքրքրուած, աղջկան հետ գնում, գտնում է այդ բժշկարար թուփը և տանում իրանց մօտ տնկում.— դա թութունն էր:

«Իւչ-գիւլ» *) ասուած ծաղկից չորս ծաղկաւորը որ գտնեն ու թանի մէջ դցեն, ոսկի կը դառնայ:

Պռասը ով որ գլխից ուտէ, ամուսինը կը մեռնի:

---

## V. Կենդանիներ.

Կենդանիների պաշտամունքի մասին, ինչպէս և ծառերի ու բոյսերի, նրանց մօտ ոչինչ չի յիշւում: Գոնէ ինձ յայտնի չեն այնպիսի թռչուններ ու կաթնասուններ, որ նրանց մօտ պաշտուէին և մեղք համարուէր նրանց սպանելը կամ բունը քանդելը: Ճիշտ է՝ կան միքանի թռչուններ ու կաթնասուններ, որոնց միսը համշէնցին չի ուտում, բայց այդ ոչ թէ պաշտելուց, ինչքան զզուելուց, ու սովոր չը լինելուց: Այսպէս՝ կաչաղակին ոչ ոք չի սիրում, ոչ էլ պաշտում. երբեմն բռնում, զարկում են, բայց միսն ամենքը չեն ուտում. ուտողներ էլ կան, չուտողներ էլ: Քիչ-շատ միւսներից աւելի քնքոյշ վերա-

*) Մի տեսակ խոտ է, որ միշտ երեք ծաղիկ է բերում:

Մէկը սրտի ցաւ է ունենում. գնում է մանգալու։ Դաշտում տեսնում է, որ մի խոտ է բուսած լինում, տերևները ոսկու պէս շեղնած։ «Հաւասը» գալիս է. տերևները պոկում, մանրում է և թղթի մի կտորի մէջ փաթթում, դնում է բերանը, ծխում։ Դրա վրայ սրտի ցաւը մեղմանում, անցնում է։ Դրանից է մնացել թութուն ծխելու սովորութիւնը։

Մի հարուստ մարդ մի շատ խոցոտ աղջիկ է ունենում։ Հայրը նրա համար շատ փող է կորցնում, բայց չի կարողանում լաւցնել։ Աղջիկը տեսնելով, որ իր պատճառով հայրը միշտ «նամու» է լինում, գլուխը վերցնում, գնում է մի մեծ անտառ։ Պատահմամբ այստեղ մի փոքր, ծաղկած թուփ է տեսնում։ Մտածում է փորձել այդ թփի տերևները ճզլել ու ջուրը քսել երեսի խոցերին։ Այդպէս էլ անում է. անում է ու լաւնում։ Իսկոյն վազում է տուն և հօրը պատմում ծառի զօրութիւնը։ Հայրը հետաքրքրուած, աղջկան հետ գնում, գտնում է այդ բժշկարար թուփը և տանում իրանց մօտ տնկում.— դա թութունն էր։

«Իւչ-գիւլ» *) ասուած ծաղկից չորս ծաղկաւորը որ գտնեն ու թանի մէջ գցեն, ոսկի կը դառնայ։

Պռասը ով որ գլխից ուտէ, ամուսինը կը մեռնի։

---

## V. ԿԵՆԴԱՆԻՆԵՐ.

Կենդանիների պաշտամունքի մասին, ինչպէս և ծառերի ու բոյսերի, նրանց մօտ ոչինչ չի յիշւում։ Գոնէ ինձ յայտնի չեն այնպիսի թռչուններ ու կաթնասուններ, որ նրանց մօտ պաշտուէին և մեղք համարուէր նրանց սպանելը կամ բունը քանդելը։ Ճիշտ է՝ կան միքանի թռչուններ ու կաթնասուններ, որոնց միսը համշէնցին չի ուտում, բայց այդ ոչ թէ պաշտելուց, ինչքան զզուելուց, ու սովոր չը լինելուց։ Այսպէս՝ կաչաղակին ոչ ոք չի սիրում, ոչ էլ պաշտում. երբեմն բռնում, զարկում են, բայց միսն ամենքը չեն ուտում. ուտողներ էլ կան, չուտողներ էլ։ Քիչ-շատ միւսներից աւելի քնքոյշ վերա-

*) Մի տեսակ խոտ է, որ միշտ երեք ծաղիկ է բերում։

բերում են աղաւնուն, «պօրշուկին» (սարեակ), ծիծեռնակին. բայց դարձեալ դրանցից ոչ մէկին սպանելը մեղք չեն համարում, իսկ առաջին երկուսին հօ համով ուտում են: Կաթնասուններից, բացի սոխորականներից՝ նրանք չեն ուտում նապաստակի միսը, ինչպէս և շատ տեղ վայրի կենդանիներից ամենից աւելի սիրում են եղնիկներին, բայց դրանց բռնելն ու միսն ուտելը ոչ ոք մեղք չի համարում:

---

## ա. Թռչուններ.

**Հաւ:** Հաւն ու ճնճղուկը մէկ անգամ եկել են իրար մօտ: Ճնճղուկն ասել է. «Աստուած թէ հրաման տայ, ես պիտի թռչեմ»: Հաւն էլ պարծեցել է. թէ «Աստուած հրաման տայ, չը տայ, ես պիտի թռչեմ»: Ճնճղուկը փորձել՝ աջողուել է. Հաւը մնացել է, չի կարողացել:

Հաւի համար ասում են, թէ սատանայ է. գիշերով նրան բռնելը լաւ չեն համարում:

**«Կուկու»:** «Կուկուն» առաջ մարդ է եղել: Երկու եղբայր իրար կորցրել են. դրա համար է որ մինչև հիմա էլ իրար ման են գալիս ու ձայն տալիս:

«Կուկուի» մասին պատմում են, թէ ով որ գարնան, վաղ առաւօտեան, չը լուացուած, «ծունր» չարած, հաց չը կերած՝ առաջին անգամ նրա ձայնը լսէ, «կուկուն» նրան «կալէ կու», այսինքն՝ կը կալէ (? կը բռնէ): Այն տարին նրա գործը լաւ չի գնայ. աջողութիւն չի ունենայ: Դրա համար գարնան առաւօտները վերկենալուն պէս՝ պէտք է շուտ լուացուել, աղօթքը շուտ ասել և շուտ էլ հաց ուտել: Ոմանք վերկենալուն պէս՝ մի կտոր հաց բերանն են դնում, որ «չը կալուին»:

**Ծիծեռնակ:** Ծիծեռնակը առաջ ծառի վրայ է եղել բուն դնելիս. օձը եկել՝ պոչը կծել է. դրանից է որ նրա պոչը «չաթալ» է մնացել և բունն էլ «ներքեւ» է շինում:

**Բազէ:** Պատմում են, որ մի պառաւ, իսկ ոմանց ասելով՝ ինքը Տիրամայրը, անեծել է բազէին—աղբիւրի ջուրը վերևից պղտորելուն համար—որ ամառուայ 3 ամիսներին ջուր չը կա-

րողանայ խմել. աչքին արիւն երևայ։ Դրանից է որ բազէն այդ ամիսներին միշտ ծւում է. որովհետև ծարաւ է և ջուր չի կարողանում խմել։

**Բու։** Բուն հին ժամանակ մարդ է եղել, մի շատ ծոյլ մարդ, որ իր համար շոր անգամ չէ կարողացել գտնել։ Նրա մօտիկները զզուելով նրա ծուլութիւնից և մտքներում դնելով նրան մարդ դարձնել, մէկ օր տալիս են նրան իրանց շորերը և հետները եկեղեցի տանում։ Այստեղ յանկարծ բոլոր շոր տուողները մէկ խօսք արած՝ Թափւում են վրան, յետ առնում իրանց շորերը և ծոյլին մերկ ու տկլոր Թողնում բազմութեան առաջ։ Այդ նեղ ժամանակին ծոյլին օգնութեան են հասնում Թևաւորները և ամեն մէկը նրանցից մի-մի փետուր տալով, ծածկում են նրա մերկութիւնը, հետները Թռցնում, մարդկանց աչքերից ազատում։ Բայց ապերախտը, փոխանակ կամաց-կամաց նրանց պարտքը տալու, սկսում է նրանց ցեղից կոտորել ու կոտորել։ Աստծու ամեն գիշեր մի-մի Թռչուն ուտել։ Դրա վրայ սաստիկ բարկանում են նրա Թևաւոր ընկերները և խօսքը մէկ են անում, վճռում են որ հէնց որ տեսնեն, մի լաւ պատժեն այդ անզգամին։ Դրա համար է՝ որ բուն փախչում է լոյսից. ցերեկով չի երևում և միայն գիշերներն է դուրս գալիս։

**«Սօնդրիլիկ»** (յոպոպ). Դրա համար էլ ասում են, Թէ նոր հարս է եղել, մազերը սանդրելիս՝ տէգրը վրայ է եկել, ամօԹից Թռչուն է դառել և սանրը գլխին Թռել, գնացել է։

**Տատրակ.** Շատ առաջ, մէկ անգամ իրիկնապահին երկու երեխայ, եղբայր ու քոյր «սարն» անտառ են գնում՝ հորԹեր փնտռելու։ Երեխաները ման են գալիս, ման են գալիս, չեն գտնում։ Ուշ գիշեր է դառնում, մնում են անտառում և տատրակ դառնում։ Մինչև հիմայ էլ նրանք հորԹերին են ման գալիս, և նրանց ձայն տալիս, նրանց կանչելու ձայնից՝ իրանց անունն է մնացել։ (Այդ Թռչունի անունը գրով շատ դժուար է ուղիղ արտայայտել. համշէնցիները մի կերպ՝ բերանը սղմած շրԹունքներով են արտասանում, այնպէս որ հորԹին կանչելու ձայնին է նմանւում՝ «Թֆի՛ւ—Թֆի՛ւկ»)։

## Բ. ԿԱԹՆԱՍՈՒՆԵՐ

**Այծ**. Ոչխարը Աստծու ստեղծածն է, իսկ այծը՝ սատանինւ Աստուած որ ոչխարին հոգի է տալիս, նա իսկոյն վեր է կենում, սկսում է ման գալ, իսկ սատանան ինչքան աշխատում է, այծին չի կարողանում հոգի տալ։ Ճարը կտրած՝ գնում է Աստծուն ասում է, թէ «ինչ պէտք է անեմ, այծս չի կանգնում»։ Աստուածն էլ նրան ասում է. «գնա, ասա, Աստծու հրամանով եւ, գնա»։ Սատանան գնում է այծին ասում. «իմ հրամանովս էլ, գնա»։ Այծը չի կանգնում։ Էլի գնում է Աստծու մօտ, ասում նրան. «ասեցի, բայց էլի չը շարժուեց»։ Աստուած էլի ասում է նրան. «գնա, ասա, Աստծու զօրութիւնով էլ, կանգնիր»։ Վերջապէս ճարը կտրած, գնում ասում է թէ չէ, այծը իսկոյն ոտի է կանգնում։ Սատանի բարկութիւնը գալիս է. պոչին քացի որ չի խփում, պոչը վեր է ցցւում։ Դրանից է որ այծի պոչը վեր դարձած է լինում։

**Եղնիկ**. Եղնիկների համար ասում են, Աստծու կովերն են։

**Կատու**. Կատուի մասին այս նախապաշարումներն են պատմում։

Կատու սպանելը մեղք են համարում, ասում են, որ սպանողի մատաղը չի ընդունուիլ։

Կատուն մարդու ձեռքից հաց չի ուտիլ, ընկած կուտի, մէկ էլ՝ աչքը խուփ կուտի, որ «ընդընը» (միւս կեանքում) «ինքեար ընէ» (ուրանայ) կերածը։

Կատուն թէ որ հիւանդի անկողնին մօտենայ, հիւանդը չի մեռնիլ։

**Մուկ**. Մկան ու «պօսպօլի» (մեծ մուկ, крыса) համար պատմում են, թէ «պօսպօլը» մէկ անգամ ուզեցել է խնամութիւն անել մկների հետ, նրանց ցեղից աղջիկ առնել, բայց մկները չեն տուել։ Դրա համար «պօսպօլները» նրանց թշնամի են ընկել և մինչև այսօր էլ հալածում են։

Մկան համար էլի ասում են, թէ հարիւր տարեկան որ լինի, չղջիկ կը դառնայ։

**Խոզ**. Մէկ անգամ հայի ու Թուրքի մարգարէները (Յիսուսն ու Մահմէտը) իրար հետ խօսք են կապում դետնից ազ-

բիւր հանելու, Թուրքի մարգարէն մեր մարգարէից մի քանի օր ժամանակ է ուզում, պայման դնելով, որ օրը հասնելուն պէս, գան ու գաւազանը մէկ խփելուն՝ ջուրը դուրս հանեն։ Այդ մի քանի օրում Թուրքի մարգարէն ծածուկ հողի տակ ջրով լիքը տկեր է թաղում, վերջը խաբար ղրկում հայի մարգարէին, որ գայ տեսնի, թէ ինչպէս է աղբիւր բղխեցնում։ Հայի մարգարէն միամիտ գալիս է, խաբար չունենալով Թուրքի թաղած տկերից։ Միամիտ սրտով խփում է գաւազանը և յանկարծ չոր ու ցամաք գետնի տակից մի վճիտ ու մշտական աղբիւր է բղխում։ Հերթը որ գալիս է Թուրքի մարգարէին, ասում է որ ինքը այդտեղ չի խփիլ. տանում է տկեր թաղած տեղը։ Խփում է մէկին, միւսին, երրորդին ջուր դուրս չի գալիս, խողն եկել, հողը փորել, տիկը ծակել, ջուրը հանել էր։ Գնում է վերջին թաղած տկի մօտ. տեսնում է, որ այնտեղ էլ խոզը գնացել, նոր փորել է և ինքն էլ տկի տեղ պառկել։ Բարկացած՝ բռնում է խոզի պոչից, ճաճացնում նրան ու ասում. «այ մունդառ ըլլիս դու»։ Իսկոյն հայի մարգարէն էլ վրայ է բերում, թէ «Սալթ» (միայն) քու բռնած տեղդ մունդառ ըլի լժեօղ (Թող)»։ Այդ է պատճառը, որ Թուրքերը խոզի միսը չեն ուտում, իսկ հայերը միայն պոչն են դէն գցում։

Գոմէշ. «Գոմշաեզը» պարծեցել է, թէ «ինձ չը վերցնելու բեռ չի լինիլ. ծունկ որ չոքում եմ, վախենում եմ, թէ աշխարհը չը քանդուի»։

Արջ. Արջը առաջ յոյն է եղել։ Մէկ օր ծառին նստած տանձ ուտելիս է լինում։ Պատահմամբ նոյն ճանպով անցնելիս է լինում ինքը Քրիստոս Տէրը իր աշակերտներով։ Քրիստոսը նրանից տանձ է ուզում, բայց նա տանձի տեղ՝ վերևից «խըրթիզն» (միջի կճեպն ու կորիզը, «չեչը») է գցում։ Երեք անգամ ուզում է Տէրը, երեք անգամին էլ որ այդպէս է անում յոյնը, Տէրը բարկանում է վրան, և անիծում, ասելով. «գլխիվեր էլար, գլխիվեր իջնուս». (արջը գլխիվայր է իջնում ծառից)։ Այդ խօսքերի ասելն ու նրա արջ դառնալը մէկ է լինում։

Սրանք ասում են, թէ արջը առաջ մարդ է եղել, մայրն անիծել՝ արջ է դարձել։

Ուրիշներն էլ ասում են, թէ արջն առաջ «հօրմի» (յոյն) տէրտէր է եղել։

### գ. Երկակենցաղ կենդանիներ

Կրիա։ Կրիան առաջ մարդ է եղել, ջրաղացպան, բայց շատ «հախ» (վարձ) առնող և գողին մէկը։ Խեղճի մէկը մի օր անիծում է նրան՝ անիրաւ վարձ վերցնելու համար, ասելով. «քեզ տեսնեմ այդ «կօկօշը» (դդմի աման, որով «հախը» չափում են) գլխիտ վրայ անցած՝ ման գալիս»։ Անէծքը կատարւում է և ջրաղացպանը դառնում է կրիա։

### դ. Ձկներ ու ջրային կենդանիներ

Ձկների մասին առհասարակ աւանդութիւններ չը կան, երևի մեծ գետերից ու լճերից հեռու մնացած լինելու պատճառով։ Ոչ հայրենիքում, ոչ էլ այստեղ մեծ գետեր ու լճեր չըկան, իսկ տեղ-տեղ թէև ծովն էլ հեռու չէ նրանցից, բայց ձկան համար յատուկ՝ ծովը գնալու ոչ ժամանակ ունեն, ոչ էլ սովորութիւն, թէև ամեն տեսակ ձկնեղէն էլ ուտում են։

Այսքան միայն ասում են, որ աշխարհում ամենամեծ «հոգւեօրը» (կենդանի) ձուկն է։ Երևի լսել են կէտի մասին, բայց անունը չը գիտեն։

Ջրային կենդանիներից մի նախապաշարմունք միայն լըսել եմ «խեչփարի» (խեցգետին) մասին։

Ասում են, թէ որ «խեչըփարը» մարդու ձեռքից կծի, մինչև երկնքից ամպի ձայնը չը լսուի, կամ էշը 7 անգամ չը զռայ, չի թողնիլ, այնքան ամուր է կպչում։

### ե. Օձ

Օձը սկզբում դրախտի դռնապան է եղել։ Նա է եղել որ խաբել է Եւային։ Դրա համար Աստուած անիծել է նրան և դրախտից դուրս արել։ Օձը գնացել է, բայց մտքումը դրել է նրա ստեղծածներին միշտ վնասել։ Բայց Աստուած յայտնել է նրան, որ նրանից մեռածներին մեղք չի հարցնելու։ Դրանից է, որ օձից մեռածը ինչքան էլ մեղաւոր լինի, Աստծու հրամանով անպատճառ արքայութիւն պիտի գնայ։

Օձի համար ասում են, որ նա ծնւում ու գոյանում է սպիտակ «քեաստօնա» կոչուած դդումից։ «Քեաստօնա» դդումը

երբեմն շատ, անչափ մեծանում է և մէջը նշմարւում է արեան նման կարմիր պուտ։ Հէնց այդ պուտի համար ասում են, որ օձի արիւն է. որ նա դրանից է գոյանում և վերջը դուրս գալիս։

Պատմում են, որ մի տեսակ օձ կայ, որ գլխին թաս ունի։ Այդ թասը շատ զարմանալի յատկութիւն ունի. ով որ նրան տիրանայ, մի գանձի տէր կը դառնայ։ Դա գիշերներն է դուրս գալիս թասի լուսով արածելու և սաստիկ լոյս է տալիս չորս կողմը։

Օձը որ սպանեն մէջը լոբեա «սանդրեն» (տնկեն), երբ բուսնի՝ գան, հանեն, գրպանը դնեն և տեղն ու տեղը պառ-կեն, գիշերը մի գազան կը գայ։ Թէ որ նրանից վախենան, գազանը նրանց կուտէ, իսկ թէ չը վախենան, նրանք այնտեղ մեծ գանձ կը գտնեն։

Ոմանք ասում են, թէ օձի մէջ բուսած լոբեան գրպանը դնողը ուրիշներին չի երևալ. իսկ ով որ ուտի՝ սատանին կը տեսնի։

Օձը երեկոյեան սպանելը լաւ չէ. սպանողը կը հիւանդանայ։

Օձը սպանելիս՝ ծնկից վեր բարձրացնելը, ասում են մեղք է։

Օձը թէ որ երկաթով սպանեն, լաւ չէ. արքայութիւն կը գնայ. դրա համար նրան երկաթով չեն սպանում, այլ փայտով։

Օձն ասել է, թէ ով որ իրան սպանէ, պէտք է եղբօր պէս թաղէ իրան։ Դրա համար էլ օձը սպանելուց յետոյ գետ-նին չեն թողնում, կամ ուղղակի ծառի վրայ են կախում և կամ թէ չէ գետինը փորում, հողի մէջ թաղում են։

Ասում են, որ եթէ գետնի երեսին մնայ, մեծ վնաս կա-րող է տալ մարդկանց իր քխտովը. դրան «օձօն քխտ» են ասում։ Այդ քխտի համար ասում են, թէ փոքր ու ասեղի նման սաստիկ սուր բան է. եթէ մարդու ոտը մտնի, կարող է անբուժելի խոց և ուռուցք պատճառել. ինքն իրան կարող է վեր բարձրանալ մարմնի մէջ, նոյն իսկ մինչև գլուխը, և եթէ մնայ, վտանգաւոր դառնալ։ Երբեմն մարմնի մի տեղից ինքն իրան ծակում է և դուրս գալիս։

Օձի համար ասում են, որ «կոտեօշ» (եղջիւր) ունի։ Մէկ անգամ ինձ ցոյց են տուել. դա մի փոքրիկ, սուրուլիկ, մի քիչ ծակած սև ոսկոր է, սևագոյն ու դրսից պլպլուն, ասում են, որ դա օձից է մնացել։

Էլի ասում են, թէ «Թըւօնգը օձօնը հընու մաշտուն հօմար շինուած է». այսինքն որ՝ հրացանը օձի ու մարդու համար է եղել։ Օձն էլ, մարդն էլ մարդու թշնամիներ են, հրացանն եղել է, որ մարդ իր երկու թշնամիներից պաշտպանուի։

Մէկ էլ ասում են, եթէ որ օձին նշան անեն, չի դիպչի։

Առաջին տեսած օձը կամ որև է սողուն պէտք չէ սպանել. պէտք է թքել վրան ու անցնել «ցաւս վրադ» ասելով։

Օձ որ սպանեն, անձրև կը գայ։

Կան թռչուններ, որոնք օձ են կուլ տալիս, ինչպէս ձըկընկուլ և այլն։ Եթէ պատահի, որ մի այդպիսի թռչուն օձը բերնին թռչելիս լինի մէկի վրայով, մարդը «կեօխ» կըբռնուի։ Եւ ամենավատ «կեօխը» օձիցն է լինում, դա ամենից դժուար է բժշկւում։

## գ. Միջատներ

«Բուզը» (կովերին ու եզներին փախցնող-խայթող ճանճ, ЗИКЪ)։ Մէկ անգամ «բուզը» «էղըրադ» է անում, բոլոր մալերը գնում են. միայն կովն ու եզը չեն գնում. դրա համար «բուզը» մտքին է պահել և նրանց «բզեցնում է»։

«Բուզն» ասել է, թէ ծիծաղս չըգար, մալերին ծառերից կը թռցնէի. գոմէշին էլ կը բզեցնէի, բայց ծաղրս բռնում է չեմ կարողանում։

## VI. Մարդ՝

Մարդու մարմնի մասերը։ Ասում են որ տղամարդու կողքի ոսկորներից մէկը պակաս է։ Այդ հիմնում են Մովսէսական այն աւանդութեան վրայ, որ ասում է, թէ Աստուած Եւային ստեղծելու համար Ադամի կողքից մի ոսկոր հանեց։ Կարծում են, եթէ Ադամին պակաս էր, հիմա էլ ամեն տղամարդ մէկ ոսկոր պակաս կունենայ։

Եղունգ։ Ադամի մարմինը պատուիրանազանցութիւնից առաջ դրսից ամբողջապէս եղունգով էր ծածկուած կաշուի տեղ։

Վերջը՝ երբ Աստուած բարկացաւ, պատժեց նրան, եղունգը վրայից առաւ, կաշին թողեց և մի քիչ տեղ միայն թող տուեց եղունգը՝ իբրև նշան հին վիճակի։ Դրա համար էլ այն կորցնողը պատժւում է։

Կտրած եղունգը կամ պէտք է թաղել և կամ այրել, թէ չէ՝ միւս կեանքում նրանից կուզեն։ Կորցնողին կը պատժեն, մազէ կամրջից կանցկացնեն, որ բերէ, իսկ թաղածը կամ այրածը իրանից էլ առաջ կը գնայ։ Դրա համար եղունգ կտրելիս՝ ասում են. «ընդընը (միւս կեանքում) օր ուզիմ՝ հազիր կաց»։

Եղունգի համար էլի ասում են. թէ ում եղունգը որ երկար լինի, խելօք կը լինի։ Ով որ եղունգի վրայ շատ սպիտակ պուտեր ունենայ, ոչխարի բախտ կունենայ (այսինքն՝ ոչխարից օգուտ կը տեսնի)։

**Մազ**։ Սանդրելուց յետոյ գլխի թափած մազերը կամ պիտի թաղել և կամ այրել, թէ չէ՝ թէ որ այնպէս թափթփեն և ճնճղուկը տանի իր բունը, մարդը գլխացաւի կը բռնուի, Ասում են, որ մազը ինչքան էլ մնայ հողում, չի փթիլ։

**Մատներ**։ Ճկոյթն ու ցուցամատը իրար կպցնող մարդու համար ասում են, թէ մայրը նրան իր կաթը հալալ է արել։

**Լեզու**։ Ով որ լեզուն մօտեցնի արմունկին, կամ արմունկը տանի ուսից ներքև, նա թև կառնի, կը թռչի։

**Կին**։ Կնոջ համար ասում են, թէ սատանայ է։ Չէ որ նա է խաբել Ադամին. Ս. Կարապետի գլուխն էլ նա է կտրել տուել, կնոջ գերեզմանն աւելի խորն են փորում, որ չը լինի, թէ սատանան գայ, տանի իր մօտ։ Աղջիկներին ամեն կիրակի եկեղեցի չեն տանում, լաւ չեն համարում. տարին հազիւ մէկ երկու անգամ։

**Հօր տնէծօը**։ Ջրհեղեղի ժամանակն է լինում, ջուրը սկսում է չորս կողմից շատանալ ու մօտենալ։ Մի տեղ էլ օրօրոցում մանուկը քնած է լինում, հայրը մօտը չի լինում։ Մայրը տեսնելով, որ ջուրը քանի գնում՝ հայ-հայ մեծանում է և պիտի խեղդուի , գնում կանգնում է ուղղակի օրօրոցի վրայ, որ ջրից բարձր մնայ ու չը խեղդուի, մտահան անելով պառկած երեխային։ Մի քիչ յետոյ հայրը որ գալիս է՝ տեսնում կնոջը

օրօրոցի վրայ կանգնած, բարկացած չի համբերում, խփում է նրա երեսին, հրում օրօրոցի վրայից և առնում է օրօրոցը ու-սին, որ երեխին ազատի։ Դրա համար է, որ մօր անէծքը որդուն չի բռնում, իսկ հօր անէծքը. ó դա մեծ բան է, վա՜յ այն որդուն, որ հօր բարկութիւնը կը շարժի և հօր անէծքին կարժանանայ, հօր անէծքը անպատճառ կը բռնէ։

Կոռ։ Հին ժամանակ կաթ եփելիս՝ ինչքան որ վեր ելել, աւելացել է, սառչելիս էլ նոյնքան է մնացել, չի պակսել։ Բայց մէկ անգամ մի պառաւ կաթ եփելիս՝ եռ եկած ժամա-նակ մօտը չի եղել, կաթը բարձրացել, մի քիչ թափուել է։ Դրա վրայ պառաւը չի համբերել. բարկացած թքել է վրան։ Դրանից է, որ հիմա կաթի «բէրէքէթը» կորել է, և եփ գալիս՝ աւելանում է, բայց սառչելիս՝ էլի պակսում է։

«Կուժը ջրին պահէ»։ Այս խօսքերը առանձի տեղ են բա-նում. նշանակում է, որ ինչ չափով որ չափես, քեզ էլ այն-պէս կը չափեն։ Աւանդութեամբ՝ երբ թէ հին ժամանակ ծե-րացածներին կալաթով ձորն էին գցում։ Մարդու մէկը երբ իր պառաւ մօրը կալաթն է դնում, որ ներքև գլորի, մայրը կա-լաթից ձայն է տալիս, թէ «որդիս, կալաթը քեզի պահէ»։ Այդ խօսքերից որդին զգացւում է, միտքը բացւում և մօրն ազատում մահից։

---

## VII. Եղանակի գուշակութիւններ

Նոր-տարու օրեր։ Նոր տարու առաջին օրից մինչև 12, նայած թէ որ օրը ինչ եղանակ է, նրանց համապատասխան ամիսներն էլ այնպէս կանցնեն։ Առաջին օրը՝ յունուարն է. 2-դը՝ փետրուար և այլն. 12-դը—վերջի ամիսն է։ Այսպէս՝ թէ որ առաջի օրը պարզ լինի, առհասարակ ամիսն էլ պարզ կանցնի. թէ որ յունուարի 12-ին ձիւն գայ, դեկտեմբերն էլ ձիւնով կանցնի։

«Վարդանելէ»։ Փետրուարի 18-24 սկսւում է հիւսիսային ու հարաւային քամիների կռիւը։ Կռիւը տևում է մինչև փետ-րուարի 24 ի գիշերը, յաղթութիւնը այդ վերջի գիշերից է

օրօրոցի վրայ կանգնած, բարկացած չի համբերում, խփում է նրա երեսին, հրում օրօրոցի վրայից և առնում է օրօրոցը ու-սին, որ երեխին ազատի։ Դրա համար է, որ մօր անէծքը որդուն չի բռնում, իսկ հօր անէծքը. ό դա մեծ բան է, վա՜յ այն որդուն, որ հօր բարկութիւնը կը շարժի և հօր անէծքին կարժանանայ, հօր անէծքը անպատճառ կը բռնէ։

Կաթ։ Հին ժամանակ կաթ եփելիս՝ ինչքան որ վեր ելել, ուռելացել է, սառչելիս էլ նոյնքան է մնացել, չի պակսել։ Բայց մէկ անգամ մի պառաւ կաթ եփելիս՝ եռ եկած ժամանակ մօտը չի եղել, կաթը բարձրացել, մի քիչ թափուել է։ Դրա վրայ պառաւը չի համբերել. բարկացած թքել է վրան։ Դրանից է, որ հիմա կաթի «բէրէքէթը» կորել է, և եփ գալիս՝ ուռելանում է, բայց սառչելիս՝ էլի պակսում է։

«Կուժովը ջէղն պահի»։ Այս խօսքերը առածի տեղ են բա-նում. նշանակում է, որ ինչ չափով որ չափես, քեզ էլ այն-պէս կը չափեն։ Աւանդութեամբ՝ իբր թէ հին ժամանակ ծե-րացածներին կալաթով ձորն էին գցում։ Մարդու մէկը երբ իր պառաւ մօրը կալաթն է դնում, որ ներքև գլորի, մայրը կա-լաթից ձայն է տալիս, թէ «որդիս, կալաթը քեզի պահէ»։ Այդ խօսքերից որդին զգացւում է, միտքը բացւում և մօրն ազատում մահից։

---

## VII. Եղանակի գուշակութիւններ

Նոր-տարվա օրեր։ Նոր տարու առաջին օրից մինչև 12, նայած թէ որ օրը ինչ եղանակ է, նրանց համապատասխան ամիսներն էլ այնպէս կանցնեն։ Առաջին օրը՝ յունուարն է. 2-դը՝ փետրուար և այլն. 12-դը—վերջի ամիսն է։ Այսպէս՝ թէ որ առաջի օրը պարզ լինի, առհասարակ ամիսն էլ պարզ կանցնի. թէ որ յունուարի 12-ին ձիւն գայ, դեկտեմբերն էլ ձիւնով կանցնի։

«Վարդանելի»։ Փետրուարի 18-24 սկսւում է հիւսիսային ու հարաւային քամիների կռիւը։ Կռիւը տևում է մինչև փետ-րուարի 24 ի գիշերը, յաղթութիւնը այդ վերջի գիշերից է

կախուած, նայած թէ որ կողմի քամին է փչում։ Դրանից է կախուած ամբողջ 40 օրերի եղանակը։ Թէ որ վերջի գիշերուան քամին հիւսիսից ն է, նշանակում է՝ էլի ամբողջ 40 օր, մինչև ապրելի 5, ցուրտ ու ձմեռ պիտի լինի։ Հակառակը՝ հարաւային քամին գարնան ու տաք օրերի նշան է համարւում։ Դրան Թուրքերէն բառով «վադաելի» (ժամանակի քամի) են ասում։ Այդ բանը ամենքը գիտեն և շատերն էլ ընդունում են, բայց այնքան հետաքրքիր կերպով ոչ հսկում են, ոչ էլ հետևում քամուն, շատերը մտքին չեն պահում ամսաթիւը և մոռանում են հսկելը։

Իրանց ասելով հայրենիքում, Անատոլիական ափերում, այդ բանին աւելի մեծ նշանակութիւն են տուել։ Այնտեղ հովիւները վերջին գիշերը յատուկ հսկումներ են արել, իմանալու համար թէ քամին որ կողմից է փչում։ Պատահել է որ երբեմն թոյլ փչած ժամանակ չէ իմացուել թէ որ կողմի քամին է։ Դրա համար այդ գիշերը մինչև լոյս հովիւները չեն քնել. սարի գլխին մի ահագին խարոյկ վառելով՝ աշխատել են գտնել քամու ուղղութիւնը։ Մեծ ուրախութիւն է եղել նրանց համար, թէ որ քամին հարաւից է փչել («կըբլա»)։ Միւս օրուանից ճամպայ են ընկել՝ սարը (եայլա) գնալու, քանի որ նշանը նրանց ցոյց է տուել, որ ցրտից էլ վախ չկայ։ Թէ որ հակառակը՝ քամին հիւսիսից է եղել, 40 օր էլ տեղից չեն շարժուել, մնացել են ցածրերում՝ մինչև չարագուշակ օրերի լրանալը։

Մարտ 9։ Այդ օրից է սկսում «կուկուն» կանչել։ Գայլն էլ այդ օրը գնում է լողանալու։ Թէ որ օրը պարզ լինի, կը ցամքի, թէ չէ՝ թաց կը մնայ։ Գայլի ցամքուելուց ու թաց մնալուց, կամ ուրիշ խօսքով՝ այդ օրուան եղանակից է կախուած ամբողջ ամառուան վիճակը։ Թէ որ այդ օրը պարզ լինի, ամառն էլ չոր-երաշտ կանցնի. իսկ թէ որ անձրևոտ՝ ամառն էլ անձրևով կանցնի։

Նշաններ 1. Կատուի աչքերը որ սևանան, պղտորուին, անձրև կը գայ։

2. Կատուն որ երեսը լուանայ, անձրև կը գայ։

3. «Ղիափները» (չախկալ) որ շատ կանչեն, անձրևը մօտիկ կը լինի։

4. Հաւը որ քթթուի, անձրև կը գայ։

5. Ցերեկով որ գորտը կրկռայ՝ անձրև կը լինի։

6. Շատ որ անձրևէ և «ղիափը» կանչէ՝ օդը պիտի բացուի։

7. Կատուն որ երեսը կրակին դարձնի, ցուրտ պիտի անէ։

8. Կատուի բիբը թէ մեծ լինի, ցուրտ շատ կը լինի։

9. Լուսնի եղջիւրները թէ վեր դարձած լինին, այն ամիսը երաշտ կանցնի. իսկ թէ ներքև՝ անձրև շատ կը գայ։

10. Եօթը տարին մէկ անգամ լուսաստղը յետ է մնում, (առաւօտները ուշ է երևում և իր տեղում չի լինում). յետ մնացած տարին ձիւն քիչ կը գայ։

11. Ասում են թէ՝ որ տարին որ անտառում կաղին, շագանակ և առհասարակ վայրի պտուղներ շատ են լինում, այն տարին ձմեռը խիստ է լինում։

---

## VIII. Աշխարհ եւ ազգեր։

Աշխարհը ինչու վրայ է կանգնած։ Աշխարհքի տակի հիմքը մի եզան վրայ է կանգնած։ Եզը երբոր պառկի, աշխարհքը վրան պիտի քանդուի։ Աստուած դրա համար մի ճանճ է դրել, որ եզան չորս կողմը տզտզում, ման է գալիս. թէ որ եզը պառկել ուզենայ, նրան պիտի կծէ։ Եզը դրա վախից չի պառկում և աշխարհքը կանգնած մնում է։

Ասողներ էլ կան՝ թէ աշխարհքը կարմիր եզան «կոտեօշի» (եղջիւր) վրայ է կանգնած։

Էլի ասում են, թէ աշխարհքը գրկած պահում է մի մեծ ձուկ իր գլխով ու պոչով, որոնք իրարից շատ հեռու չեն։ Գլուխը համարեա մի թիզ միայն հեռու է պոչից։ Բերանը միշտ աշխատում է, որ պոչը կտրի, ուտի, բայց չի կարողանում։ Որ ժամանակ որ պոչը կտրուի, աշխարհքը դուրս կը պրծնուի ու կը կործանուի։

Աշխարհի վերջը։ Վերջի երեք օրին օր ու գիշեր կրակէ անձրև պիտի գայ։

3. «Ղիափները» (չախկալ) որ շատ կանչեն, անձրևը մոտիկ կը լինի։

4. Հաւը որ քթթուի, անձրև կը գայ։

5. Ցերեկով որ գորտը կրկռայ՝ անձրև կը լինի։

6. Շատ որ անձրևէ և «ղիափը» կանչէ՝ օդը պիտի բացուի։

7. Կատուն որ երեսը կրակին դարձնի, ցուրտ պիտի անէ։

8. Կատուի բիբը թէ մեծ լինի, ցուրտ շատ կը լինի։

9. Լուսնի եղջիւրները թէ վեր դարձած լինին, այն ամիսը երաշտ կանցնի. իսկ թէ ներքև՝ անձրև շատ կը գայ։

10. Եօթը տարին մէկ անգամ լուսաստղը յետ է մնում, (առաւօտները ուշ է երևում և իր տեղում չի լինում). յետ մնացած տարին ձիւն քիչ կը գայ։

11. Ասում են թէ՝ որ տարին որ անտառում կաղին, շագանակ և առհասարակ վայրի պտուղներ շատ են լինում, այն տարին ձմեռը խիստ է լինում։

---

## VIII. Աշխարհք եւ ազգեր։

Աշխարհքը ինչու վրայ է կանգնած։ Աշխարհքի տակի հիմքը մի եզան վրայ է կանգնած։ Եզը երբոր պառկի, աշխարհքը վրան պիտի քանդուի։ Աստուած դրա համար մի ճանճ է դրել, որ եզան չորս կողմը տզտզում, ման է գալիս. թէ որ եզը պառկել ուզենայ, նրան պիտի կճէ։ Եզը դրա վախից չի պառկում և աշխարհքը կանգնած մնում է։

Ասողներ էլ կան՝ թէ աշխարհքը կարմիր եզան «կոտեօշի» (եղջիւր) վրայ է կանգնած։

Էլի ասում են, թէ աշխարհքը գրկած պահում է մի մեծ ձուկ իր գլխով ու պոչով, որոնք իրարից շատ հեռու չեն։ Գլուխը համարեա մի թիզ միայն հեռու է պոչից։ Բերանը միշտ աշխատում է, որ պոչը կտրի, ուտի, բայց չի կարողանում։ Որ ժամանակ որ պոչը կտրուի, աշխարհքը դուրս կը պրծնուի ու կը կործանուի։

Աշխարհքի վերջը։ Վերջի երեք օրին օր ու գիշեր կրակէ անձրև պիտի գայ։

**Ազգեր ու ժէրութիւններ**: *Համշէնցիների հաշւով ամբողջ աշխարհքում կայ «եթմիշ իքի բուչուք (72½) միլէթ" (ազգ), «տասվերկու խաչապաշտ թագաւոր» և «օխտն ու կէս հայ»: (Ի հարկէ՝ գիտեն որ հայը այդքան քիչ չէ. այդպէս ասելով ուզում են ցոյց տալ որ շատ չէ):*

**Հայերի գաղթելու պատճառը**: *Տաճկի սուլթանին մի որդի է լինում. ռուսի թագաւորը նրան մի օրօրոց է ընծայ ղրկում: Սուլթանն էլ իր կողմից նրան մի խաչ է ղրկում: Այդ խաչի համար է, որ հայերը կամաց-կամաց ւանց են կենում Ռուսխայի կողմը:*

**Ռուս**: *Մէկ անգամ Քրիստոսը ծովեզերքին ման էր գալիս: Տեսնում է մի ռուս պահապան մեռած մնացել է ափին: Իսկոյն նրան յարութիւն է տալիս: Ռուսը վեր է կենում և, տեսնելով իր մօտ Կանգնողին, շուտով նրան հարցափորձում, նրանից անցաղիր է պահանջում:*

*Ռուսները իրանց հաւատը «հօրումներից» (յոյն) են գնել, մէկ նաւ աղ տալով:*

*«Լէմս» (գերմանացի) «Լէմսը» տաճիկներից անիծուած է, որովհետև շատ տաճիկ է ջարդել. ուրիշի դէմ կռիւ գնալ նրան չի աջողուել:*

*«Քուշ» (թուրք): Հրէաները Քրիստոսին խաչելիս, ուզեցել են սրտից խաչել նրան մի մեծ մեխով: Որտեղից որտեղ պատահմամբ մի քուրդ է գալիս այնտեղ: Նրա աչքը մնում է մեխի վրայ. գողանում է և այդպիսով ազատում Քրիստոսին սրտից մեխուելուց: Դրա համար էլ Աստուած «հէ"լալ» է արել քրդին գողութիւնը:*

**Ստամբօլի առնելը**: *Տաճկի սուլթանը մէկ անգամ գալիս խնդրում է «հօրումների» թագաւորից կաշուի չափ մի տեղ նրա մայրաքաղաքում: Նա էլ տալիս է: Սուլթանը կաշուից բարակ թելեր է շինում և իրար կցելով՝ նրանցով պաշարում ողջ քաղաքը: Երբ «հօրումների» թագաւորին իմաց են տալիս, գոռոզ «հօրումը» չը հաւատալու է դնում և ասում. «թէ որ այս ամանի եփած ձկները կը սաղնան ու կը խաղան, սուլ-*

թանն էլ իմ ձեռքից կառնէ քաղաքը»։ Ձկները, դժբախտաբար, սաղնում—խաղում են, և քաղաքն էլ առնում է։

Վայրենի և Միաչքանի մարդիկ։ Համշէնցիներն ընդունում են, որ բացի մեր պէս սովորական մարդկանցից, սարերում կան և «Վէ"րի-սարի» մարդիկ, ինչպէս և կան մալերի վայրի տեսակներ։ Պատմում են, թէ սարերում իրանց աջողուել է տեսնել այդպիսիներին, որոնք ամբողջապէս ոտից գլուխ մազոտ, անլեզու և խպետ արարածներ են, մարդկանցից փախչում են և իրարից հեռու և ջոկ ապրում։

Պատմում են էլի. թէ իրանց հայրենիքում, Սինօպի կողմերում մի ժամանակ ապրելիս են եղել մի տեսակ վայրենի, աժդահայ հսկայ մարդիկ, որոնք երկու աչքի տեղ՝ մի հատ խոշոր աչք են ունեցել ճակտի մէջ տեղը, այսպէս կոչուած՝ «Գէ"փէ"գեօզներ»—կամ միականիներ։

---

## XI. Սրբեր.

Սուրբ Կոյս. Մէկ օր Յիսուսը կորել էր. Մարիամըման էր գալիս՝ որ գտնէ։ Գալիս հասնում է մի գետի մօտ, որի ձայնը աշխարք էր բռնել։ Մարիամը հրամայում է գետին որ ձայնը կտրէ, և գետն էլ տեղն ու տեղը լռում է։ (Գետի անունը չը գիտեն, բայց հաւանական է՝ Յորդանանի համար լինի աւանդութիւնը)։

Սուրբ Սարգիս։ Պատմում են, որ առաջաւորաց պասի շաբթում ս. Սարգիսը եօթը «հօրում» և մէկ հայ պիտի խեղդէ՝ ձնի ու բքի հանդիպեցնելով նրանց։ Յոյներն այդ շաբթում ոչ միայն պաս չեն պահում, այլ «ինադու» չորեքշաբթին և ուրբաթն էլ են ուտում։

Մէկ անգամ այդ շաբթում մէկ յոյնի բռնում ու ստիպում են, որ պաս կենայ։ Գցում են ամբարը, բայց «ինադ հօրումը» բան չը գտնելով՝ իր տրեխներն է կրծում, որ չասուի, թէ պաս է պահել։

«Խըդրէլէզ»—սուրբ Գևորգ։ Շատերը մինչև այսօր էլ հայրենական սովորութիւնով «մեծ կիրակի» են համարում ապրի-

թանն էլ իմ ձեռքից կառնէ քաղաքը»։ Ձկները, դժբախտաբար, սաղնում—խաղում են, և քաղաքն էլ առնում է։

Վայրենի և միականի մարդիկ։ Համշենցիներն ընդունում են, որ բացի մեր պէս սովորական մարդկանցից, սարերում կան և «Վէ"րի-սարի» մարդիկ, ինչպէս և կան մալերի վայրի տեսակներ։ Պատմում են, թէ սարերում իրանց աջողուել է տեսնել այդպիսիներին, որոնք ամբողջապէս ոտից գլուխ մազոտ, անլեզու և խպետ արարածներ են, մարդկանցից փախչում են և իրարից հեռու և ջոկ ապրում։

Պատմում են էլի. թէ իրանց հայրենիքում, Սինօպի կողմերում մի ժամանակ ապրելիս են եղել մի տեսակ վայրենի, աժդահայ հսկայ մարդիկ, որոնք երկու աչքի տեղ՝ մի հատ խոշոր աչք են ունեցել ճակտի մէջ տեղը, այսպէս կոչուած՝ «Դէ"փէ"գեօզներ»—կամ միականիներ։

---

## XI. Սրբեր.

Սուրբ Կոյս. Մէկ օր Յիսուսը կորել էր. Մարիամը ման էր գալիս՝ որ գտնէ։ Գալիս հասնում է մի գետի մօտ, որի ձայնը աշխարք էր բռնել։ Մարիամը հրամայում է գետին որ ձայնը կտրէ, և գետն էլ տեղն ու տեղը լռում է։ (Գետի անունը չը գիտեն, բայց հաւանական է՝ Յորդանանի համար լինի աւանդութիւնը)։

Սուրբ Սարգիս։ Պատմում են, որ առաջաւորաց պասի շաբթում ս. Սարգիսը եօթը «հօրում» և մէկ հայ պիտի խեղդէ՝ ձնի ու բքի հանդիպեցնելով նրանց։ Յոյներն այդ շաբթում ոչ միայն պաս չեն պահում, այլ «ինադու» չորեքշաբթին և ուրբաթն էլ են ուտում։

Մէկ անգամ այդ շաբթում մէկ յոյնի բռնում ու ստիպում են, որ պաս կենայ։ Գցում են ամբարը, բայց «ինադ հօրումը» բան չը գտնելով՝ իր տրեխներն է կրծում, որ չասուի, թէ պաս է պահել։

«Խըդրելէզ»—սուրբ Գէորգ։ Շատերը մինչև այսօր էլ հայրենական սովորութիւնով «մեծ կիրակի» են համարում ապրի-

լի 23, երբ տօնւում է յունաց «խնդրելէզը»: Զարմանալի է՝ որ այդ սրբի մասին ոչ մի աւանդութիւն չունին, ոչ էլ այդ սրբի համար հայոց եկեղեցու յիշատակած օրը գիտեն: Շատերը նոյն իսկ չը գիտեն, թէ «խնդրելէզը» մեր ս. Գէորգն է, բայց էլի այդ օրը սաստիկ «մեծ կիրակի» են բռնում և յամառութիւնով շարունակում են հայրենական տօնը պահելու: Բոլոր աւանդութիւններն և նախապաշարումները միայն այդ օրը կիրակի բռնելուն ու չը բռնելուն են վերաբերում: Հայրենիքում, իրանց պատմելով, այդ օրը չը բռնող չը կայ. հայ, յոյն, տաճիկ այդ օրը ամենքը անխախտ կիրակի են պահում: Այդ սովորութիւնը իրանց հետ բերել են և իրանց նոր տեղերը: Այդ օրը նրանք շատ խիստ են պահում: Ոչ մի տօն և կիրակի օրով բանելուց այնքան չեն վախում, ինչքան այդ օրուայ բանելուց: Այդ օրը բանողը մեծ վնասի կը հանդիպի, գործը աջող չի գնալ, «ծռի կու»: Հերկ անողի կամ խոփը կը կոտրի, կամ արօրը, կամ արտը բերք չի տալ փորողի՝ կամ փետատը կը կտրի, կամ բանը. ցանածը կամ մուր կը լինի, կամ մուկն ու ճիճուն կուտեն, չի բուսնիլ. ինքը բանողն էլ, կին թէ տղամարդ, կը հիւանդանայ, ցաւի կը հանդիպի. կամ երեսը կը ծռի, կամ ձեռքը կը կոտրի, կամ թէ յղի լինի, երեխան կըծռի և այլն: Մէկ խօսքով ամեն տեսակ ցաւ ու ձախորդութիւն կը թափէ նրա գլխին «խնդրելէզը»: Արդէն իրանց մէջ այդ տեսակ շատ օրինակներ են տեսել և շատ պատմութիւններ են պատմում:

*Հայր Աբրահամը*: Հայր Աբրահամը մի չօբան ունէր. այդ չօբանը երեք հաց-պաշար ունէր մօտը: Հաց ուտելու ժամանակը որ գալիս է, միտք է անում, թէ կարելի է այս «սաբին» մի քաղցած մարդ պատահի, մի քիչ էլ սպասեմ»:

Սպասում է, ճիշտ որ մի քաղցած մարդ է գալիս նրա մօտ. հացի մէկը նրան է տալիս: Մի քիչ յետոյ, մի ուրիշ քաղցած է գալիս. հացի մէկն էլ նրան է տալիս. իրան մէկ հաց է մնում: Բայց էլի չի ուզում մենակ ուտել. մտածում է, եթէ մի քաղցած մարդ էլ գայ՝ ոչխարը կթէ, հացն էլ իրար հետ բրդեն, ուտեն: Այդպէս էլ լինում է. գալիս է մի ուրի-

շը, հաց է ուզում։ Չօբանը նրան ասում է. «Նստիր, միասին ուտենք»։ Նստում են հացի։ Չօբանը մի լաւ կթուող ոչխար ունէր. ման է գալիս, չի գտնում։ Այն ժամանակ հիւրն ասում է նրան. «Մօտի ոչխարը կթիր»։— «Կաթ չունի, «կըսըր» (ամուլ) է, ասում է չոբանը։—Դու կթիր, կտեսնես, կրկնում է նորեն հիւրը։ Չոբանի խելքը գնում է. եօթը տարուան ամուլ ոչխարը նործին կթուանի պէս կաթ է տալիս։ Ինչ որ է՝ ուտում են, խմում, յետ նստում։ Հիւրն ասում է չօբնին. «Հիմա ինչ փափագ որ ունիս, ասա»։—Նա էլ, թէ՝ «ինչ ասեմ. քեզ լաւ յայտնի է»։ Հիւրը խաչակնքում է չօբնին, նա իսկոյն սպիտակում է. յետոյ ոչխարներին է խաչակնքում, նրանք էլ են սպիտակում։

Հայր Աբրահամի մտքն է գալիս չօբանը։ Պաշարը վերցնում, գնում է նրա յետևից։ Իր չօբնի մօտից անցնում է, բայց չի կարողանում ճանաչել։ Գնում է ուրիշ չօբաններից հարցնելու իր խաշների տեղը։ Նրանք էլ ցոյց են տալիս։ Վերջապէս մանգալով գալիս է իր չօբնի մօտ և ասում նրան. «Ասա, թէ գիտես, ինչ պատահեց իմ չօբնին, որ չեմ կարողանում գտնել»։ Նա էլ ասում է. «որ տեսնես՝ կը ճանաչե՞ս»։ Հայր Աբրահամն ասում է. «Թևի վրայ մի նշան ունի. որ տեսնեմ՝ կը ճանաչեմ»։ Այդ լսելուն պէս՝ չօբանը թևը բաց է անում. Աբրահամը ճանաչում է։ Զարմացած՝ հայր Աբրահամն հարցնում է նրան. «Այս շնորհքը ինչպէս ձեռք բերիր»։ Չօբանն էլ ասում է, թէ «քո երեք հացովը»։ Հ. Աբրահամն ասում է նրան. «Այդ շնորհքը ինձ տուր»։ Չօբանն էլի ասում է. «Ես որ երեք հացով այս շնորհքը գտայ, դու ահագին կարողութիւնովդ ինչի՞ չես գտնում»։ Դրանից յետոյ Հ. Աբրահամն էլ գնում է սարը, մտքումը դնելով՝ որ առանց հիւրի հաց չուտէ։ Բայց սատանան հակառակում է նրան. 40 օր ճանպան կապում է. որ հիւր չը գայ նրա մօտ։ Կինը շարունակ կրկնում է նրան, թէ «ա՛յ մարդ, հերիք սպասեցիր. հաց կեր, քաղցած մեռար», բայց նրան ականջ չի կախում։

Քառասներորդ օրը որ գալիս է, Հ. Աբրահամն ասում է կնոջը. «Ել գնա՛, դուրսը նայիր, տես թէ մարդ գալի՞ս է»։

Կինը գնում է, նայում, տեսնում է որ մէկը գալիս է՝ ոչ երկնքից է, ոչ գետնքից։ Այդ որ լսում է, Հ. Աբրահամը պատուիրում է կտրել հորթը և ուտելիք պատրաստել։

Հիւրը գալիս է, հացը որ ուտում, պրծնում են, կովը հանդից գալիս, բառանչում է դռանը։ Հիւրը հարցնում է Աբրահամին. «Ինչի՞ է կովը այդքան բառանչում»։—«Տէր, քեզ յայտնի է», ասում է նա։ Այդ որ լսում է՝ հորթի գլուխը, տոներն ու ոսկորները փոստի մէջ լցած՝ բերել է տալիս իր մօտ։ Հիւրը փչում ու խաչակնքում է նրան. հորթը հոգի է առնում և գնում մօրը ծծում։

*Եղիա մարգարէն։* Յիսուսը երբ երկինք է համբառնում, Եղիա մարգարէին հարցնում է, թէ իրանից յետոյ քանի անգամ պիտի գնայ երկրի վրայ։ Մարգարէն ասում է, թէ եօթն անգամ պիտի գնայ։ Առաջին անգամին պիտի գնայ «բէ"րէ"-քէ"թը» կտրի աշխարհքից. երկրորդ անգամին՝ սէրը պիտի հեռացնի մարդկանցից, նրանց պիտի իրար գցէ. երրորդին՝ ամօթը պիտի վերցնէ մարդկանցից. չորրորդին՝ ջրերը պիտի փըչացնէ… (Մնացածը պատմողը չէր յիշում)։

*«Թօփալ» վարդապետը։* Եօթը վարդապետ պասն ու ուտիսն էին ջոկում։ Դրանցից վեցը առաջ էին եկել, մէկը «Թօփալ» էր, յետ էր մնացել։ Առաջ եկողները մեծ պասը եօթն օր են որոշում, յետեւից գալիս հասնում է «Թօփալը»։ Նրան որ յայտնում են իրանց որոշումը, նա իբր թէ չի լսում ու հարցնում է. «ինչքա՞ն. եօթը շաբա՞թ»։—Հէհ, կուզես քո ասածը լինի, ասում են դրանք ու նշանակում։

Պատմում են էլի, թէ հին ժամանակ վարդապետները ցորենի հացը պաս էին դրել։ Այդ որ իմանում է «Թօփալ» վարդապետը, գալիս յանդիմանում է նրանց, որ ցորենի հացն էլ պաս են դնում։ Եւ իսկոյն, նրանց աչքի առջև, լծում է եզներ և մտնում ծովը ցելում։ Դուրս է գալիս և նրանց ասում. «Հիմի էլ դուք գնացէք իմ ցելած տեղերը ցանեցէք»։ Նրանք զարմանքից քարացած՝ տեղից չեն շարժւում։ Տեսնում էք, ասում է «Թօփալը», դուք որ այդքան բանից վախենում էք, ինչպէ՞ս էք համարձակւում ցորենի հացի պէս բանն էլ

*պաս դնել»։ Դրանից դէսն է, որ ցորենի հացը պաս չեն համարում։*

---

## X. Չար ոգիներ.—Սատանայ

*Համշէնցի հայը խոր համոզուած է, որ բնութեան մէջ չար ոգիներ կան, որ Արարչից անկախ և նրան հակառակ՝ գոյութիւն ունի մի չար զօրութիւն, որ ամեն կերպ աշխատում է խլել մարդկային ազգը Աստծու ձեռքից, նրան փորձանքի մէջ գցել, մատնելով նրան յաւիտենական տանջանքին։ Մարդկանց տանջանքը նրա միակ նպատակն ու ուրախութիւնն է։ Նոյն իսկ թէև լսել է, որ մարդկանց հասած բոլոր աղէտները մեր «մեղքերի» համար են գալիս Աստծուց, բայց երբեմն էլ դրանց ուղղակի վերագրում է աւելի բնութեան մէջ եղած չար ոգուն, սատանի գօրութեան, քան բարի Արարչին, Որին դիմում է միայն չարի ներգործութիւնը մեղմացնելու և զգացնելու համար։ Ճիշտ է՝ նա Արարչին չարից աւելի մեծ է համարում, բայց նրան չարն աւելի է վնասում, նա այդ չարից, սատանայից աւելի է վախում, քան իր Արարչից։ Աստուած թէ որ միւս կեանքում պիտի պատժէ նրան, սատանան ուղղակի այստեղ է փորձանք բերում նրա գլխին, նրան նեղութեան մէջ գցում։*

*Բոլոր չար զօրութիւնների աղբիւրը նա համարում է սատանին, որ երբեմն իբրև «փէրի» ու «ջին»—խաբում է ջահէլ պատանիներին ու երիտասարդներին, իբրև «ջատու պառաւ»—խեղդում է օրօրոցի երեխաներին, իբրև «ալ»—գալիս նստում է քնած մարդկանց վրայ, աշխատելով խեղդել նրանց, իբրև «խորթլաղ» («գոռնադաբ»)—մեղաւոր մեռելներին անգամ հանգիստ չի թողնում գերեզմաններում, վեր հանում, ման է բերում նրանց գիշերներով։*

*Ով էլ լինի, կին թէ տղամարդ, տանը թէ դուրսը, ճանապարհին, թէ ջրի մօտ, հիւանդ թէ առողջ,—-բոլորը ենթակայ են նրա փորձութեան։ Ինչ տեսակ վատ ու չար բան որ լինում է, բոլորը նրա ուզելովն է, ինչ ցաւ, ինչ փորձանք,*

*պաս դնել»։ Դրանից դէոն է, որ ցորենի հացը պաս չեն համարում։*

---

## X. Չար ոգիներ.—Սատանայ

*Համշէնցի հայը խոր համոզուած է, որ բնութեան մէջ չար ոգիներ կան, որ Արարչից անկախ և նրան հակառակ՝ գոյութիւն ունի մի չար զօրութիւն, որ ամեն կերպ աշխատում է խլել մարդկային ազգը Աստծու ձեռքից, նրան փորձանքի մէջ գցել, մատնելով նրան յաւիտենական տանջանքին։ Մարդկանց տանջանքը նրա միակ նպատակն ու ուրախութիւնն է։ Նոյն իսկ թէև լսել է, որ մարդկանց հասած բոլոր աղէտները մեր «մեղքերի» համար են գալիս Աստծուց, բայց երբեմն էլ դրանց ուղղակի վերագրում է աւելի բնութեան մէջ եղած չար ոգուն, սատանի գօրութեան, քան բարի Արարչին, Որին դիմում է միայն չարի ներգործութիւնը մեղմացնելու և զգացնելու համար։ Ճիշտ է՝ նա Արարչին չարից աւելի մեծ է համարում, բայց նրան չարն աւելի է վնասում, նա այդ չարից, սատանայից աւելի է վախում, քան իր Արարչից։ Աստուած թէ որ միւս կեանքում պիտի պատժէ նրան, սատանան ուղղակի այստեղ է փորձանք բերում նրա գլխին, նրան նեղութեան մէջ գցում։*

*Բոլոր չար զօրութիւնների աղբիւրը նա համարում է սատանին, որ երբեմն իբրև «փէրի» ու «ջին»—խաբում է ջահել պատանիներին ու երիտասարդներին, իբրև «ջատու պառաւ»—խեղդում է օրօրոցի երեխաներին, իբրև «ալ»—գալիս նստում է քնած մարդկանց վրայ, աշխատելով խեղդել նրանց, իբրև «խորթլաղ» («գոռնադաբ»)—մեղաւոր մեռելներին անգամ հանգիստ չի թողնում գերեզմաններում, վեր հանում, ման է բերում նրանց գիշերներով։*

*Ով էլ լինի, կին թէ տղամարդ, տանը թէ դուրսը, ճանապարհին, թէ ջրի մօտ, հիւանդ թէ առողջ,--բոլորը ենթակայ են նրա փորձութեան։ Ինչ տեսակ վատ ու չար բան որ լինում է, բոլորը նրա ուզելովն է, ինչ ցաւ, ինչ փորձանք,*

քինչ անյաջողութիւն, որ գալիս է մարդու գլխին, բոլորը նրանից է։ Եւ այդ ահեղ թշնամու դէմ, այդ անհաւասար կռւում՝ Աստուած մարդուն իբրեւ զօրաւիգ ու օգնական իր հրեշտակներին է ղրկում, որոնք սակայն մինչեւ այսօր կայծակի հրեղէն հարուածներով ոչինչ չեն կարողացել անել նրան. չարը առաջուան պէս տիրում է աշխարհքում։ Ամեն անգամ, երբ սատանան հետամուտ է լինում Տիրոջ ստեղծուածին, հրեշտակը հասնում է նրան, աշխատելով ազատել նրան փորձիչի ձեռքից։ Թէ որ ազատում է, ուրախ-ուրախ թռչում, հեռանում է նրանից, սատանին սեւերես թողնում, իսկ երբ չի կարողանում, լաց է լինում նրա համար։

Սատանան ցերեկով ձորերի ու փոսերի մէջ է մնում, գիշերը դուրս է գալիս բաց տեղը եւ կամ ջրերի ափը։ Դրա համար է որ գիշերով առհասարակ լաւ չեն համարում ջուրը գնալը, կարող է չարին ռաստ գալ։ Նրա ձեռքն ընկնողը հեշտ չի ազատուիլ, կը բռնեն սկզբում մի քիչ հետները կընկնեն, կը զուարճանան, բայց վերջը կը չարչարեն ու հոգին կը հանեն, թէ որ բռնուողը ինքն իրան մոռանայ, Տիրոջ անունը չը տայ եւ կամ երեսին խաչ չը հանէ։

Սատանան էլ իր գիր-կարդումն ունի, նա էլ «աւետարան» ունի, բայց մերի նման չէ։ Հիւանդի վրայ «կաշտում» արած ժամանակ նա էլ է կարդում։ Կարդացողը պէտք է ջրի պէս շուտ-շուտ կարդայ, թէ չէ սատանան առաջ կանցնի, իր «կաշտումը» կըսաղացնի, մերը կը կտրի։

Առաւօտը վերկենալուն պէս՝ պէտք է աչքերը լուանալ, որ սատանան աչքը չը մտնէ։

Իրիկունները տունը աւլելուց յետոյ, «կախը» («տէգը», աղբը), ինչպէս եւ «օղուցք» ջուրը պէտք է պահել մինչեւ միւս առաւօտ, գիշերով դուրս չըթափել, թէ չէ կարող է սատանի վրայ թափուել, նա կը բարկանայ եւ մարդուն «չարթմիշ» կանէ (կը խփի)։

Նոր պսակուած տղին գիշերը, մթնով դուրս չեն ղրկիլ, որ չը լինի, թէ չարը խփի եւ կամ ջինները բռնեն։

Գիշերով թէ որ ասեղ ընկնի ձեռքից, գետին չի ընկնիլ. սատանան կը բռնի։

Կրակին որ փչես ու չը վառի, պատճառը էլի սատանան է, նա է որ չի թողնում կրակին վառուի։ Թէ որ փչելիս հետը մի վատ խօսք, մի «քուֆր» անես, սատանի քէֆը կը գայ. այն ժամանակ կը թողնի։

Մի տեսակ թիթեռ կայ, որին «սատանի թիթեռ» են ասում. նրան էլ սատանան է խաբում. ղրկում է, թէ կրակ տանի, բայց այրւում է կրակից։

Գիշերը, մթնով ծառերի վրայ երբ մի լոյս են տեսնում, ասում են՝ «սատանի կրակ» է, փէրիներն են վառել։

Հաց ուտելիս՝ թէ գտալը ձեռքիցն ընկնի, ասել է՝ սատանան խփեց ձեռքին։

Հացի թափած փշուրքը գետնից վերցնելիս, թէ որ փըչենք ուտենք, սատանան կը պատռի, թէ չը փչենք՝ ուրախ կը լինի։

Հաց ուտելը վերջացնելուն պէս՝ սեղանը պէտք է իսկոյն վերցնել, թէ չէ հրեշտակը լաց կը լինի, սատանան կուրախանայ։

Իրիկնահացն անելուց յետոյ ամանները պէտք է անպատճառ նոյն գիշերը լուանալ, թէ չէ «ջինները» կը գան գիշերը և թքով կը լուան, իրանց համար կերակուր կեփեն, կեղտոտ վեր կը գցեն, կը գնան։

Երբ մի բան կորչում է և չեն գտնում, ասում են, թէ սատանան վրան նստած է։ Դրա համար ձեռքի ափին թըքնում են ու ասում. «Սատօնայ, պօշդ ճղեմ կու. ետ գնա բօնի վրայէն»։ Միւս ձեռքն էլ բերում դնում են թքի վրայ խաչաձև. և չորս կողմը դնելով՝ ասում են. «Բստին ես տէ, Բնտին ես տէ» (այս կողմն ես. թէ այն կողմն ես). յետոյ մէկ անգամից խփում են. թուքը որ կողմը որ գնում է՝ կորուստն էլ այն կողմը կը լինի։

---

Ջադու-ի մասին այս բաներն են պատմում։

Ջադուն սովորաբար կինմարդ է լինում. աւելի պառաւներից, բայց պատահում է երբեմն և տղամարդ-ջադու։ Կինը

միշտ փոքր երեխաներին է խեղդում, իսկ տղամարդը՝ միայն հորթերը։ Ջադու լինում են սովորական, մեր տեսած պառաւներն ու տղամարդիկը, որոնք աներևոյթ չար զօրութիւնով՝ դառնում են ջադու։ Ով հարցնէք՝ մէկ-մէկ շատ պատմութիւններ կանեն, թէ ինչպէս գիշերով ջադուին բռնել, նեղն են գցել, թէ ինչպէս յանկարծ զարմացել են, երբ տեսել են, որ ջադու ասածը իրանց դրկեցը կամ ծանօթն է եղել, որից ոչինչ կասկած չեն ունեցել և այլն։

Ջադուն սովորաբար գիշերն է ման գալիս։ Նրա համար ասում են, որ մազի միջից հաց չի ուտիլ, և մի ճախարակ ունի, վրան որ հեծնի՝ մի գիշերում մինչև Հնդկաստան կթռչի կը գայ։ Երեխանց խեղդելու համար ջադուն եօթը գերեզմանից հող է վերցնում և իր ուզած տան վրայ լցնում, որ տնեցոց վրայ խորը քուն բերէ և երեխին խեղդի, նրա «ջիգէրը» գողնայ, տանի ուտէ։ Եթէ ուրիշի երեխայ չը գտնէ, իրանը պիտի խեղդէ։

Ջատուից ազատուելու համար տան երթիկի տակը մի աման ջուր են դնում, որ ջադուն երբ գայ, ջուրը նրա աչքին ծով երևայ, յետ դառնայ։ Եկած ժամանակն էլ՝ երբ տնեցիներից մէկը նրան տեսնի, չպէտք է բարձրաձայն իմաց տայ ամէնքին, թէ չէ ջադուն իսկոյն կը չքանայ։ Պէտք է մի ասեղ վերցնել և ծածուկ գլխի շուրջը երեք անգամ պտտեցնել և յետևի կողմից գետինը խրել։ Դրանից յետոյ էլ չի կարող գալ։ Ջադուին կարելի է բռնել՝ եթէ որ տանը մատաղ արած լինին և մորթին պատին կախ լինի և տեսնողը մորթու տակը պահուի։ Բռնելուց յետոյ տաք-տաք «ակիշով» պէտք է նրա ձեռքի ափը դաղել, որ ջադութիւնը թող տայ, մոռանայ։

Ալք մի աներևոյթ ոգի է, որ երբեմն գիշերները գալիս նստում է քնած մարդկանց վրայ, վրաներն այնպէս ծանրանում, որ մարդը տակը չի կարողանում շարժուել։ Դրան ալնիստ են ասում։ Դրանից ազատուելու համար պէտք է բութ մատը շարժել, պառկած տեղը գլխի տակն էլ «Կիպրիանոս» դնել։

«Խորթլաղ»՝ Մեռածը երբեմն գերեզմանից դուրս է գալիս, շրջում, երևում մարդկանց մէջ. դրան են ասում «խորթլաղ»։

«Խորթլաղը» սովորաբար Թուրք մեռելներից է լինում: Նա մարդկանց աչքին երեք տեսակ է երևում, մարդու, շան կամ կատուի ձևով, ամենից աւելի վնասողը մարդակերպ երևացողն է: Մեռելը երբեմն երևում է միայն սպիտակ պատանքը հագին: Նա գիշերով գալիս է, դռները թխթխկացնում, սրտառուջ ձայնով կանչում, աղաչում, տնեցոց սար ափեցնում:

Մի գիշեր մի ճանպորդ Թուրք գերեզմանատան մօտով անցնելիս՝ երկու սիրուն շնիկ է տեսնում. վերցնում է նրանց, ձիու գաւակը դնում և հետը տուն տանում: Գիշերը շնիկները գոմն է պահում: Մէկ էլ տեսնես՝ կէս գիշերին շնիկները ոռնոց են դնում, դռները ճանկռտում: Գնում է՝ թէ դուռը բանայ, քացի է տալիս՝ չի բացւում: Առաւօտը գնում տեսնում է, որ գոմում երկու ահագին մեռել ընկած են անշունչ: Մարդը խելքի է ընկնում, որ սրանք իր բերած շներն են, ատխպուած տանում, նորից թաղում է նրանց:

«Խորթլաղը» երբ վնաս է տալիս, կարելի է ազատուել նրանից՝ մորթելով նրան երկաթի կոթ ունեցող դանակով, մակոյկի թիով և կամ մանգաղով:

Ասում են՝ թէ որ Թուրքը իր կեանքում գոնէ մէկ անգամ հայ տէրտէրի օրհնած հաց կերած լինի, «խօրթլաղ» չի դառնալ:

---

Ահա և մի երկու աւանդութիւն սատանի մասին:

Մէկ անգամ սատանան ասում է հրեշտակին. «Արի իրար հետ կռուենք»: Հրեշտակը համաձայնում է: Սատանան վերցնում է մի մեծ, երկայն ձող, իսկ հրեշտակը մի պստլիկ փայտ: Մտնում են փուռը: Սատանի փայտը շատ երկայն էր, չի հաւքում փուռը. հրեշտակը իր կարճ փայտովը խփում է խփում սատանին, թալցնում, թողնում: Մի քանի օրից յետոյ սատանան պատահում է հրեշտակին և էլի առաջարկում կռուել, բայց այս անգամ բաց տեղում: Հրեշտակն էլի համաձայնում է: Սատանան այս անգամ վերցնում է մի փոքրիկ փայտ, իսկ հրեշտակը մի մեծ, երկայն «ջոփ» (փայտ) է գտնում. սկսում են կռիւը: Հրեշտակի փայտը երկայն էր, սատանին մօտենա-

յու չի թողնում. խփում, խփում, ջարդ ու խուրդ է անում, սատանի հոգին հանում։

Մէկ անգամ էլ աղամորդին ու սատանան պայման են կապում, որ իրար հետ «օրթըլքղութիւն» (կլորարութիւն) անեն։ Սոխ ու սխտոր են ցանում։ Կանաչը դուրս գալուն պէս՝ մարդ հարցնում է սատանին. «երեսինը կառնես թէ հողի տակինը»։ Սատանան երեսինն է ուզում։ Ժամանակը գալիս հասնում է. սատանան իր փայը քաղում, տանում լցնում է մի տեղ. մի երկու օրում փթեցնում, իսկ մարդն ուրախ-ուրախ հաւաքում է հողի տակի գլխները, տանում, ծախում, փող շինում։

Մէկէլ տարին սատանան նորից պայման է կապում ադամորդու հետ։ Այս անգամ էլ ցորեն են ցանում։ Առաջուան պէս՝ հէնց որ կանաչում է արտը, ադամորդին հարցնում է սատանին՝—որը պիտի առնէ. երեսինը, թէ հողի տակինը։— «չօ ամեն ժամանակ չես կարող խաբել, ասում է սատանան, այս անգամ տակինը ես պիտի առնեմ»։ Ադամորդին բոլ-բոլ ցորենը քաղում տանում է, իսկ սատանան փորում-փորփրում է հողը, տակը բան չի գտնում։

---

## XI. Կախարդութիւն։

Համշէնցի ժողովուրդը ինչպէս որ անխախտ հաւատ ունի դէպի բնութեան չար զօրութեան գոյութիւնը, նոյնպէս էլ ընդունում է, որ չարը խափանելու համար կան յատուկ դեղեր ու միջոցներ, որոնց գաղտնիքն ու ազդեցութիւնը վերագրում է երբեմն չար, երբեմն էլ բարի զօրութեան, սատանի ու սրբերի կողմից մարդկանց տրուած շնորհքին։ Կախարդութիւնը արհեստ շինած, միմիայն նրանով ապրող մարդիկ բոլորովին չկան նրանց մօտ։ Շատ քիչ կը պատահին նրանց մէջ այնպիսիներ, որոնք երկրագործութեան հետ՝ երբեմն պարապ ժամերը այդ տեսակ բաներին նուիրէին։ Այդ էլ շատ անգամ այնքան փողի համար չեն անում, ինչքան վարձքի կամ հէնց այնպէս հարեւանութեան համար։ Կախարդական բաների համար աւելի

յու չի թողնում. խփում, խփում, ջարդ ու խուրդ է անում, սատանի հոգին հանում։

Մէկ անգամ էլ աղամորդլին ու սատանան պայման են կապում, որ իրար հետ «օրթըլքղութիւն» (կլորարութիւն) անեն։ Սոխ ու սխտոր են ցանում։ Կանաչը դուրս գալուն պէս՝ մարդ հարցնում է սատանին. «երեսինը կուզես թէ հողի տակինը»։ Սատանան երեսինն է ուզում։ Ժամանակը գալիս հասնում է. սատանան իր փայը քաղում, տանում լցնում է մի տեղ. մի երկու օրում փթեցնում, իսկ մարդն ուրախ-ուրախ հաւաքում է հողի տակի գլխները, տանում, ծախում, փող շինում։

Մէկէլ տարին սատանան նորից պայման է կապում ադամորդու հետ։ Այս անգամ էլ ցորեն են ցանում։ Առաջուան պէս՝ հէնց որ կանաչում է արտը, ադամորդին հարցնում է սատանին՝—որը պիտի առնէ. երեսինը, թէ հողի տակինը։— «Հօ ամեն ժամանակ չես կարող խաբել, ասում է սատանան, այս անգամ տակինը ես պիտի առնեմ»։ Ադամորդին բոլ-բոլ ցորենը քաղում տանում է, իսկ սատանան փորում-փորփրում է հողը, տակը բան չի գտնում։

---

## XI. Կախարդութիւն։

Համշէնցի ժողովուրդը ինչպէս որ անխախտ հաւատ ունի դէպի բնութեան չար զօրութեան գոյութիւնը, նոյնպէս էլ ընդունում է, որ չարը խափանելու համար կան յատուկ դեղեր ու միջոցներ, որոնց գաղտնիքն ու ազդեցութիւնը վերագրում է երբեմն չար, երբեմն էլ բարի զօրութեան, սատանի ու սրբերի կողմից մարդկանց տրուած շնորհքին։ Կախարդութիւնը արհեստ շինած, միմիայն նրանով ապրող մարդիկ բոլորովին չկան նրանց մօտ։ Շատ քիչ կը պատահին նրանց մէջ այնպիսիներ, որոնք երկրագործութեան հետ՝ երբեմն պարապ ժամերը այդ տեսակ բաներին նուիրէին։ Այդ էլ շատ անգամ այնքան փողի համար չեն անում, ինչքան վարձքի կամ հէնց այնպէս հաւանութեան համար։ Կախարդական բաների համար աւելի

մօտիկ մօլլաներին են դիմում: Սրանք էլ են լսել «ջազարական» գրքի մասին. բայց ոչ տեսնող կայ, ոչ էլ ունեցող:

Դրանց մօտ են տանում գլխաւորապէս հիւանդներին «գիր» անել տալու համար զանազան ցաւերի դէմ. լուսնոտներին, դիւահարներին ու վախածներին — չարից, «կեօխից» ու վախից ազատելու համար: Դրանց են դիմում ամուլները որդի բերելու համար, կորուստ ունեցողները կորուստը գտնելու, երբեմն էլ անձրևի գալն ու չը գալը իմանալու համար և այլն:

Կախարդներն այս միջոցներն են գործ դնում՝ «գիր» են անում, «կաշտում» են անում, «թէ"ղրայի» — համրիչի վրայ հատիկ քաշում, «հօմայիլ, «բազմօտ», «նուսխա» գրում, «թըլիսմ» անում, իսկ երբեմն էլ «տեսիլք» երազները գուշակութիւններ-մարգարէութիւններ անում:

«Գիր» են անել տալիս աւելի այն հիւանդների համար, որոնց համար կասկած կայ թէ չարիցն է, վախից կամ «ակնըռելուց»: «Գիր» են անել տալիս ոչ միայն մարդկանց, այլ և հիւանդ մալերի համար էլ: «Գիր» ասածը յայտնի ու ընդունուած որոշ խնդրուածքներ ու դիմումներ են, որոնց իմաստը երբեմն վերացական ու այլաբանական ձևերով է արտայայտւում, իսկ երբեմն էլ խօսքերից ոչինչ չի հասկացւում: Ամեն մի ցաւի համար ջոկ «գիր» են անում. երբեմն նոյն իսկ մի տեսակ ցաւի համար երկու-երեք տեսակ «գրեր» կան: «Գիրը» աւելի մտքումն են ասում, կամ շրթունքներով կամաց փսփսում, բայց այնպէս որ չը լսուի, հետոն էլ մի աման ջուր, կրակ, ասեղ կամ մի ուրիշ բան վերցնում, նայած ցաւի տեսակին:

«Գիրը» սովորաբար պառաւներին ու գիւղի տիրացուներին են անել տալիս, բայց դժուար բոպէներում ծանր հիւանդների համար դիմում են աւելի մօլլաներին ու յայտնի մարդկանց:

Երբ մէկը միւսին «գիր» է սովրեցնում, թէ որ երկուսն էլ մի սեռից են, մէջտեղը իրանց սեռիցը մի երեխայ են նըստեցնում, որպէս զի սովրելուց յետոյ «գիրը» ուրիշ ժամանակ էլ զօրութիւնը չը կորցնէ. իսկ երբ սովրողն ու սովրցնողը

մի սեռից չեն լինում, այսինքն՝ մէկը կին է, մէկը տղամարդ, մէջ տեղը երեխայ չի ուզիլ *)։

Հիւանդի վրայ ամենից առաջ «կաշտում» են անում։ Կարդացողը ինքը գիտէ, թէ ինչ պիտի կարդացուի։ Ամեն կարդացածը օգուտ չի անիլ. որոշ գրքեր և որոշ տեղեր կան կարդալու։ Աւետարան կարդում են հիւանդի վրայ միայն տէրտէրները. բայց դրանից աւելի կտրուած են Նարեկն ու Կիպրիանոսը, որ գիւղի կախարդ-տերացուներն են կարդում։ Նարեկը թէ որ սալ քարի վրայ էլ կարդացուի, քարը կը հալի. այնքան խիստ է կտրում։ Համարեա դրա չափ ոյժ ունի և Կիպրիանոս ասած գիրքը, որ սովորաբար ամեն տեսակ հիւանդների գլխի տակն են դնում, փոքր, ծծկեր, լալկան ու չքնող մանուկներից սկսած։ Պողը կտրելու համար յատկապէս Նարեկն են կարդում։

Երբ «կաշտումը» օգուտ չի անում, «հօմայիլ» են շինում կտոր-կտոր թղթի վրայ բաներ են գրում, նեղ ու երկայն, հիւանդի բօյի չափ իրար են կցում ու նրան տալիս, որ վրան պահի։ Դրա նման մի տեսակ թուղթ էլ են գրում. նրան էլ «բազմօտ» են ասում։

Երբ սովորական «կաշտումը», «գիրն» ու «հօմայիլները» օգուտ չեն անում, դիմում են իրանց յայտնի մօլլաներին։ Մօլլան սատանին բռնելու «գիրը» գիտէ. սատանի թագաւորութեան կնիքը մեծ մօլլի ձեռքին է. նրա զօրավարը մօլլան է։ Մօլլան գալիս է հիւանդի մօտ, նրա գլխին աղօթքներ ու «կաշտումներ» անում, «նուսկա» գրում և «թլիսմների» զօրութիւնով վերջապէս, եթէ չի մեռնում հիւանդը, աջողում է դուրս հանել հիւանդի փորից չար «ջիներին» և լաւացնել հիւանդին։

«Թէ"գբէ» կամ համրիչ քաշում են աւելի եղանակն իմա-

*) Ժողովրդական „գրերից" այստեղ մենք ոչ մի հատ չենք բերում, քանի որ դրանք բոլորն էլ յօրինուած են ժողովրդական բարբառով, որ առանց բառարանի ու քերականական բացատրութեան դժուար կը լինի հասկանալ։ Այդ թողնում ենք մեր մի ուրիշ ուսումնասիրութեան՝ „Համշէնցի հայերի բարբառին", որ մտադիր ենք լոյս ընծայել ժողովրդական բանաւոր աւանդների նմուշների հետ միասին։

նալու համար։ Թէև շատերը քաշում են, բայց դրան առհասարակ այնքան չեն հաւատում։

Երբեմն, թէև շատ հազիւ, պատահում է, որ հիւանդ կանանցից մէկն ու մէկը «տեսիլք» է լինում. այն է՝ ուշքը գնում է, միքանի օր անզգայ մնալուց յետոյ նորից ուշքի է գալիս և սկսում է պատմել այցելուներին, թէ ինչ շնորհքի է արժանացել ինքը Աստծուց, թէ ինչպէս ինքը գնացել, ման է եկել միւս աշխարհը, թէ ում և ինչեր է տեսել այնտեղ, թէ ինչպէս նեղութեան մէջ է այնտեղ նրանց այս ինչ ազգականը, թէ ինչ է պակաս նրան և կամ թէ ինչ է հարկաւոր անել, որ ննջեցեալը հանգստանայ միւս կեանքում և այլն, կցելով այդ պատմութիւններին մի շարք գուշակութիւններ ու մարգարէութիւններ այցելու դրացիների կեանքի ու ապագայի մասին։

## XII. Սնոտիապաշտութիւններ.

Գուշակութիւններ։ 1. Գործի գնալիս, թէ որ ճանապարհին կտցահարը «ծկծկայ», գործը գլուխ չի գալ։

2. Թէ որ կաչաղակը «ճղճղայ» ճանապարհի ձախ կողմը, գործը չի աջողուիլ, կամ թէ կորուստ մանգալիս՝ չի գտնուիլ. իսկ թէ աջ կողմը «ճղճղայ», վնաս չի տալ։

3. Աքաղաղը թէ որ ցերեկը շէմքին նայելով իրար վրայ երեք անգամ կանչէ, կամ հիւր կը գայ, կամ մի նոր լուր կառնեն։

4. Ականջը որ ծւայ, նոր լուր կառնեն։

5. Ագռաւը որ տան վրայ կռկռայ, տան դըսի ազգականներից մէկը կը մեռնի։

6. Երբ ուզում են իմանալ թէ իրանց դըսի ազգականը գալու է թէ ոչ, բռնում են կատուի պոչից, թէ որ պոչը շարժէ հորիզոնական ձևով, չի գալ. իսկ թէ վերևից ներքև՝ կը գայ։

7. Փէ"խ-չաքալը» (չախկալի մի տեսակն է) ում արտի մէջ որ ոռնայ, նրա տիրոջ տնից մէկը կը մեռնի և կամ մի վնասի կը հանդիպի։ Ասում են՝ որ ոռնացած տեղը «փէ"խ-

նալու համար։ Թէև շատերը քաշում են, բայց դրան առհասարակ այնքան չեն հաւատում։

Երբեմն, թէև շատ հազիւ, պատահում է, որ հիւանդկանանցից մէկն ու մէկը «տեսիլք» է լինում. այն է՝ ուշքը գնում է, մի քանի օր անզգայ մնալուց յետոյ նորից ուշքի է գալիս և սկսում է պատմել այցելուներին, թէ ինչ շնորհքի է արժանացել ինքը Աստուծոյ, թէ ինչպէս ինքը գնացել, ման է եկել միւս աշխարհը, թէ ում և ինչեր է տեսել այնտեղ, թէ ինչպէս նեղութեան մէջ է այնտեղ նրանց այս ինչ ազգականը, թէ ինչ է պակաս նրան և կամ թէ ինչ է հարկաւոր անել, որ ննջեցեալը հանգստանայ միւս կեանքում և այլն, կցելով այդ պատմութիւններին մի շարք գուշակութիւններ ու մարգարէութիւններ այցելու դրացիների կեանքի ու ապագայի մասին։

## XII. Սնոտիապաշտութիւններ.

Գուշակութիւններ։ 1. Գործի գնալիս, թէ որ ճանապարհին կտցահարը «ծկծկայ», գործը գլուխ չի գալ։

2. Թէ որ կաչաղակը «ճղճղայ» ճանապարհի ձախ կողմը, գործը չի աջողուի, կամ թէ կորուստ մանգալիս՝ չի գտնուի. իսկ թէ աջ կողմը «ճղճղայ», վնաս չի տալ։

3. Աքաղաղը թէ որ ցերեկը շէմքին նայելով իրար վրայ երեք անգամ կանչէ, կամ հիւր կը գայ, կամ մի նոր լուր կառնեն։

4. Ականջը որ ծւայ, նոր լուր կառնեն։

5. Ագռաւը որ տան վրայ կռկռայ, տան դրսի ազգականներից մէկը կը մեռնի։

6. Երբ ուզում են իմանալ թէ իրանց դրսի ազգականը գալու է թէ ոչ, բռնում են կատուի պոչից, թէ որ պոչը շարժէ հորիզոնական ձևով, չի գալ. իսկ թէ վերևից ներքև՝ կը գայ։

7. Փէ"խ-չաքալը» (չախկալի մի տեսակն է) ում արտի մէջ որ ոռնայ, նրա տիրոջ տնից մէկը կը մեռնի և կամ մի վնասի կը հանդիպի։ Ասում են՝ որ ոռնացած տեղը «փէ"խ-

չաքալը» փայտի մի կտոր է թաղում. թէ որ փայտը գտնեն ու հանեն, վնաս չի գալ, թէ որ չը գտնեն՝ վնաս կը տեսնեն։

8. Կատուն որ արեւմուտք դառնայ ու պառկի, լաւ նշան չէ. մեռել կը լինի։

9. Երթիկից որ մուր թափուի, տունը մօրուքաւոր մարդ կը գայ։

10. Մուրը հողի վրայից վերցնելիս՝ թէ որ բութ մատին կպչի, տունը կին մարդ կը գայ. իսկ թէ ցուցամատին կպչի՝ տղամարդ կը գայ։

11. Արտում բանելիս՝ թէ որ «էօգնէ"րից» (մի որոշ չափ տեղ) վերեւ մի գորտ տեսնեն, «էօգնէ"րը» վեր չի գնալ, չի աւելնալ։

12. Հիւանդը թէ որ քիթը կամ եղունգները «քցմոլտէ՝» կը մեռնի։

13. Փռնգտալուց յետոյ մատին թքում, քսում են յոնքին, մէկ-մէկ իրանց մօտեկների անունը տալով։ Որի անունը տալուց յետոյ որ մազը ընկնի, ասել է՝ թէ նա է իրան յիշել։

14. Ձունը թէ որ ոռնայ, մեռելի կամ հիւանդութեան նշան է. պէտք է իսկոյն մի դանակ ցցել գետին, որ նշանը սուտ դուրս գայ։

15. Երկու ագռաւ թէ որ իրար յետեւից կռկռալիս թռչեն, մեռլի նշան է։

16. Առհասարակ ամեն տեսակ բերքի առատ գալը լաւ նշան չի համարւում. վատ բան է գուշակում։

17. Ընկած հրացանի վրայից եթէ մէկն անցնի, էլ չի դիպչիլ։

18. Իր բռնած առաջին ոսկից ով որ ուտի, լաւ խփող չի դուրս գալ։

19. Հարսնիք կանչելիս՝ թէ որ «ձընողը» (կանչողը) նստի, հարսը ծոյլ ու «նստուկ» կը լինի։

20. Աղջիկը հարս գնալիս՝ ոտները գետնին չը պէտք է քոտքոտացնի, թէ չէ՝ տան «բէ"րէ"քէ"թը» հետը կը գնայ։

21. Արտում ցանք անելիս՝ երեխի վրայ սերմ գցելը լաւ չէ. երեխան չի մեծնալ։

22. «Ղայիշը» (լծի կաշին) գլխիվայր կախելը լաւ չէ. տանը վնաս կը գայ։

23. Տրեխը առաջ աջ ոտինը պիտի հագնել. ձախը առաջ հագնելը լաւ չէ. գործը աջող չի գնալ։

Կիրակի ու չըբանուելի* օրեր։ Առհասարակ չորեքշաբթին ու ուրբաթը շաբթուան մէջ վատ օրեր են։ Այդ օրերին գործ սկսելը լաւ չէ. նոր հերկ և առհասարակ երկրագործական նոր բան չեն անել։

Հերկի, ցանքի և ճանապարհ գնալու համար շաբթուան մէջ աւելի լաւ են համարում — երկուշաբթին, հինգշաբթին և շաբաթը։ Մասնաւորապէս ցանքի համար ամենից լաւ է երկուշաբթին, ապա թէ հինգշաբթին ու շաբաթը. ամենից վատ են երեքշաբթին և ուրբաթը. այդ օրերին ցանածը մուր կը բռնի և որոմ շատ կը բերի։ Երեքշաբթի առհասարակ նոր գործ չեն սկսում, ոչ ցանք և ոչ էլ ճանապարհ գնալն։

—Երեքշաբթի, հինգշաբթի և շաբաթ երեկոներին գործը շուտ են թողնում. այդ երեկոներին չի կարելի մինչև մութը բանել. որովհետև մեղք է։ Այդ երեկոներին «չորեք մուտ», «ուրփըշտէք» ու «կիրակշտէք» են ասում։ Ով որ այդ երեկոներին սամի ծռի, որդին կը ծռի ու գործն էլ չի աջողիլ։ «Չորեքմուտի» և «Ուրփշտէքի» երեկոներին շատ բանողը «հաւկուր» կը բռնուի։

Չորեքշաբթի և ուրբաթ ոչ շոր են լուանում և ոչ էլ եղունգ կտրում։ Եղունգ կտրում են աւելի հինգշաբթի կամ շաբաթ. միւս օրերին լաւ չէ. մանաւանդ չորեքշաբթին և ուրբաթը, այդ օրերին կտրած եղունգը «չուխտ» կը դառնայ (հաստանալ) կամ շան մազ կը բռնի։ Ասում են որ չորեքշաբթի օրը ծառ կտրելն էլ լաւ չէ. ճիճուն կուտէ։

«Կօկօրասի» (մեծ պասի առաջին շաբաթը) ամբողջ շաբաթը բանելու համար լաւ չեն համարում։ Երկուշաբթին «ցեստուն» է. ով որ այդ օրը բանի, ողջ տարին նրա տանից ցեցն անպակաս կըլինի։ Երեքշաբթին՝ «Սէլտուն» է (Սէլտար» էլ

են ասում). այդ օրը բանողի արտը «սէլը»—հեղեղը կը տանի։ Չորեքշաբթին՝ «գէ՛լտուն» է. մալերը գայլը կուտէ։ Հինգշաբթին՝ «քօմտուն» է. շէնքերը քամին կը տանի։ Ուրբաթ՝ —«մկտուն» է. տանը մկներ կը շատնան։ Շաբաթ՝ «ցաւտուն» է. տունը ցաւով կը բռնուի։

Մարտի 1—9 ասում են «լիկախօնձ» է. սիմինդր չեն ցանում։

Ծննդի ու Զատկի չինանքին ամեն իրիկուն «հաւկուր» է։ Թէ որ ծնողները «հաւկուր» չը պահեն, այսինքն՝ արեւի մըտնելուն պէս՝ գործը չը թողնեն, որդիքը «հաւկուր» կը բըռնուեն։ Զատկի չինանքի համար էլի ասում են, որ ամեն հինգշաբթի մինչեւ ժամբարձում՝ իրանց հները սովորութիւն են ունեցել կիրակի պահելու. «սէլի» օրեր են եղել նրանց համար. չը պահողի արտը ջուրը կը տանէր։ Թէեւ լսել են որ այդպիսի մի սովորութիւն եղել է իրանց մէջ, բայց հիմա այդ օրերին համարեա ոչ ոք կիրակի չի բռնում։

Հաց։ Ուրիշի ձեռքին հաց կոտրելը լաւ չէ, մեղք է. պէտք է ձեռքիցն առնել, այնպէս կոտրել, եւ կամ թէ չէ՝ թողնել, որ ինքը կոտրի։

Հացը նոր հանած ժամանակ ուտելը մեղք է. հացի «բուղը» պէտք է արտը գնայ հասնի, որ ապա ուտուի։

Հացը տակն ու վրայ չեն դարձնիլ. մեղք է։

Հացը շատ մեծ չը պիտի խածել, թէ չէ մեծ պատառը կը դողայ։

Հաց ուտելուց վերկենալ «ճապղտել» (ճմկոտիլ) լաւ չէ. մեղք է։

Ով որ «ճաշի» տակուցքը գդալով քերէ ուտէ, նրա հարսնիքին անձրեւ կը գայ։

Ով որ հացի մանր փշուրք ուտէ, նրա նշանածը սիրուն կը լինի։

Կնոջ հետ հաց ուտողի միրուքը «քեօսա» կը լինի։

Կենդանիներ։ Նոր գնած մալը յետ չփախցնելու համար պէտք է դնչից մինչեւ պոչի ծայրը մի թելով չափել (պոչը պէտք է բռնել հօրիզօնական, կախ չը լինի). թելը պահել

*տան կամ գոմի շէմքի գլխին. դրանից յետոյ էլ մալը յետ չի փախչիլ:*

*Դալը որ տաք-տաք ուտուի, հոըլթը կամ «փալախը» (գոմէշի ձագ) շոր «ծամուկ» կը լինին:*

*Որպէս զի նոր ծնած հոըլթը կամ «փալախը» ձայնով լինին, թէ հորթ է՝ պէտք է դալի մէջ «բոլոքել» (բառաչել), իսկ թէ փալախ՝ պէտք է «մըռալ» (գոմէշի ձայն հանել):*

*Կովը կթող կնոջ մատին թէ որ մի մատնի չը լինի, կովը շատ կաթ չի տալ և ծծերն էլ կը տրաքուեն:*

*Մալը գիշերը դուրս մնացած ժամանակ պէտք է դռան շէմքի վրայ դնել երկու գտալ խաչաձև, որ գազանը մալին չմօտենայ:*

*Թէ որ մի «ղիափ» կանչէ և ուրիշը նրան չը ձայնակցէ, վերջինը կը բոլոտի:*

***Փոխ ու առևտուր:*** *Ջրաղացից նոր բերած ալիւրից փոխ տալը լաւ չէ. «բէրէքէթը» հետը կերթայ. պէտք է նախապէս մի քիչ վրայից վերցնել և ապա թէ տալ:*

*Սապոնը մէկին տուած ժամանակ տուողը իր ձեռքի վերի երեսին է դնում, այնպէս տալիս:*

*Ուրիշին հաւ սուած ժամանակ՝ պէտք է հաւից 3 փետուր քաշել, բունը գցել, որ մնացած հաւերին վնաս չըպչի:*

*Սակարկութեան ժամանակ՝ պէտք է բութ մատների եղունգները իրար քսել, որ առուտուրը լաւ աջողուի:*

*Գործի կամ առուտուրի գնացած ժամանակ՝ պէտք է գուլպի մէկը շուռ տուած հագնել, որ գործը աջողի:*

*Քսակի բերանը նորքև դարձած փող չը հանել միջից. «բէրէքէթը» կը գնայ:*

**Ցաւեր ու դեղեր:** *«Աչնըռ-էլ» — աչքով տալ: Կան մարդիկ, որ չար աչք ունին և կարող են աչքով տալ, այսինքն՝ ցաւ ու փորձանք բերել՝ եթէ նրանք մի բանի հաւնեն կամ նախանձեն:*

*Չար աչքից ազատուելու համար այս միջոցները կան.*

1. Թէ որ մէկը մի բան տեսնի ու աչքը մէջը մնայ, պէտք է թքի, թէ չէ՝ աչք կը տայ։

2. Թէ որ մէկին փորձել են, որ չար աչք ունի, նրանից ազատուելու համար պէտք է նրա ոտնամանը ծակել։

3. Նորածին կովի և առհասարակ «կալթում» ու գեղեցիկ մալերի ճակտին կապում են վայրի խնձորենուց և կամ հասարակ ապակուց շինած զանազան տեսակ «յուլուններ» («աչէչ չլլուն»), խոզի ատամ, նալերի կտորտանք, հաւի ծերտ շորի կտորի մէջ փաթթած, երբեմն էլ ակըմոմ են կպցնում մի կողմի ականջի մազին, որ «չակնըուին»։

4. Որպէս զի արտի կամ «ածուքի» բերքը «չակնըուէ», մէջը տնկում են վայրի խնձորենու մի մեծ ճիւղ, վրան էլ կախում են մալի գլխի ոսկորը տրեխի հին թելով, կամ թէ վրան ձուի կճեփներ շարում։

5. «Աչկնըուած» կովին լուացնելու համար պէտք է օջախի շղթան երեք անգամ կոխել խուս ջրի մէջ, երեք անգամ էլ մի խանձող դնել—հանել և ապա տալ կովին խմելու։

Վախածին այս դեղերն են անում. վերցնում 1 ձու, 1 հին տրեխ, 1 «մատմօն», 3 հատ ածուխ, 3 հատ մոխրի «փիփիլ» (հաց), «բէքմէզ» (պտուղներից շինած մեղր) կամ քացախ, տանում գերեզմանատուն, վրան դնում, կրկնում 3 անգամ «քու փայդ խսա է» (բաժինդ սա է) ասելով, և ապա վերադառնում առանց յետ նայելու։ Այդ դեղը պէտք է վախեցած օրն անել, կամ թէ սպասել այնքան՝ մինչև որ էլի նոյն օրը գայ։

«Կեօխը», ինչպէս վերևն էլ ասել ենք, շատ պատճառներից է լինում. նոր ծննդկանից, մեռելից, մսից, օձից և այլն։ Ասում են մինչև անգամ փայտը ուսին տուն մտնելուց էլ փոքր երեխան կարող է «կեօխ» բռնուել։ Դրանից բժշկուելու համար բացի վերը յիշածներից, կան և ուրիշ միջոցներ, բայց ամենաազդու դեղը սա է. պէտք է հալել արճիճ կամ մոմ, (կամ երկուսը միասին), աւելի ոյժ ունի արճիճը։ Հալում են այսպէս. ջրաղացի տակից գիշերով ծածուկ ջուր են բերում, այնպէս որ ոչ ոք չիմանայ. ոչ մարդ, ոչ թռչուն։ Բերած

ջուրը գետնի վրայ չը դրած (թէ չէ զօրութիւնը կանցնի), կախում են ուղղակի օջախի շղթայից։ Ջուր բերողը ով կուզէ լինի, միայն պէտք է մօր առջինեկը լինի։ Յետոյ գնում են խօթը պատից (արտի) փայտ հաւաքում, որ նրանով տաքացնեն բերած ջուրը։ Վաղ առաւօտեան, թռչունները չը զարթած, պէտք է խօթը աղբիւրից էլ ջուր բիրել. լցնել «սախօնը» (թաս), վրան 3 հատ հացի գդալ դնել, երկուսը մի կողմը, մէկն էլ նրանց վրայ՝ խաչաձև։ Յետոյ հալում են արճիճը (կամ մոմը և կամ երկուսը միասին). ջրով «սախօնը» բռնում են «կեօխ» բռնուածի գլխին, լցնում հալած արճիճը կամ մոմը «սախօնը»՝ գդալների արանքից։ Ջրի մէջ սառչելուց յետոյ՝ արճիճը նորից հանում են, հալում և ածում «սախօնը». այդպէս երեք անգամ կրկնում։ Այնուհետև «սախօնը» էլի գլխին բռնած՝ կրկնում են նոյն բանը առաջուան կարգով, ջոկ-ջոկ սրտի, ծնկների ու ոտների համար, մտքում նրանց անունը տալով, ամեն մէկին երեք անգամ։ Հալողն ու «սախօնը» բռնողը միևնոյն մարդն է լինում և անպատճառ մօր անդրանիկը։ Նոյնպէս անդրանիկ է լինում աղբիւրներից ջուր հաւաքողը։ Դրանից յետոյ հիւանդը կը լաւանայ, բայց հալած օրը չը պէտք է ուրիշի տունը գնայ, թէ չէ ուրիշն էլ կը բռնուի։

Կայ և ուրիշ դեղ։ Պէտք է ման գալ, գտնել մի այնպիսի «մաղեօլի» փուշ (մօշի թուփ), որի ճիւղը ջոկ արմատ տուած լինի։ Պէտք է ճիւղը մի քիչ բարձրացնել և հիւանդին նրա տակովն 3 անգամ անցկացնել՝ երկու արմատի արանքից, որ ցաւիցն ազատուի։

Երբեմն «մաղեօլի» տեղ վերցնում ճեղքում են միջից խաղողի վազը (տանու կամ վայրի) և կամ «ջաղուի փուշը», ծայրին մի քիչ թողնում, որ իրարից չը բաժանուին. դրանց միջից անց են կացնում հիւանդին 3 անգամ։

Օձից «կեօխ» բռնուածին բժշկելու համար պէտք է մի օձ բռնել, կիսահողի անել, հիւանդին նրա վրայ լողացնել, որ ցաւը նրան անցնի, և ապա թէ բաց թողնել օձին։

«Օջխուղ» (ծնոտների ու բկի տակի խուլերի հիւանդու-

Թլւն) հիւանդ երեխին լաւացնելու համար պէտք է նրա հօր շապիքը լուանալ և նրա ջրով լողացնել երեխին։

Բերանից ջուր գնացող երեխին պէտք է խմեցնել քեռու տրեխների ջուրը։

Բնջացաւի դէմ, ենթադրելով որ նա միլան կերած հացից է, բռնում կատուի ոտները 3 անգամ քսում են դրսից բկին, ասելով. «մուկն օր հաց կերաւ. դուն ո՞յտեխ էյդ (ուտեղ էիր)»։

Գայլի կծած Մալի փորի տակ ու վրայից որ 3 անգամ մի քած շուն պտտեցնեն, էլ չի սատկիլ։

Գայլի կծած տեղից մի կտոր միս կտրում, դցում են նոր ծննդկանի ոտի տակ։ Վէրքը լաւանալուց յետոյ մինչև 7 տարի այն մալին էլ գայլը չի մօտենալ։

«Քնեօր» ունեցող հորթին՝ ճտին մի թել են կապում և 3 անգամ սալորի ծառի շուրջը պտտեցնում. ապա վերցնում մի նոր մեխ, նրանով հորթի երկու ականջը թեթև կերպով ծառին մեխում ու թողնում, որ հորթը ինքը քաշի, ազատուի։

Անտառում մի տեղ նստելիս՝ պէտք է թքել և ապա նստել, որ չը լինի թէ բոլոտ «ղիափի» տեղ լինի և նստողը բոլոտի։

Թէ որ մէկը մի տեղ ընկնում, իրան ցաւեցնում է, տնից մէկը, հայրը կամ մի ուրիշը, գնում է ընկած տեղը փետատով փորում. թէ որ միջից ածուխ է դուրս գալիս, տանում խմեցնում է հիւանդին որ լաւանայ։

Երբ այրիները նորից ամուսնանում են, լողները պէտք է իրանց գլխի տակի բարձերը տակն ու վրայ դարձնեն, որ երեսը տակը գայ, աստառը վերևը, թէ չէ հարբուխ կընկնին։

Թէ որ երկար ու ծանր հիւանդը (աւելի՝ ծեր կամ անդամալոյծ) բեզրեցնում է, չի մեռնում, ծածուկ նրա հասակի չափ թել են վերցնում և մի ուրիշ մեռելի հետ գերեզման դնում, որ հիւանդը շուտ մեռնի։

Երազի մեկնութիւնը։ Սրանք էլ, ինչպէս ամեն տեղի հայ ժողովուրդը, խորին հաւատ ունին երազի վերայ։ Ընդունում են, որ երազը սուտ, դատարկ բան չէ. մի միտք, մի իմաստ ունի մարդու կեանքի և ապագայ վիճակի վերաբերմամբ։ Ե-

րազների բացատրութեան նրանք աւելի են հաւատում, քան ուրիշ որեւ է նախապաշարմունքի։ Միւսները կամաց-կամաց մոռացւում, անտես են առնւում, մինչդեռ երազին համարեա ամենքը հաւատում են։ Այդ բանին վկայ ունին նրանք բացի ս. Գրքում պատմուած օրինակներից, և իրանց անձնական կեանքից բազմաթիւ դէպքեր, երբ այս կամ այն երազից յետոյ յայտնի բաներ են պատահել։ Մեծ հետաքրքրութիւնով տեսնողը զարթնելուն պէս սկսում է պատմել տանը, հարևանին կամ ընկերոջ տեսած երազը, աշխատելով նրանց կարծիքն իմանալ։ Երազը մեկնելու համար սովորաբար իւրաքանչիւրը օգտւում է պապերից լսած բացատրութիւնից։ Երբեմն ծանր և սարսափելի երազների համար դիմում են տէրտէրի և կամ ուրիշ խելօքների խորհրդին, իրանց յուզուած ու անհանգիստ հոգուն բաւականութիւն տալու համար։

Երազում տեսած ամեն մի բան իր մեկնութիւնն ունի, որ այստեղ աւելորդ ենք համարում մէջ բերել։

**Մարմնի անդամների խաղը։** Սրանք էլ են այլ և այլ բացատրութիւն տալիս մարմնի անդամների խաղին, թէև խիստ կերպով՝ ոչ ոք նշանակութիւն չի տալիս այդ բանին և սովորաբար անուշադիր են թողնում։ Աչքը որ խաղայ, ասում են, էր պէտք է ուրիշին ասել, թէ չէ աչքը լաց կըլինի։

Ձեռքը որ քոր գայ, թէ որ աջը լինի, մէկից փող կը գայ, իսկ թէ որ ձախը՝ մէկին փող կըտայ։

Ոտի տակը որ քոր գայ, ճանապարհ կը գնայ։ Եւ այլն։

---

## ՏՕՆԵՐ

**Նոր-տարի։** Նոր-տարու նախորդ օրին (դեկտ. 31) «Ծաղկըմուտ» են ասում։ Այդ օրը կանանցից նրանք, որոնց որդիքը ծաղիկ չեն քաշել, ոչինչ չեն անիլ, իսկ առհասարակ բոլորն էլ «ռօկ» չեն մանիլ, գլխները չեն լուանալ, որ մազը չսպիտակի և այլն։ Այդ օրը եօթը տեսակ կերակուր ու տեսակ-տեսակ հացեր են եփում. եփած կերակուրն էլ ոմանք մինչև երեք օր ուտում են։ Այդ կերակուրներն ու հացի տեսակներն

բացնելու բացատրութեան նրանք աւելի են հաւատում, քան ուրիշ որև է նախապաշարմունքի։ Միւսները կամաց-կամաց մոռացւում, անտես են առնւում, մինչդեռ երազին համարեա ամենքը հաւատում են։ Այդ բանին վկայ ունին նրանք բացի ս. Գրքում պատմուած օրինակներից, և իրանց անձնական կեանքից բազմաթիւ դէպքեր, երբ այս կամ այն երազից յետոյ յայտնի բաներ են պատահել։ Մեծ հետաքրքրութիւնով տեսնողը զարթնելուն պէս սկսում է պատմել տանը, հարևանին կամ ընկերոջ տեսած երազը, աշխատելով նրանց կարծիքն իմանալ։ Երազը մեկնելու համար սովորաբար իւրաքանչիւրը օգտւում է պապերից լսած բացատրութիւնից։ Երբեմն ծանր և սարսափելի երազների համար դիմում են տէրտէրի և կամ ուրիշ խելօքների խորհրդին, իրանց յուզուած ու անհանգիստ հոգուն բաւականութիւն տալու համար։

Երազում տեսած ամեն մի բան իր մեկնութիւնն ունի, որ այստեղ աւելորդ ենք համարում մէջ բերել։

**Մարմնի անդամների խաղը։** Սրանք էլ են այլ և այլ բացատրութիւն տալիս մարմնի անդամների խաղին, թէև խիստ կերպով՝ ոչ ոք նշանակութիւն չի տալիս այդ բանին և սովորաբար անուշադիր են թողնում։ Աչքը որ խաղայ, ասում են, էր պէտք է ուրիշին ասել, թէ չէ աչքը լաց կըլինի։

Ձեռքը որ քոր գայ, թէ որ աջը լինի, մէկից փող կը գայ, իսկ թէ որ ձախը՝ մէկին փող կըտայ։

Ոտի տակը որ քոր գայ, ճանապարհ կը գնայ։ Եւ այլն։

---

## ՏՕՆԵՐ

**Նոր-տարի։** Նոր-տարու նախորդ օրին (դեկտ. 31) «Ծաղ-կըմուտ» են ասում։ Այդ օրը կանանցից նրանք, որոնց որդիքը ծաղիկ չեն քաշել, ոչինչ չեն անիլ, իսկ առհասարակ բոլորն էլ «ռօկ» չեն մանիլ, գլխները չեն լուանալ, որ մազը չսպիտակի և այլն։ Այդ օրը եօթը տեսակ կերակուր ու տեսակ-տեսակ հացեր են եփում. եփած կերակուրն էլ ոմանք մինչև երեք օր ուտում են։ Այդ կերակուրներն ու հացի տեսակներն

են. լոբեա, եփած «լաղտ» (սիմինտը), «բօնջլով ապուր», «ալ-մով ապուր», պասուց «ճաշ», «քեաստօնա» դդում, չիր, «խօ-լօջ» դդմով ու պրասով հաց, «բաղլօմա» (սաջի վրայ եփած տափակ հաց), «քսրհաց» (քարի մէջ եփած հաց), «փուռնիտ» (կլոր, գունտ հաց) և այլն։

Ծաղկըմուտին՝ տուն-ելթիկ աւլում, աւլածը ջուրն են լթափում։

Այդ օրը «ջաղուի փուշ» (մասուրի) են հաւաքում, տան ելթկին ու բոլոր շէնքերի շէմերին դնում, նոյնպէս և սնդուկ-ների դրսի կողմը, դռներին մօտիկ, որ փշի վախից չարերն ու ջատուն չը գան ու չը մտնեն ներսը։

«Ծաղկըմուտի» օրը մարդիկ իրանց բոլոր հաշիւները պէտք է մաքրեն. առնելիքները առնեն, տալիքները տան։

Այդ օրը գիշերով դուրսը մանգալ լաւ չեն համարում։

Ասում են, որ այդ գիշերը «սօնդերքը» պէտք է փուռը գցել կամ մի խորը տեղ, և թողնել այնտեղ մինչև Զըրօրհնէնքը, թէ չէ գիշերը դուրս ելողին «կօնտօլօզը» նրանով եօթն ան-գամ «կը սօնդերքէ»։

«Ծաղկըմուտի» գիշերը ջրերը մի ժամի չափ կանգնում են և ոսկի արծաթ դառնում, բայց այդ րօպէին՝ ջուրը գնա-ցող մարդուն աչքին մի սարսափելի բան կերևայ. վախից կը փախչի մօտից և մինչև 7 անգամ ջրի վրայից չանցնի, «կօն-տօլօզը» կը խփի նրան։

Այդ գիշերը ծառերին էլ ծունր են անում, երկրպագութիւն տալիս Արարչին։

«Ծաղկըմուտի» գիշերը այս սովորութիւնն էլ կայ. մինչդեռ տնեցիք ամենքը բոլորուած՝ տաքանում են օջախի շուրջը, յանկարծ դրսից դռանը մի բան են խփում, դուռը բացւում է, ներս է ընկնում մի «հաբիգա», մէջը քար դրած, երկայն չուա-նից կապուած՝ գցողը չի երևում, հեռուից սպասում է։ Տանը իրարանցում է ընկնում, սկսւում է ծիծաղ, ուրախութիւն. «հաբիգան դէս ու դէն են քաշքշում, բայց էլի գցողը հեռու է մնում։ Յետոյ թողնում են ձեռքից, չուանը դրսից քաշում են, բայց չի անցնում մի քանի րօպէ, կրկնւում է նոյնը,

մինչև որ տեսնելով որ չի լինում, դըսեցին դադար չի տալիս, կաղին, ընկոյզ են լցնում մէջը, և ապա թէ անհրեւոյթ մալըը ձեռք է քաշում, հեռանում տնից։

«Ծաղկըմուտի էրիկուան մի սեղան են սարքում, վրան «իբրիգով» (աման) ջուր դնում, երկու հատ էլ «օնի» (ծառ է, грабъ) ցախ և թողնում մինչի առաւօտ։ Մի խնձորի մէջ էլ, կամ թէ խնձոր չը դտնուի, «քեաստօնի» մէջ արծաթէ փող են դնում և պահում մինչի առաւօտ։ Առաւօտեան խնձորն իրար մէջ բաժնում են՝ փողն ում որ ընկնում է, մի քիչ «լազտ», լոբիա ու կարմիր «լիլիկ» (վայրի ծառերի բերած կարմիր հատիկները) գըպանը լցած, վերցնում է սեղանը և մի տղի հետ գնում է գոմը, առաջ աջ ոտը դնում, յետոյ ներս մտնում։ Սեղանը դնում է գետնին, գըպանից հանում լոբիան ու «լիլիկը» և շաղ տալիս մալերի վրայ, ասելով՝ «խատ ու խլինջ (խատուտիկ), էք ու բացլիկ. մեղուի պէս շատնաք»։ Այդ ասելուց յետոյ սեղանի վրայից մի-մի կտոր բան բերանն են դնում, յետոյ կապում են «աչառը» (որձ հորթը) և սեղանի հետ տուն բերում։ «Աչառի» առաջ «եմ» (ուտեստ) են դնում, եղջիւրներին մոմ վառում, վերջն էլ նստում, գոմից բերած սեղանի հացը ուտում։

Նոր-տարին թէև կիրակի չեն պահում և մէկէլ օրերի պէս բանում են, բայց շատ բաներ են պատմում այդ օրուայ առիթով։ Լուսադէմին, դեռ լոյսն ու մութը չը բաժնուած, ամեն կողմից հրացանների տրաքտրաքոցով աւետում են նոր կեանքն ու նոր բախտը։

Այդ օրը առհասարակ ամեն բան շնորհաւորում են, սկսած իրանցից ու իրանց մօտիկների տներից ու «կօրօբներից» մինչև իրանց գոմերն ու մալերը, բոլորին նոր բախտ ու աջողութիւն են մաղթում։ Շնորհաւորելու եկողներին մի-մի բան տալիս են եփած «լազտ», կաղին, ընկոյզ և այլն։ Առաւօտը, մալերին շնորհաւորելու գնացած ժամանակը, նախապէս ծառի մի քանի ճղներ մի քիչ խօթում են կրակը և ապա տանում, մալերին նրանցով թեթև շփում։

Իրար տուն շատ քչերն են գնում շնորհաւորելու. աւելի պատահում է, որ խնդրեն դրացուն, որի ոտը փորձել են, վաղ-

վաղ գայ իրանց տունը շնորհաւորելու. ում ոտը որ լաւ է գալիս, այն տարին այն տնից բախտն անպակաս կը լինի և հակառակը։

Այդ օրը առաջին ոչս բռնողը լաւ որսորդ կը լինի։

Այդ օրը նոյնպէս վաղ-վաղ, թռչունը դեռ չը զարթած, գնում են ջուրը, լուացւում, որ ջրի հետ իրանց ցաւն էլ գնայ, և ապա հետները էլ ջուր են բերում տուն։ Առաւօտեան բոլորն էլ լուացւում են օջախի շուրջը, ում լուացուած տեղից որ մրջիւն դուրս գայ, նա բախտ կունենայ։

Այդ օրը մէկմէկու փոխ բան չեն տալ, թէ չէ՝ բախտը յետ կերթայ։

Կծու և «վառեցուկ» կերակուր էլ չեն ուտիլ, ոչ էլ իրար թթու խօսք կասեն, որ ողջ տարին քաղցր ու անուշ անցնի։

Այդ օրը ընկոյզ կամ կաղին կոտրելը լաւ չեն համարում. աբօր շատ կը կոտրուի։

Այդ առաւօտը բոբիկ մանգալն էլ լաւ չէ, ոտին «մէյզըմուկ» կը լինի։

Ուրիշից բան չեն ուզիլ, որ շատ «ուզուկ» չը լինին։

Ջահէլները կացնով փայտ չեն կոտրել, կոթը կը կոտրուի և միշտ «կեօթ կոտրուկ» կը լինին։

Այդ օր լծողն էլ աբօր շատ կը կոտրէ։

Նոր-տարու առաւօտը երկու տղայ անխօս վեր են կենում. մէկը վեր է ելլում տան «ծածելը» (կաղնի ճղներից հիւսուած առաստաղ, ուր սովորաբար բուն են դնում մկները) և ձեռքի փայտով, կացնով կամ քարով թըքթըք սկսում է խփել «ծածելին», առաստաղի փայտերին կամ դռան վերի շէմին։ Մէկէլը ներքևից հարցնում է. «Ի՞նչ կընես»։ Վերևինն ասում է. «Մուկ կըյտիմ կու (կտրել)»։—«Ընե՞ր (ուր) ղըկես պիտի»։ —«Ստըմբօլ, կամ թէ՝ Սև ծովուն ինտին, կամ թէ՝ այս ինչի տունը (չը սիրած մարդու անուն է տալիս)։ Էլի թըքթըք խըփում է փայտին. տակից էլի հարցնում է. «Ի՞նչ կընես»։ —Ցաւ կըյտեմ կու»։—«Ընե՞ղ ղըկես պիտի»։—Այս ինչ տեղ, մի հեռու տեղի անուն տալով, և այլն այսպէս հարց ու պատասխանով յիշատակւում են տան բոլոր պակասները, աշխատելով նրանց իրանցից մի հեռու տեղ կորցնել։

Նոյն առաւօտը երկու տղայ անխօս գնում են չը բերող խնձորենու կամ տանձենու մօտ, և երբ մէկը կացնով տալու է անում ծառին ասելով՝ «մէյվա (պտուղ) բերել չես, կտրեմ պիտի», մէկէլը վրայ է բերում. «կտրել մի. բերէ կու»։ Այդպէս կրկնում են երեք անգամ։ Այն տարին ծառը անպատճառ շատ պտուղ կը տայ։

Ծնունտ։ Ծննդի առաջի օրը, առաւօտեան և երեկոյեան ժամից յետոյ, շատերը սովորութիւն ունին ժամւորներին «քաթայ» բաժնելու։ Նրանց «քաթան» կլոր, անխմոր բաղարջ հաց է, սովորական ցորենի հացի պէս, ոչ իւղ ունի և ոչ էլ մի առանձին անուշ համ։ Ցորենի հետ սովորաբար սիմինդրի ալիւր էլ են խառնում. մի քիչ էլ մեղրաջուր կամ «բէքմէզ»։ «Քաթայ» բաժանում են նոյնպէս աւագ-Հինգշաբթի օրը և մէկէլ Զատկի ճրագալոյցին։

Ծննդի ճրագալոյցի իրիկուան «ճաշի» մէջ «տուբին» (չը մանուող բրդի տակուցք) են դնում ու վառում։

Այդ իրիկուն՝ տան աղջիկը մի գդալ մածուն պիտի ուտի դռան յետևը, որ կովերը էգ փուղիկ բերեն։

Էլի ասում են, ով որ այդ իրիկունը լողանայ, նրա դարդերը ջուրը կը տանի։

Ճրագալոյցի իրիկուան, ինչպէս և ամեն տաղաւար նաւակատիք օրերի իրիկուններին, տանը մոմ են վառում, խունկ ծխում և ձայնով աղօթում։ Հասարակ կիրակնամուտերին մոմ վառելու սովորութիւն չունին։

«Տէրընտառաջ» (Տեառնընդառաջ)։ Պատմում են, որ Տէրընտագի իրիկուան, առաջ, իրանց հները եկեղեցու դուռ տաշեղ են տարել, տէրտէրները վառել են և աղօթել, իսկ մնացած մոխիրը իրանք տանելիս են եղել իրանց տները դեղի համար, ցաւած տեղը քսելու։ Հիմա չը կայ այդ սովորութիւնը։

Զատիկ. Աւագ-Հինգշաբթին ձուերն եփում են, պահում մինչև շաբաթ։ Այդ օրը ճրագալոյծին, ամէնքը գրպանները մէկ-մէկ ձու դրած, գնում են եկեղեցի, և երբ բոլորը վառում են մոմերը, փոքրերը գրպաններից դուրս են հանում ձուերը և ուտում։ Զատկի կիրակի օրը, վաղ առաւօտեան ներկում են ձուերը. միայն կարմիր չեն ներկում, այլ ամեն գոյնի. դեղին, կարմիր,

կանաչ, կապոյտ, նարնջագոյն և այլն։ Ներկելու համար օգտըւում են սովորաբար մի քանի ծառերի կեղևից ու փայտից. տխլի կճեպից և մի քանի ներկերից։

Նրանց Զատիկը շատ ուրախ է անցնում. իրար մօտ շնորհաւորելու համար գնալ-գալու սովորութիւն չունին։ Այդ օրուան գլխաւոր հանդէսը ձուի կռւեցնելն ու խաղն է։ Մեծ, փոքր ձու են կռւեցնում, ու խաղցնում, խփելով, գլորելով ու նշան դնելով։ Այդ օրուայ ուտելիքներն են՝ ձուաձեղը, խմորեղէնն ու կաթնեղէնը։

Բայց Զատիկից աւելի աղմկալի և ուրախ է անցնում նրանց «Մեռելոցը», որ թէև երկուշաբթին է նշանակուած, բայց նրանց մօտ ամեն մի գիւղ իր օրն ունի ընտրած, այնքան որ նոր-կիրակին չանցնեն, իսկ երբեմն երբ լաւ օրեր չեն լինում, նրանից էլ դէնն են անցնում։ Այդ օրը թէև մեռելոց է, բայց իսկապէս նրանց համար ուրախութեան օր է, նրանց հասարակական տօնն է, երբ ամբողջ գիւղը, մեծ, փոքր, կին, տղամարդ մասնակցում են իրանց բերած հասարակական հացկերոյթին, տղամարդիկ ու կանայք իրարից ջոկ-ջոկ. երբեմն աւելի հանդէս տալու համար՝ գոտեմարտ, նուագ ու պար են սարքում։ Զատկի ճրագալոյցի իրիկուան և առաւօտը, նոր-տարու պէս, հրացաններ են արձակում։

Համբարձման օրը առհասարակ ամենքը կաթ ու կաթնապուր են ուտում։ Այդ օրին նրանք «կաթ ուտիչ» են ասում։ Համբարձման վերաբերեալ այս աւանդութիւններն են պատմում։

Քրիստոսի երկինք վերանալու ժամանակ, իր գերեզմանի քարն էլ է ուզել հետը բարձրանալ, բայց Քրիստոս Տէրը չէ թողել. բրով հրել է ներքև, և քարը անշարժ մնացել է իր տեղում։

Քրիստոս համբառնալու ժամանակ ինն օր ճամփին է մնացել, ամէն մի օր մի հրեշտակի մօտ հիւր։ Այդ այցելութեան համար է, որ իննը դաս հրեշտակի պաս են պահում։

